Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

10 ՀՈԿՏԵՄԲԵՐ · 1964
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 43-րդ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«Ленинян угиов» теоретический и политический журнал ЦК КП Армении

## Բովանդակություն

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

10 ՀՈԿՏԵՄԲԵՐ · 1964
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 43-րդ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

**«Ленинян угиов» теоретический и политический журнал ЦК КП Армении**

## Բովանդակություն

# Содержание







Շ. ՌԱՇԻԴՈՎ

Ուզբեկստանի կոմպարտիայի Կենտկոմի առաջին քարտուղար, ՍՄԿՊ Կենտկոմի նախագահության անդամության թեկնածու

# ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՄԻԱՁՈՒՅԼ, ԱԶԱՏ ԵՎ ՆՈՐ ԸՆՏԱՆԻՔՈՒՄ



Այս տարվա հոկտեմբերին մեր ռեսպուբլիկայի աշխատավորները նշելու են իրենց պատմության մեջ նշանակալի մի տարեթիվ՝ Ուզբեկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի և Ուզբեկստանի կոմունիստական պարտիայի կազմավորման քառասնամյակը: Այդ պանծալի հոբելյանը ո՛չ միայն ուզբեկ ժողովրդի, այլև Սովետական Միության բոլոր ժողովուրդների մեծ ու բերկրալի տոնն է: Հոբելյանական տոնահանդեսների օրերին մեկ հետ միասին տոնական մեկ դաստարխանի (հյուրասեղանի) շուրջը կհավաքվի եղբայրության ու բարեկամության անքակտելի կապերով կոդված սոցիալիստական ազգերի մեծ ընտանիքը:

Ուզբեկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկան կազմավորվել է Միջին Ասիայի ազգային-պետական տարաբաժանման հետևանքով: 1924 թվականի հոկտեմբերի 27-ին ՍՍՌՄ Կենտգործկոմի II սեսիան, հաշվի առնելով Միջին Ասիայի ժողովուրդների կամքը, օրենսդրական կարգով ձևակերպեց Թուրքեստանի, Բուխարայի և Խորեզմի սովետական իշխանության գերագույն օրգանների որոշումները Ուզբեկական և Թուրքմենական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաներ կազմավորելու մասին: Այդ որոշումներով Ուզբեկական ՍՍՌ-ի կազմի մեջ ստեղծվեց նաև Տաջիկական ԱՍՍՌ-ն, որն այնուհետև վերակազմավորվեց որպես միութենական ռեսպուբլիկա:

Դրանից չորս ամիս անց՝ 1925 թվականի փետրվարին, կայացավ Ուզբեկ-
ստանի կոմունիստների առաջին համագումարը, որը ձևավորեց Ուզբեկստանի
կոմունիստական պարտիայի՝ Լենինի մեծ պարտիայի մարտական ջոկատներից
մեկի ստեղծումը:

Չորս տասնամյակ է անցել այդ ժամանակվանից: Դրանք սովետական իշխա-
նության ամրապնդման համար մղած անձնուրաց պայքարի տարիներ էին, ռես-
պուբլիկայի էկոնոմիկայի և կուլտուրայի աննախընթաց ծաղկման տարիներ: Ուզ-
բեկստանի կոմպարտիան ՍՄԿՊ Կենտկոմի ղեկավարությամբ ռեսպուբլիկայի աշ-
խատավորներին հերոսական աշխատանքի կոչեց հանուն սոցիալիզմի կառուց-
ման լենինյան պլանի իրականացման: Նա առաջատար ուժն է ուզբեկ ժողովրդի,
որը Սովետական Միության բոլոր մյուս ժողովուրդների միասնական շարքե-
րում անձնվիրաբար աշխատում է ՍՄԿՊ XXII համագումարի պատմական
որոշումները, կոմունիզմի կառուցման հոյակապ ծրագիրը կյանքում կենսագոր-
ծելու համար:

Սովետական Ուզբեկստանը իր քառասնամյա հոբելյանը դիմավորում է ստեղ-
ծագործական ուժերի աննախընթաց ծաղկման պայմաններում: Անցած քառա-
սուն տարիների ընթացքում Ուզբեկստանում տեղի ունեցան իրենց մասշտաբ-
ներով ու նշանակությամբ աննախադեպ սոցիալ-տնտեսական, հասարակական-
քաղաքական և կուլտուրական վերափոխություններ: Մեր երկիրը, որն անցյա-
լում հետամնաց ու խավար էր, օմաչի և քեթմենի երկիր, բայերի ֆեոդալական
ճնշման և աշխատավորների չտեսնված զրկանքների երկիր, սովետական իշխա-
նության տարիներին հեքիաթային փոփոխություններ ապրեց: Սոցիալիստական
ազգերի համերաշխ ընտանիքում, ռուս մեծ ժողովրդի և սովետական մյուս ժողո-
վուրդների անշահախնդիր, իսկապես եղբայրական օգնության ու աջակցության
շնորհիվ նա մի վիթխարի թռիչք կատարեց հետամնացությունից դեպի առաջա-
դիմությունը, խավարից դեպի լույսը, էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման
ասպարեզում հասավ այնպիսի հաջողությունների, որոնք վարմանք են պատ-
ճառում ամբողջ աշխարհին:

Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը լայնորեն
զարգանում են, անշեղորեն ծավալվում, արագանում են աճման տեմպերը: Ար-
դյունաբերության, գյուղատնտեսության, շինարարության, տրանսպորտի և կա-
պի աշխատողները տարեցտարի նորանոր բնագծեր են նվաճում կոմունիզմ
տանող ճանապարհին:

## ՈՒԶԲԵԿՍՏԱՆԻ ԻՆԴՈՒՍՏՐԻԱՅԻ ՇԵՇՏԱԿԻ ՎԵՐԵԼՔԸ

Մեր ռեսպուբլիկայի ինդուստրիալ զարգացման բնագավառում տեղի ունե-
ցած մեծագույն վերափոխությունների էությունը շատ լավ բացահայտեց Ն. Ս.
Խրուշչովը Արաբական Միացյալ Ռեսպուբլիկայի ազգային ժողովում ունեցած
իր ելույթում: Նա ասաց. «Ուզբեկստանը ցարիզմի գաղութն էր, իրավազուրկ ու
ճնշված մարդկանց, աղքատության ու հիվանդությունների երկիր: Անգամ մե-
խերը հեռուներից էին ներմուծում Ուզբեկստան, այնքան թույլ էր զարգացած
այնտեղ արդյունաբերությունը: Իսկ ա՞յժմ: Արդյունաբերության ավելի քան 100
ճյուղ ունի Սովետական Ուզբեկստանը, որն իր արտադրանքն արտահանում է
աշխարհի 58 երկրներ: Այսօր Ուզբեկստանում 4 անգամ ավելի էլեկտրական
էներգիա է արտադրվում, քան ամբողջ նախառևոլյուցիոն Ռուսաստանում»:



Նախառևոլյուցիոն Ուզբեկստանում ըստ էության չկար ծանր ինդուստրիա,
իսկ նրա թեթև ու սննդի արդյունաբերությունն ուներ ընդամենը միայն մի քանի
տասնյակ կիսատնայնագործական ձեռնարկություն: Այժմ մենք ունենք արագ
զարգացող մեծ քիմիա, բազմաճյուղ մեքենաշինություն, նավթարդյունաբերու-
թյուն, ածխարդյունաբերություն, էներգետիկայի, գազի արդյունաբերություն,
հանքարդյունաբերություն, մետալուրգիա, էլեկտրատեխնիկա, նաև արդյունա-
բերության թեթև, սննդի և այլ ճյուղեր, շինարարական ինդուստրիա՝ որոնք ընդ-
գրկում են ժամանակակից բարձր արտադրողականություն ունեցող սարքավոր-
մամբ զինված ավելի քան 1000 խոշոր ձեռնարկություններ:

Այնտեղ, ուր առաջներում մթին խավար էր տիրում, այժմ հուրհրատում են
Ֆարհադի և Անգրենի, Տաշքենդի ու Նավոիի, Ֆերգանայի և Թախիաթաշի էլեկ-
տրակայանների, Չիրչիկի կասկադի հիդրոէլեկտրակայանների կրակները: Այդ
կայանները գործի են գցում գործարաններն ու ֆաբրիկաները, լույս ու ջերմու-
թյուն են տալիս մարդկանց: Այնտեղ, ուր առաջներում լռություն էր, այժմ օր
ու գիշեր լսվում է հաստոցների և տուրբինների աղմուկը, երկնակամարը բո-
սորով են ներկում մարտենյան և պղնձաձուլական վառարանների լույսերը,
որոտում են պայթյունները բաց հանքերում, որտեղ արդյունահանվում են սև
և գունավոր մետաղներ:

Սովետական իշխանության տարիներին ռեսպուբլիկայում ստեղծվել ու
աճել են արդի ինդուստրիայի այնպիսի խոշոր ձեռնարկություններ, ինչպիսիք
են՝ Վ. Ի. Լենինի անվան ուզբեկական մետալուրգիական գործարանը և Ալթին-
թոփկանի կապարի-ցինկի կոմբինատը, Չիրչիկի ու Նավոիի քիմիական կոմ-
բինատները, Սամարկանդի և Կոկանդի սուպերֆոսֆատի գործարանները,
ազոտային պարարտանյութերի և ֆուրանային միացությունների, Անդիժանի
և Յանգիյուլի հիդրոլիզի, Ֆերգանայի ու Վանովի նավթամշակման, Տաշքենդի
էքսկավատորների, կաբելի գործարանները, «Տաշավտոմաշը», դժվարահալ և
հրակայուն մետաղների ուզբեկական կոմբինատը, «Ուզբեկխիմմաշ» և «Տաշ-
տեքստիլմաշ» գործարանները, Տաշքենդի, Անդիժանի, Չիրչիկի, Նամանգանի
և Կոկանդի էլեկտրատեխնիկական ու մեքենաշինական, գյուղատնտեսական
մեքենաշինության, Սամարկանդի «Կարմիր շարժիչ» և «Կինապ», գործարան-
ները, Ախանգարանի ցեմենտի գործարանը և Բեգովաթի ցեմենտի կոմբինատը,
Տաշքենդի, Նուկուսի, Կարշիի և Կոկանդի շինանյութերի կոմբինատները,
Տաշքենդի տեքստիլ կոմբինատը, Մարգելանի մետաքսի կոմբինատը, Կոկանդի
զուլպա-մանածագործական կոմբինատները և շատ ու շատ այլ ձեռնարկություն-
ներ... Բոլորը դժվար է թվարկել: Միայն վերջին տասնամյակում ռեսպուբլիկա-
յում գործարկվեցին ավելի քան 200 խոշոր ձեռնարկություններ:

Արագ է աճում մեր արդյունաբերության համախառն արտադրանքը: 1913
թվականի համեմատությամբ 1963 թվականին այն ավելացավ 24 անգամ, ընդ-
որմին նավթի արտադրությունը՝ 138, իսկ էլեկտրաէներգիայի արտադրությու-
նը՝ 2409 անգամ: Արագ տեմպերով են զարգանում սովետական տարիներին
ստեղծված արդյունաբերության բոլոր ճյուղերը: Այսպես, 1940 թվականի հա-
մեմատությամբ սև մետալուրգիայի արտադրությունն ավելացել է 1944 անգամ,
մեքենաշինությանը՝ 164, քիմիական և ռետինի-ասբեստի արդյունաբերությա-
նը՝ 37, շինանյութերի արդյունաբերությանը՝ 14, թեթև արդյունաբերությանը՝
2,4, սննդինը՝ 2 անգամ: Այդ նույն ժամանակամիջոցում ածխահանույթն աճել է
1387 անգամ, պողպատի ձուլումը՝ 31, հանքային պարարտանյութերի արտա-

դրությունը՝ 937, ցեմենտինը՝ 8, տրակտորի շարքացաններինը՝ 16, կուլտիվատորներինը 7 անգամ: Քանիինգ տարի առաջ ռեսպուբլիկայում ամենևին չէին արտադրվում բամբակահավաք մեքենաներ, մանածագործական և այլ մեքենաներ: Այժմ մեր արդյունաբերությունը տարեկան թողարկում է հարյուրավոր ու հազարավոր այդպիսի մեքենաներ:

Ուզբեկստանի պարծանքն է նաև գազի արդյունահանությունը, որը բուռն կերպով զարգանում է ռեսպուբլիկայի ընդերքում վերջին տարիներս հայտնաբերած բնական գազի խոշոր հանքավայրերի բազայի վրա: Գազի արդյունահանությունը 1940 թվականի համեմատությամբ աճել է 4270 անգամ, իսկ գազը, ինչպես հայտնի է, էժան վառելիք է և հիանալի քիմիական հումք:

Ռեսպուբլիկայի արդյունաբերությունը ծաղկում է ապրում ներկա հոբելյանական տարում: Նա գերակատարում է պլանը տեխնիկա-տնտեսական բոլոր հիմնական ցուցանիշների գծով:

Մեզ մոտ աննախընթա՜ց թափ է ընդունել կապիտալ շինարարությունը: Սովետական իշխանության տարիներին ռեսպուբլիկայի միայն պետական ու կոոպերատիվ ձեռնարկությունների և կազմակերպությունների կապիտալ ներդրումները կազմեցին 8 միլիարդ 400 միլիոն ռուբլուց ավելի: Իսկ արտադրական և ոչ արտադրական օբյեկտներում կոլտնտեսությունների կապիտալ ներդրումները կազմեցին գրեթե 2,6 միլիարդ ռուբլի: Կապիտալ շինարարությունն առանձնապես մեծ մասշտաբներով է կատարվում վերջին տասնամյակում: Այդ ժամանակամիջոցում պետական ու կոոպերատիվ կազմակերպությունները գործարկել են ավելի քան 5,5 միլիարդ ռուբլու հիմնական ֆոնդեր:

Մեզ մոտ ստեղծվել են ո՛չ միայն ինդուստրիայի նոր հսկաներ, այլև նոր քաղաքներ, որոնք դարձել են արդյունաբերական, վարչական և կուլտուրական խոշոր կենտրոններ: Դրանցից են՝ Չիրչիկն ու Նավոին, Անգրենն ու Յանգիաբադը, Ալմալիկը և Բեգովաթը, Գուլիստանն ու Յանգիյերը, Լենինսկը և Յանգիյուլը, Նուկուսը, Խոջեյլին, Կագանն, Դենաուն, Չիմբայը, Քուվասայը, Թախիաթաշը, Բիրունին, Կունգրադը և Մույնակը:

Իսկ ինչպե՞ս են կերպարանափոխվել Տաշքենդը, Սամարկանդը, Ֆերգանան, Բուխարան, Անդիժանը, Ուրգենչը, Թերմեզը, Կարշին, Կոկանդը, Նամանգանը և մեր մյուս հին, բայց սովետական տարիներին կարմանալի կերպով երիտասարդացած քաղաքները, նրանք դարձել են բարեկարգ քաղաքներ, ընդլայնել են իրենց սահմանները, վեր են խոյացել ու պատվել նորակառույցներով: Այդ քաղաքներում ծնվել են արդյունաբերական նոր խոշոր ձեռնարկություններ, բնակելի նոր թաղամասեր, գեղեցիկ շենքեր, պողոտաներ, պուրակներ ու զբոսայգիներ, ուր ծփում են կանաչն ու ծաղիկները:

Նշանակալի հաջողություններ են ձեռք բերվել տրանսպորտի և կապի բնագավառում: Նախկինում Ուզբեկստանում չկար ավտոմոբիլային և օդային տրանսպորտ, թույլ էին զարգացած երկաթուղային տրանսպորտն ու կապը: Այժմ մենք ունենք արդի տրանսպորտի և կապի լայնորեն զարգացած բոլոր տեսակները: Ռեսպուբլիկայում հազարավոր կիլոմետրերի վրա ձգված են երկաթուղային մագիստրալներ, կառուցված են պինդ ծածկ ունեցող բազմաթիվ ավտոմոբիլային ճանապարհներ, իսկ դեպի ամենուր տանող օդային մայրուղիները Ուզբեկստանը կապում են Սովետական Միության և արտասահմանյան երկրների շատ քաղաքների հետ: Մեր տրանսպորտի պարկն ունի մեծ քանակությամբ մարդատար հզոր օդանավեր, ավտոմոբիլներ ու ավտոբուսներ, ջերմաքարշներ, մարդատար ու բեռնատար վագոններ: Տարեցտարի աճում են տրանսպորտի փոխադրումները: Օրինակ, միայն ավտոմոբիլային տրանսպորտի բեռնաշրջանառությունը 1963 թվականին կազմեց 3 միլիարդ 678 միլիոն տոննա կիլոմետր, որը 25 անգամ ավելի է, քան 1940 թվականին, իսկ ընդհանուր օգտագործման ավտոբուսներով ուղևորների տեղափոխությունն այդ նույն ժամանակամիջոցում ավելացավ 58 անգամ:



Անընդհատ տարածվում են կապի բոլոր արդի տեսակները՝ հեռախոսը, հեռագիրը, ռադիոն, հեռուստատեսությունը: Մեր ռեսպուբլիկայում փոստի, հեռագրի և հեռախոսի ձեռնարկությունների թիվը 1940 թվականի համեմատությամբ, ավելացել է երկու անգամ, քաղաքներում հեռախոսային ապարատների թիվը՝ 4, իսկ գյուղերում՝ գրեթե 11 անգամ:

Արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի և կապի աշխատողները տարեցտարի աշխատանքային նոր սխրանքներ են գործում ի բարօրություն մեր հայրենիքի: Նրանք անձնուրաց պայքարում են արտադրական պլանները և սոցիալիստական պարտավորությունները կատարելու ու գերակատարելու համար:

## ԻՆՏԵՆՍԻՎԱՑՄԱՆ ՈՒՂԻՈՎ

Անցած քառասուն տարվա ընթացքում անճանաչելիորեն փոխվել է Ուզբեկստանի հողը: Նախկինում անկենդան անապատների վայրերում այժմ տարածվել են ծաղկուն օազիսներ՝ իրենց բարեկարգ բնակավայրերով: Այնտեղ, որտեղ դարեր շարունակ ձգված էին շոգից ճաքճքած հողեր, այժմ փայլփլում է խոշոր ջրամբարների և ոռոգման ջրանցքների ջուրը, ստեղծված է հիդրոտեխնիկական արդի կառույցների մի լայն ցանց: Դրանք կենարար հեղուկ տվեցին հողին և նախկինում ամայի հարյուր հազարավոր հեկտար հողամասեր բերքատու դարձրին:

Բոլորովին այլ կերպարանք է ընդունել ուզբեկական գյուղը, հիմնովին փոխվել են մեր գյուղացիության կյանքի ու աշխատանքի պայմանները: Մանր ու աղքատ դեհկանների տնտեսությունների փոխարեն աճել են խոշոր, բարձր մեքենայացված կոլտնտեսություններ և սովխոզներ, որոնք տարեցտարի ամրանում են տնտեսապես ու կազմակերպորեն, ավելացնում են հողագործության և անասնապահության արտադրանքը:

Ուզբեկստանի սոցիալիստական գյուղատնտեսության համար բնորոշ է թե՛ ցանքատարածությունների, թե՛ դաշտերի բերքատվության, թե՛ անասունների գլխաքանակի, թե նրա մթերատվության և թե աշխատանքի էներգազինվածության անշեղ աճը: Մեր գյուղատնտեսությունը զարգանում է ինտենսիվացման հիման վրա, որն իր մեջ ընդգրկում է խռիգացիայի, քիմիացման և կոմպլեքսային մեքենայացման լայն ծավալումը:

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության համար կարևորագույն նշանակություն ունի ոռոգման և հողերի մելիորատիվ վիճակի բարելավումը: Մեր պայմաններում հողը և ջուրը մի անբաժան միասնություն են կազմում: Ջուրն է մեր բերքի հոգին: Ժողովրդի մեջ իրավացի կերպով ասում են. «Հողը ջտեմարան է, ջուրը՝ գանձ» կամ «Որտեղ վերջանում է ջուրը, այնտեղ վերջանում է հողը»: Հողերի ոռոգումը մեր պայմաններում գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման ամենահուսալի ուղին է: Պատահական չէ, որ Միջին

Ասիայում մարդիկ սերնդե սերունդ ապրել են ջրի մասին երազելով: Այդ երազանքներով են տոգորված եղել ժողովրդի հորինած երգերն ու լեգենդները: Եվ միայն սովետական իշխանությունը լուծեց կենսականորեն կարևոր այդ հարցը:

Դեռևս 1918 թվականի մայիսին, երբ երիտասարդ սովետական ռեսպուբլիկան գտնվում էր ինտերվենտների ու սպիտակգվարդիականների կրակե օղակի մեջ, Վ. Ի. Լենինը ստորագրեց դեկրետ Թուրքեստանի իռիգացիոն շինարարությանը 50 միլիոն ռուբլի հատկացնելու մասին: Դեռ այն տարիներին նախատեսվում էր ոռոգման խոշոր աշխատանքներ կատարել Սովյալ, Դալվերզինի և Ուչկուրգանի տափաստաններում, Ֆերգանայի և Զերավշանի հովիտներում: Լենինյան այդ դեկրետը սկիզբ դրեց իռիգացիայի լայն ծավալմանը Ուզբեկստանում:

Կոմունիստական պարտիան ու սովետական կառավարությունն անխոնջ հոգատարություն են ցուցաբերում ոռոգման գործը մեր ռեսպուբլիկայում ծավալելու համար: Ամեն տարի մեծ միջոցներ են հատկացվում այդ նպատակներին: Պարտիայի և կառավարության հսկայական օգնության շնորհիվ ջրատնտեսական շինարարությունը մեզանում արտակարգ լայն թափ է ընդունել: 1917 թվականից մինչև 1953 թվականը Ուզբեկստանում իռիգացիայի վրա 40 անգամ ավելի միջոցներ են ծախսվել, քան նախառևոլյուցիոն 60 տարիների ընթացքում ամբողջ Միջին Ասիայում: Այդ ժամանակաշրջանում կառուցվել են ջրատնտեսական մի շարք խոշոր կառույցներ: Դրանց թվին են պատկանում Ֆերգանայի մեծ ջրանցքը, Սովյալ տափաստանի հարավային ջրանցքը և այլ կառույցներ:

Իռիգացիան է՛լ ավելի լայն թափ ընդունեց ռեսպուբլիկայում վերջին տասնամյակի, հատկապես ընթացիկ յոթնամյակի ընթացքում: Անցյալ տարի ջրատնտեսական շինարարության մեջ կապիտալ ներդրումները 1953 թվականի համեմատությամբ ավելացան գրեթե 10 անգամ: Յոթնամյակի տարիներին ավարտվեց Տաշքենդի, Կույումապարի, Չիմկուրգանի, Ուչկիզիլի ջրամբարների, Հարավային Սուրխանի և Կերկիդոնի ջրամբարների առաջին հերթերի, Ամուկարակուլի և Խաթրչինի ջրանցքների, Քերմինի հիդրոհանգույցի շինարարությունը: Շարք մտան Սովյալ տափաստանի կենտրոնական, Լճային, Դարյալիկի և մյուս կոլեկտորները: Վերակառուցվել են Ստորին և Միջին Կաշկադարիայի, Թաշսաքինի, Կլիչնիյազբայի, Կկկետկենի և Պախտաարնայի ոռոգիչ սիստեմները: Այժմ մեծ աշխատանքներ են կատարվում Հարավային Սուրխանի և Կերկիդոնի ջրամբարների երկրորդ հերթի կառուցումն ավարտելու ուղղությամբ. կառուցվում են Պաչկամարի, Կամպիրավատի և Չարվակի ջրամբարները, Ամու-Բուխարայի և Շիրաբադի մեքենայական ջրանցքները, ավելացվում են Կատթակուրգանի և Քասանսայի ջրամբարների կարողությունները, կառուցվում է Թախիաթաշի հիդրոհանգույցը:

Ներկայումս ռեսպուբլիկայում գործում են ոռոգման մոտ 900 սիստեմներ: Ուզբեկստանն իր ոռոգվող հողերի տարածությամբ աշխարհում առաջին տեղերից մեկն է գրավում իրենց հողերը խոշոր մասշտաբներով ոռոգող երկրների շարքում: Ուզբեկական ՍՍՌ-ում է կենտրոնացված Սովետական Միության ոռոգվող հողերի ավելի քան 27 տոկոսը:

Այդքան մեծածավալ իռիգացիոն շինարարությունը հնարավորություն տվեց յուրացնելու և գյուղատնտեսական շրջանառության մեջ ներգրավելու նոր հո-



ղերի հսկայական պանզվածներ: Սովետական իշխանության քառասուն տարիների ընթացքում Ուզբեկստանի ցանքատարածություններն ընդլայնվեցին ավելի քան մեկ միլիոն հեկտարով կամ մեկ ու կես անգամ, ընդ որում բամբակենու ցանքատարածությունը՝ 3,8 անգամ: Ցանքատարածություններն պգալիորեն ավելացան խոպան հողերի յուրացման շնորհիվ: Ներկայումս արդեն բերքատու են դարձել և բարձր բերք են տալիս Սովյալ, Դալվերզինի, Ուչկուրգանի, Կարշիի ու Շիրաբադի տափաստանների, Կենտրոնական Ֆերգանայի և Ամու-Դարյայի ստորին հոսանքի շրջանի հարյուր հազար հեկտար նոր յուրացված հողերը: Այդ հողամասերում ստեղծված են տասնյակ խոշոր մասնագիտացված նոր սովխոզներ, որոնք իրենց տնտեսությունը վարում են ինտենսիվորեն:

Հարյուրամյակներ շարունակ մարդիկ ամեն կերպ խուսափում էին Սովյալ տափաստանից՝ ջրից ու կյանքից զուրկ այդ անապատային չոր ու ցամաք հողերից: Իսկ այժմ, երբ սովետական մարդու ձեռքն արդեն դիպել է նրան, այդ տափաստանը, վերջերս այդտեղ եկած ավստրալիացի գրող Ալան Մարշալի պատկերավոր արտահայտությամբ, դարձել է դրախտային պարտեզ: «Սովյալ տափաստանի յուրացումը,—ասաց Ալան Մարշալը,—սովետական մարդկանց մեծագույն սխրագործություններից մեկն է, դա գրեթե անհավատալի է, դա գրեթե հրաշք է»:

Սովյալ տափաստանում հարյուրավոր կիլոմետրերով ձգվում են ոռոգման ջրանցքներ, այնտեղ տարածվել են բամբակի անծայրածիր դաշտեր, մրգատու և խաղողի այգիներ, տափաստանն ամբողջովին կանաչ զգեստ է հագել: Կար ժամանակ, երբ ոչ մի թռչուն չէր կարող թռչել անցնել Սովյալ տափաստանի վրայով, իսկ այժմ այնտեղ չի դադարում թռչունների ճռվողյունը:

Բոլորովին անճանաչելի է դարձել վերափոխված Կենտրոնական Ֆերգանան, իսկ ինչպիսի՜ լայն հորիզոններ են բացվել Կարշիի տափաստանի առջև, որտեղ մեծ մասշտաբներով իռիգացիոն շինարարություն է ծավալվել: Կանցնի 10—12 տարի, և ոռոգվող հողերի տարածությունն այստեղ մեկ միլիոն հեկտար կկազմի:

Հոյակապ ապագա ունեն նաև մեր մյուս խոպան շրջանները: Պատկերավոր ասած՝ Սովյալ տափաստանը, Կարշիի տափաստանը, Շիրաբադի տափաստանը, Կենտրոնական Ֆերգանան և Ամու-Դարյայի ստորին հոսանքի շրջանը հինգ հարազատ քույրեր են, որոնք համատեղ ընթանում են դեպի կոմունիզմ: Նրանք կտան միլիոնավոր տոննաներով բամբակ, հարյուր հազարավոր տոննաներով հացահատիկ, բանջարեղեն, բոստանային կուլտուրաներ, մրգեր, խաղող, միս, կաթ: Նրանք կոմունիստական առատություն կստեղծեն մեզ համար, երջանկություն կբերեն մեզ: Ուստի Ուզբեկստանի կոմպարտիան ամեն ինչ անում է այդ ընդարձակ ու արգավանդ պանզվածները որքան կարելի է արագ յուրացնելու համար:

Ռեսպուբլիկայում մեծ աշխատանքներ են կատարվում եղած բոլոր հողերի մելիորատիվ վիճակը բարելավելու, ջրելու տեխնիկան կատարելագործելու և ստորերկրյա ջրերը հեռացնելու ուղղությամբ: Սովյալ տափաստանի սովխոզների օրինակով մեզանում արմատավորվում են ցանքերը ջրելու այնպիսի առաջադիմական եղանակներ, ինչպիսին է բետոնապատ վաքերով և ճնշման տակ գործող խողովակներով ջուր տալը՝ օգտագործելով հիդրանտները, ճկուն շարժական շլանգները, անձրևային սարքավորումը և այլն: Մելիորացիայի ասպարեզում կիրառվում է ուղղաձիգ և փակ-հորիզոնական դրենաժ: Օրակարգում է դրված ջրատնտեսական կառույցները ավտոմատիզացիայի և տելեմեխանիզա-

ցիայի ենթարկելու, ջրանցքները տելեմեխանիկական միջոցներով կառավարելու հարցը:

Ոռոգման կարգացման հետ մեկտեղ մենք մեծ ուշադրություն ենք նվիրում գյուղատնտեսության քիմիացմանը: Ուզբեկստանի հողագործները շատ լավ են հասկացել քիմիայի հզոր ուժը: Քիմիան նրանց մշտական ուղեկիցն է բամբակի և գյուղատնտեսական մյուս կուլտուրաների արտադրությունն ավելացնելու համար մղվող պայքարում:

Անցյալ տարի ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզները ստացան ավելի քան 2 միլիոն տոննա հանքային պարարտանյութ, կամ ջրովի մեկ հեկտար վարելահողի հաշվով՝ 859 կիլոգրամ, իսկ մեկ հեկտար բամբակի ցանքերին՝ 1079 կգ ազոտային պարարտանյութ: Ընթացիկ տարում հանքային պարարտանյութերի նորմաներն ավելի ու ավելի կմեծանան: Բամբակագործությունը ստացել է նաև մեծ քանակությամբ քիմիական նյութեր՝ գյուղատնտեսական վնասատուներից ու հիվանդություններից բույսերը պաշտպանելու համար: Հետագայում մեր գյուղատնտեսությունը տարեցտարի ավելի մեծ քանակությամբ հանքային պարարտանյութեր և քիմիական կանաչ պրեպարատներ կստանա: Եվ այդ ամենից առաջ դրանց արտադրությունը ռեսպուբլիկայում ավելացնելու շնորհիվ:

ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի (1963 թ.) որոշումների հիման վրա մենք մշակել ենք մեծ քիմիայի կարգացման ընդարձակ ծրագիր: Յոթնամյակի վերջերին Ուզբեկստանում կթողարկվի արդեն տարեկան երեք միլիոն տոննա հանքային պարարտանյութ, որը 2,5 անգամ ավելի է 1958 թվականին արտադրվածից: Առանձնապես արագ կաճի խտացված ու բարդ պարարտանյութերի արտադրությունը բնական գազի կոմպլեքսային օգտագործման հիման վրա: 1970 թվականին ռեսպուբլիկայում կարտադրվի ավելի քան 5 միլիոն 700 հազար տոննա հանքային պարարտանյութ, որը 4 անգամ ավելի է, քան 1963 թվականին, իսկ բույսերի պաշտպանության քիմիական միջոցների արտադրությունը կաճի 287 անգամ: Այդ հնարավորություն կտա բավարարելու ռեսպուբլիկայի պահանջները հանքային պարարտանյութերի նկատմամբ, զգալիորեն կավելացնի ո՛չ միայն բամբակի, այլև գյուղատնտեսական մյուս կուլտուրաների պարարտացման նորմաները, ավելի լայն մասշտաբներով կիրառելու գյուղատնտեսական բույսերի վնասատուների և հիվանդությունների դեմ պայքարի քիմիական միջոցները:

Իռիգացիայի և քիմիացման հետ մեկտեղ մեկ մոտ ծավալվում է նաև գյուղատնտեսական արտադրության մեքենայացումը: Սովետական իշխանության տարիներին իսկական տեխնիկական ռևոլյուցիա կատարվեց Ուզբեկստանի գյուղատնտեսության մեջ: Օմաչից ու Քեթմենից բաղկացած հին ագրոտեխնիկային փոխարինեց արդի գյուղատնտեսական մեքենաների վրա հիմնված նոր, առաջադիմական ագրոտեխնիկան:

Ներկայումս ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում ու սովխոզներում կա ավելի քան հարյուր հազար տրակտոր (15 ուժանոցի հաշվով), 35,5 հազար տրակտորի շարքացան, ավելի քան 21 հազար տրակտորի գութան, 45 հազար կուլտիվատոր, գրեթե 18 հազար բամբակահավաք մեքենա, 6,5 հազար հատիկահավաք, եգիպտացորենահավաք և սիլոսահավաք կոմբայններ, մոտ 25 հազար բեռնատար ավտոմեքենա: Բազմազան տեխնիկա է օգտագործվում նաև անասնապահության մեջ:



Ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների և սովխոզների տեխնիկական այդքան բարձր զինվածությունը հնարավորություն է տվել մեքենայացնելու գյուղատնտեսական արտադրության բազմաթիվ պրոցեսներ: Ներկայումս ռեսպուբլիկայում բամբակը հսկայական տարածությունների վրա ցանվում է քառակուսի բնային եղանակով: Ավելի ու ավելի լայնորեն են կիրառվում ճշգրիտ ցանող շարքացանները: Բամբակի պլանտացիաների զգալի մասը մշակվում է մեխանիզմներով երկու ուղղությամբ, կիրառվում է բամբակենու մեքենայացված ծիրատում, կնգուղների մեքենայական հավաք: Բամբակի գրեթե ամբողջ բերքը փոխադրվում է առանց տարաների:

Գյուղատնտեսական արտադրության կոմպլեքսային մեքենայացման գլխավոր օղակը մեքենայական բերքահավաքն է: Այդ ասպարեզում խոշոր հաջողություններ են ձեռք բերվել: Վերջին երեք տարում 30 անգամ ավելացել է մեքենաների միջոցով հավաքված բամբակի քանակը: Անցյալ տարի «երկնագույն նավերը»՝ բամբակահավաք մեքենաները, հավաքեցին մոտ 600 հազար տոննա «սպիտակ ոսկի»: Բամբակահավաք տեխնիկայի մասսայական կիրառման օրինակ ցույց տվեց Սիր-Դարյայի երիտասարդ մարզը: Անցած տարի սիրդարյացիները մեքենաներով հավաքեցին ավելի քան 145 հազար տոննա հումք, կամ բերքի 36 տոկոսը:

Բամբակահավաքի աշխատանքների մեքենայացման բարձր մակարդակի են հասել ռեսպուբլիկայի բազմաթիվ տնտեսություններ ու արտադրական վարչություններ: Անցյալ տարի ավելի քան 250 կոլտնտեսություններ ու սովխոզներ, մոտ 200 արտադրական վարչություններ հաջողությամբ կատարեցին և գերակատարեցին մեքենայական բերքահավաքի պլանը: Օրինակ, Կուրգան Թափայի վարչության տնտեսությունները մեքենաներով հավաքեցին բերքի գրեթե կեսը: Բամբակագործության մեքենայացման իսկական փարոսներ են «Սավայ» և Ուզբեկական ՍՍՌ-ի հնգամյակի անվան սովխոզները: Անցած տարի այս սովխոզներն աճեցրին բամբակի հարուստ բերք, որի ավելի քան մեկ երրորդը հավաքեցին մեքենաներով: Բամբակագործության մեքենայացման ասպարեզում մեծ հաջողությունների են հասել մեր պանծալի մեխանիզատորներ Տ. Ախունովան, Վ. Տյուպկոն, Դ. Քուչիևը, Մ. Զալալովը, Մ. Դադաջանովը և շատ ուրիշներ:

Այս տարի բամբակահավաք մեքենաներն ավելի լայնորեն կկիրառվեն ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների և սովխոզների դաշտերում: Գյուղի աշխատավորները պարտավորվել են մեքենաներով հավաքել առնվազն 750 հազար տոննա բամբակ:

Սոցիալիստական կարգի առավելությունների, գյուղատնտեսության շեշտակի վերելքի, նրա ինտենսիվությունը բարձրացնելու ուղղությամբ վերջին տասնամյակի ընթացքում պարտիայի իրականացրած խոշոր միջոցառումների շնորհիվ ռեսպուբլիկայում անշեղ աճում է հողագործության և անասնապահության արտադրանքը:

Ուզբեկստանի էկոնոմիկայի գլխավոր ճյուղը բամբակագործությունն է: Ռեսպուբլիկայի աշխատավորները բամբակի արտադրության ավելացման մեջ են տեսնում իրենց հայրենասիրական ու ինտերնացիոնալ առաջնահերթ պարտքը: Եվ նրանք գնալով ավելի մեծ քանակությամբ «սպիտակ ոսկի» են տալիս հայրենիքին: Ուզբեկստանը դարձել է Սովետական Միության բամբակագործական հիմնական բազան: Նա է տալիս երկրում արտադրվող ամբողջ բամբակի ա-

վելի քան 70 տոկոսը: Բամբակի համախառն հավաքման տեսակետից նա աշխարհում գրավում է երրորդ տեղը, իսկ բնակչության մեկ շնչին ընկնող արտադրությամբ բավական առաջ է անցել աշխարհի բոլոր 34 բամբակացան երկրներից, այդ թվում նաև ԱՄՆ-ից: Անցյալ տարի ռեսպուբլիկան բամբակագործության պատմության մեջ առաջին անգամ հայրենիքին տվեց 3 միլիոն 688 հազար տոննա «սպիտակ ոսկի», այսինքն՝ 7 անգամ ավելի, քան արտադրվել էր նախառևոլյուցիոն Ուզբեկստանում: Ուզբեկստանի աշխատավորների տնտեսական այդ հաղթանակը բարձր գնահատականի արժանացավ ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների սովետի ուղարկած ողջույնի նամակում: Այնտեղ ասվում էր, որ **սովետական ժողովուրդների եղբայրական ընտանիքում Ուզբեկստանը ցույց տվեց կոմունիզմի կառուցման մեծ պլանների իրականացման պայքարի լավ օրինակ:**

Այս տարի ևս անձնվեր պայքար է մղվում մեծ բամբակի համար: Ռեսպուբլիկայի բամբակագործները պարտավորվել են պետությանը վաճառել առնվազն երեք միլիոն 600 հազար տոննա հումք: Այդ պարտավորությունը կկատարվի:

Սովետական տարիներին, հատկապես վերջին տասնամյակի ընթացքում, Ուզբեկստանում զգալիորեն աճեցին նաև հացահատիկի, կանեփի, բանջարեղենի, բոստանային կուլտուրաների, մրգերի, խաղողի, մսի, կաթի, ձվի, մետաքսի բոժոժի, բրդի, կարակուլի մորթիների և այլ պրոդուկտների արտադրությունն ու մթերումները, ավելացավ խոշոր եղջերավոր անասունների, ոչխարների, այծերի, խոզերի ու թռչունների գլխաքանակը: Ընթացիկ տարում ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզներն արդեն երկրին տվել են ավելի քան 36 միլիոն փութ հաց, պլանով նախատեսված 15,3 միլիոնի դիմաց, հաջողությամբ են կատարվում մետաքսի բոժոժի, կարակուլի, ձվի, վաղահաս բանջարեղենի ու բոստանային կուլտուրաների վաճառքի սոցիալիստական պարտավորությունները:

ՍՄԿՊ Կենտկոմի փետրվարյան պլենումի որոշումների հիման վրա մենք նախատեսել ենք գյուղատնտեսության հետագա ինտենսիվացման մեծ միջոցառումներ: Այդ միջոցառումների իրականացումը հնարավորություն կտա առաջիկա տարիներին զգալի չափով ավելացնելու երկրագործության և անասնապահության բոլոր մթերքների արտադրությունը:

## ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ԾԱՂԿՈՒՄԸ, ԺՈՂՈՎՐԴԻ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅԱՆ ԱՃԸ

Սովետական իշխանության տարիներին Ուզբեկստանում իրականացվեց կուլտուրական մեծ ռևոլյուցիա: Դրա շնորհիվ ծաղկեց ձևով ազգային և բովանդակությամբ սոցիալիստական մեր կուլտուրան, խոշոր հաղթանակներ ձեռք բերվեցին գիտության զարգացման և ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի համար բարձրորակ մասնագետների ազգային կադրերի պատրաստման բնագավառում: Դպրոցների, բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունների, գիտության ու կուլտուրայի հիմնարկների խիտ ցանցը պատեց ամբողջ ռեսպուբլիկան:

Նախառևոլյուցիոն Ուզբեկստանում գրագետ մարդիկ բնակչության միայն 2 տոկոսն էին կազմում, իսկ այժմ Ուզբեկստանը համատարած գրագիտության ռեսպուբլիկա է: Առաջներում Ուզբեկստանում կար 171 դպրոց, որտեղ սովորում էր 17,8 հազար մարդ, իսկ այժմ մենք ունենք ավելի քան 8 հազար հանրակրթական դպրոց, ավելի քան 2 միլիոն սովորողներով: Անցյալում Ուզբեկստանը չուներ ոչ մի բուհ. այժմ մենք ունենք 2 համալսարան և 29 ինստիտուտ, ուր սովորում են ավելի քան 139 հազար ուսանողներ: Ռևոլյուցիայից առաջ մեզ մոտ կար միայն մեկ միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություն. այժմ դրանց թիվը հասնում է 86-ի՝ ավելի քան 79 հազար սովորողներով: Նախկինում մենք չունեինք ոչ մի գիտական հաստատություն. այժմ ունենք գիտությունների ակադեմիա՝ 132 գիտական հիմնարկներով: 1940—1963 թվականների ընթացքում ռեսպուբլիկայում պատրաստվել են բարձրագույն և միջնակարգ կրթություն ունեցող ավելի քան 383 հազար մասնագետներ: Այժմ մենք ունենք 15 հազար գիտական աշխատող, այդ թվում գիտության 270 դոկտոր և ավելի քան 3000 թեկնածու:

Լայնորեն ծավալվել են կուլտուրայի հիմնարկների ցանցը, մամուլը, ռադիոն և հեռուստատեսությունը: Այսօր ռեսպուբլիկայում գործում են՝ 3428 մասսայական գրադարան, 2877 ակումբ, 19 թատրոն, 14 թանգարան, 2937 կինոսարքավորում: Ուզբեկստանում լույս են տեսնում 156 թերթ, 116 ամսագիր և այլ պարբերական հրատարակություններ: Անցյալ տարի ռեսպուբլիկայի հրատարակչությունները լույս ընծայեցին ավելի քան 2000 անուն գիրք, 25,5 միլիոն օրինակ ընդհանուր տպաքանակով: Հեռուստատեսությունն ընդգրկել է Ուզբեկստանի տերիտորիայի $^{4}/_{5}$ մասը: Բնակչության անձնական ու հասարակական օգտագործման մեջ են գտնվում 1,1 միլիոն ռադիոընդունիչներ, 1 միլիոնից ավելի ռադիոկետեր, 309 հազար հեռուստացույցներ: Ուզբեկստանի կինոստուդիաներն ամեն տարի թողարկում են տասնյակ նոր կինոֆիլմեր, որոնցից շատերը համաշխարհային ճանաչում են ստացել:

Ծաղկել և նոր, սոցիալիստական բովանդակությամբ հագեցել, անչափ հարուստ է դարձել Ուզբեկստանի գրականությունը և արվեստը: Ռեսպուբլիկայում գործում են գրողների, նկարիչների, կոմպոզիտորների, կինեմատոգրաֆիայի աշխատողների, ճարտարապետների միություններ, թատերական ընկերություն, որոնցում միավորված են մոտ 2000 ստեղծագործական աշխատողներ: Ուզբեկստանի գրականության ու արվեստի գործիչները տարեցտարի ստեղծում են մեր սովետական հիասքանչ իրականությունը ճշմարտացի արտացոլող բարձրարվեստ գործեր:

Մեծ են առողջապահության բնագավառում տեղի ունեցած փոփոխությունները: 1913 թվականին Ուզբեկստանում կար միայն հազար հիվանդանոցային մահճակալ և 128 բժիշկ. այժմ մենք ունենք գրեթե 85 հազար հիվանդանոցային մահճակալ և մոտ 15 հազար բժիշկ (չհաշված ատամնաբույժներին) : Ռեսպուբլիկան ունի մեծ քանակությամբ հիվանդանոցներ, պոլիկլինիկաներ, ամբուլատորիաներ, ծննդատներ, սանատորիաներ և հանգստյան տներ, որոնք բոլորն էլ սարքավորված են բժշկական արդի ապարատուրայով:

Էկոնոմիկայի, գիտության, կուլտուրայի, ժողովրդական կրթության և առողջապահության զարգացման ասպարեզում մեր ձեռք բերած հաջողություններն ապահովեցին ժողովրդի նյութական բարեկեցության անշեղ վերելքը: Դրա ամենավառ ցուցանիշներից մեկը ազգային եկամտի, հանրային սպառման ֆոնդերի և ապրանքաշրջանառության աճն է: Վերջին հինգ տարում ռեսպուբլիկայի ազգային եկամուտն աճեց մեկ քառորդով, հանրային ֆոնդերից բնակչության ստացած վճարումներն ու արտոնություններն անցյալ տարի, 1960 թվականի համեմատությամբ, ավելացան մեկ երրորդով, իսկ պետական և կոոպերատիվ առևտրի

մանրածախ ապրանքաշրջանառությունն անցած տասնամյակի ընթացքում ավելացավ երկու անգամ. այդ աշխատավորների ռեալ եկամուտների շեշտակի բարձրացման վկայությունն է:

Բարելավվեցին բնակչության բնակարանային պայմանները: Միայն վերջին հինգ տարում ռեսպուբլիկայի քաղաքներում ու ավաններում շահագործման հանձնվեց գրեթե 9,5 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն: Դա երկու անգամ ավելի է չորրորդ և հինգերորդ հնգամյակներում կառուցված բոլոր բնակարաններից: Բացի դրանից, կոլտնտեսականները և գյուղական ինտելիգենցիան այդ ժամանակամիջոցում կառուցել են մոտ 150 հազար բնակելի տներ:

Մեկանում շատ բան է արվել քաղաքները, ավանները, շրջկենտրոններն ու գյուղերն ավելի բարեկարգելու համար. հիմնվել են կոլտնտեսային ու սովխոզային բազմաթիվ բարեկարգ ավաններ, որոնք ունեն գեղատեսիլ տներ, կուլտուր-կենցաղային հիմնարկներ, ասֆալտապատ լայն և ուղիղ փողոցներ, հրապարակներ: Ռեսպուբլիկայում ընդլայնվել է ջրմուղի, կոյուղու ցանցը, ավելացել է էլեկտրա-էներգիայի ծախսումը կենցաղային կարիքների համար, մեծ աշխատանք է կատարվել քաղաքներն ու գյուղերը կանաչապատելու ուղղությամբ:

Առանձնապես լայն ծավալ է ստացել բնակելի տների գազիֆիկացումը: Եթե 1959 թվականի գազիֆիկացումն ընդգրկել էր միայն 14 քաղաք, ապա 1963 թվականին այն ընդգրկեց 33 քաղաք, 80 շրջկենտրոն ու խոշոր բնակավայր, 70 սովխոզ և 61 կոլտնտեսություն: Գազ օգտագործող բնակարանների թիվն ավելացավ 10 անգամ և հասավ 257 հազարի:

Տարեցտարի բարելավվում է բնակչության կենցաղային սպասարկումը: Յոթնամյակի հինգ տարվա ընթացքում արդյունաբերական բնույթի կենցաղային հիմնարկների ցանցը ռեսպուբլիկայում ավելացավ գրեթե 2,5 անգամ: Միայն անցյալ տարի բացվեցին կենցաղային սպասարկման մի շարք խոշոր կոմբինատներ և ավելի քան 850 արհեստանոցներ: «Ուզգլխկենցաղ»-ի օրգանները մեծ աշխատանք են կատարում կարի ու վերանորոգման արհեստանոցների, լվացքատների ցանցն ավելի ընդլայնելու, մասնագիտացնելու և մեքենայացնելու ուղղությամբ, ընդլայնում են հասարակական սպասարկումների ոլորտը, գնալով նորանոր պարտավորություններ են ստանձնում բնակարանները սարքավորելու, նորոգելու և մաքրելու, սպիտակեղենը լվանալու, երեխաներին խնամելու, ընտանեկան տնտնակատարությունները սպասարկելու ուղղությամբ:

Սոցիալ-տնտեսական և հասարակական-քաղաքական մեծագույն վերափոխությունների, ռեսպուբլիկայի էկոնոմիկայի և կուլտուրայի արագ զարգացմանը, աշխատավորների նյութական բարեկեցության աճմանը զուգընթաց ամբողջովին փոխվեցին նաև մարդկանց ապրելակերպը, կենցաղն ու աշխարհայացքը: Ամենուրեք լայն մտահորիզոն, վսեմ իդեալներ ունեցող նոր մարդն է՝ տոգորված սովետական հայրենասիրության, կոլեկտիվիզմի, ընկերականության, հասարակական պարտքի նկատմամբ նվիրվածության ազնիվ զգացմունքներով: Հաստատորեն կենցաղի մեջ են մտել գիրքը, թերթը, ռադիոն, հեռուստատեսությունը: Մարդկանց փոխհարաբերություններում ավելի է խորանում կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի «Մարդը մարդուն բարեկամ է, ընկեր և եղբայր» սկզբունքը:

Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունը մշտական հոգատարություն է ցուցաբերում ժողովրդի նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի առավել բարձրացման, աշխատավորների կենցաղային պայմանների



բարելավման, նրանց գիտակցականությունը բարձրացնելու նկատմամբ: Այս տարվա հունիսին Ուզբեկստանի կոմպարտիայի Կենտկոմի XIII պլենումը քննարկեց «Կենցաղի կուլտուրայի բարձրացումը, անցյալի մնացուկների հաղթահարումը աշխատավորների կոմունիստական դաստիարակության կարևոր պայմանն է» հարցը: Պլենումը բազմակողմանիորեն քննարկեց և կոմպլեքսային սկզբունքով, միասնության ու օրգանական կապի մեջ լուծեց արտադրական, հասարակական և ընտանեկան կենցաղի վերակառուցման, մարդկանց գիտակցության, վարքագծի ու կենցաղի մեջ հնի մնացուկների հաղթահարման, հասարակական և անձնական հարաբերությունների բոլոր ոլորտներում կոմունիստական բարոյականության վսեմ սկզբունքների հաստատման, ժողովրդի ընդհանուր կուլտուրայի բարձրացման, այդ կարևոր գործի պարտիական ղեկավարումն ուժեղացնելու հարցերը:

Պլենումն ընդգծեց, որ կենցաղի բարձր կուլտուրայի համար մղվող պայքարը՝ նոր մարդու համար, անձնավորության համակողմանի զարգացման համար մղվող պայքար է: Նա առաջ քաշեց մի կարևոր խնդիր՝ մինչև 1970 թվականը վերացնել խուտորային սիստեմը, ավարտել գյուղական բոլոր բնակավայրերի վերակառուցումը, ամենուրեք ստեղծել արդիական քաղաքատիպ ավաններ, որոնք ունենան ջրմուղ, կոյուղի, էլեկտրականություն, գազ, ռադիո և հեռուստատեսություն, կուլտուր-կենցաղային անհրաժեշտ հաստատություններ: Այդ խնդրի լուծումը հնարավորություն կտա խոշոր քայլ կատարելու քաղաքի և գյուղի էական տարբերությունները վերացնելու ճանապարհին՝ գյուղական աշխատավորների կենցաղը քաղաքի բնակիչների կենցաղի մակարդակին հասցնելու գործում:

## ՄԵՐ ՈՒԺԸ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ՄԵՋ Է

Սովետական Ուզբեկստանի էկոնոմիկայի ու կուլտուրայի զարգացման աննախընթաց հաջողությունները սոցիալիստական իրավակարգի առավելությունների, մեր ժողովրդի հերոսական ջանքերի արդյունքն են: Դրանք ձեռք են բերվել Սովետական Միության բոլոր ժողովուրդներին ցույց տված ՍՄԿՊ Կենտկոմի և սովետական կառավարության հսկայական օգնության շնորհիվ: Դրանում մենք տեսնում ենք լենինյան ազգային իմաստուն քաղաքականության մարմնացումը, սովետական ժողովուրդների եղբայրական բարեկամության հաղթանակը:

Մեր երկրի ժողովուրդների կուռ միասնությունը, նրանց եղբայրական անխզելի բարեկամությունը սովետական իշխանության մեծագույն նվաճումն են: Մեր ուժերի անսպառ աղբյուրը, մեր երջանկությունը, մեր բոլոր հաղթանակների գրավականը սովետական ժողովուրդների անկեղծ ու սրտագին բարեկամությունն է, որն ամուր է ինչպես գրանիտը, մաքուր՝ ինչպես աղբյուրի ջուրը, ջերմ ու լուսավոր՝ ինչպես ինքը արևը: Այդ բարեկամությունն է ջերմացնում մեր սրտերը, թև տալիս մեզ ու ոգևորում, օգնում հաղթահարելու դեպի մեր մեծ նպատակը՝ կոմունիզմը տանող ճանապարհի բոլոր դժվարությունները:

Սովետական ժողովուրդների բարեկամության հիմքում ընկած են այնպիսի գործոններ, որպիսիք չկային և չէին կարող լինել անցյալում գոյություն ունեցող բազմազգ պետություններում՝ քաղաքական և սոցիալ-տնտեսական ընդհանրություն, գաղափարախոսության միասնություն, փոխադարձ խոր հարգանք ու վստահություն, եղբայրական համագործակցություն, իսկական ընկերական փոխ-

օգնություն և աջակցություն: Բոլոր սովետական ժողովուրդները մեկ անխախտ ընտանիքի մեջ են համախմբված նպատակների ու խնդիրների ընդհանրության գիտակցումով, որպիսիք լուծվում են յուրաքանչյուր առանձին ռեսպուբլիկայի և ամբողջ երկրի շահերից ելնելով:

Ժողովուրդների բարեկամության, նրանց եղբայրական համագործակցության, ընկերական օգնության ու աջակցության վերափոխիչ և ստեղծարար հզոր ուժը շատ լավ է զգացել ուզբեկ ժողովուրդը, որը նախառևոլյուցիոն անցյալում ապրել է ո՛չ միայն սոցիալական, այլև ազգային անարդարության ողջ դառնությունն ու սարսափը: Սովետական դարում նա դարձավ սոցիալիստական ազգերի ընտանիքի իրավահավասար անդամը, մշտապես զգում է Սովետական Միության բոլոր ժողովուրդների և ամենից առաջ իր ավագ եղբոր՝ ռուս ժողովրդի եղբայրական օգնությունն ու աջակցությունը:

Դեռևս սովետական իշխանության առաջին տարիներին Ռուսաստանի ֆեդերացիայից և եղբայրական մյուս ռեսպուբլիկաներից Ուզբեկստանը ստանում էր մեծ քանակությամբ բազմական մեքենաներ ու դասագրքեր, արդյունաբերական սարքավորում ու հացահատիկ, դեղորայք և Լենինի նախաձեռնությամբ Տաշքենդում ստեղծված պետական համալսարանի լաբորատորիաների համար սարքեր: Լենինի ուղեգրով, պարտիայի կոչով մեր երիտասարդ ռեսպուբլիկան էին գալիս ինժեներներ ու գիտնականներ, գյուղատնտեսներ և ուսուցիչներ, ոռոգատորներ ու բժիշկներ: Նրանք եղբայրաբար օգնում էին ուզբեկ ժողովրդին իր ազգային կադրերի պատրաստման գործում:

Սովետական ժողովուրդների տնտեսական կապերն ավելի ընդլայնվեցին մեր ժամանակներում: Դրանք ձգվել են հազարավոր թելերով: Չկա մի ռեսպուբլիկա, որի աշխատավորներն Ուզբեկստանին չտան իրենց ոգեշունչ աշխատանքի պտուղները: Եվ մեր երկրում չկա մի անկյուն, որտեղ մարդիկ չօգտագործեն Սովետական Ուզբեկստանի արտադրանքը:

Եղբայրական ռեսպուբլիկաներից անվերջանալի հոսանքով Ուզբեկական ՍՍՌ են փոխադրվում հաց և շաքար, միս ու յուղ, սև ու գունավոր մետաղների գլանվածք, մետաղահատ հաստոցներ և էլեկտրասարքավորում, տրակտորներ ու ավտոմոբիլներ, շինարարական մեքենաներ, հանքային պարարտանյութեր և կանաչ քիմիկատներ, անտառանյութ ու կահույք, գործվածքներ և հագուստներ, կուլտուր-կենցաղային ապրանքներ ու բազմական այլ արտադրանք: Այդ բոլորն ուղարկում են Մոսկվան ու Լենինգրադը, Ուրալը, Սիբիրն ու Հեռավոր Արևելքը, Ուկրաինան ու Բելոռուսիան, Ղազախստանն ու Անդրկովկասի ռեսպուբլիկաները, Մոլդավիան, Մերձբալթիկայի ու Միջին Ասիայի ռեսպուբլիկաները:

Եվ Ուզբեկստանի աշխատավորները շնորհակալության սրտագին զգացմունքով են ընդունում այդ ամենը: Նրանք իրենց հերթին գնալով ավելի ու ավելի մեծ քանակությամբ բամբակ ու մետաքս, կարակուլ ու շութ, միրգ ու խաղող, բանջարեղեն ու բոստանային կուլտուրաներ, գյուղատնտեսական ու տեքստիլ մեքենաներ, ռադիոտեխնիկական ու էլեկտրատեխնիկական արդյունաբերության ապրանքներ, քիմիական ու բամբակազտիչ սարքավորում, էքսկավատորներ ու կռունկներ, դիզելներ ու պոմպեր, կոմպրեսորներ ու կինոապարատուրա, գունավոր ու հազվագյուտ մետաղների հումք, ցեմենտ ու բնական գազ, սառնարաններ ու լաք և ներկեր, բամբակյա և մետաքսյա գործվածքներ, հագուստ ու կոշկեղեն,



պլիածոներ ու բամբակի յուղ, հրուշակեղեն ու գինեգործական արդյունաբերության արտադրանք են ուղարկում եղբայրական ռեսպուբլիկաներ:

Սովետական եղբայրական ժողովուրդները գնալով ավելի են միավորում իրենց ջանքերը տնտեսական շինարարության կարևոր պրոբլեմները կենսագործելու ասպարեզում: Օրինակ Միջին Ասիայի տնտեսական շրջանի ռեսպուբլիկաներն արդեն վաղուց համատեղ կերպով լուծում են ժողովրդատնտեսական բազմաթիվ խնդիրներ, միասին կառուցում են իռիգացիոն խոշոր կառույցներ, էլեկտրակայաններ, յուրացնում նոր հողեր: Այդ տնտեսական կապերը մեծապես ընդլայնվեցին ՍՄԿՊ Կենտկոմի միջինասիական բյուրո, միջինասիական ժողտնտխորհ և միջինասիական այլ օրգաններ ստեղծելու կապակցությամբ:

Քիչ չեն նաև այն բանի օրինակները, երբ ամբողջ հասարակության արտադրողական ուժերի հետագա զարգացման շահերից ելնելով ռեսպուբլիկաները վերանայում են իրենց սահմանները և իրենց տերիտորիայի մի մասը ոռոգելու կամ հանձնում իրենց հարևան եղբայրներին: Օրինակ, այդպիսի բարեկամական ակտ կատարեց ղազախ ժողովուրդը: Ուզբեկստանին հանձնելով մերձակա ընդարձակ տարածություններ, որտեղ մեծ քանակությամբ բամբակ և գյուղատնտեսական այլ կուլտուրաներ են աճեցվում: Ուզբեկստանն իր հերթին եղբայրական տաջիկ ժողովրդին հանձնեց 50 հազար հեկտար հող, որը գտնվում էր Տաջիկական ՍՍՌ-ին մերձակա շրջաններում:

Մեկանում գնալով ավելի լայնորեն է ծավալվում եղբայրական ռեսպուբլիկաների սոցիալիստական մրցությունը, ուժեղանում է գիտատեխնիկական նվաճումների և առաջավոր փորձի փոխանակումը: Տրադիցիոն է դարձել Ուզբեկստանի, Բելոռուսիայի և Իվանովոյի մարզի արդյունաբերության աշխատավորների, միջինասիական ռեսպուբլիկաների, Ադրբեջանի ու Հայաստանի բամբակագործների մրցությունը:

Տարեցտարի աճում ու ամրանում են ուզբեկ ժողովրդի կուլտուրական կապերը մյուս բոլոր եղբայրական սովետական ժողովուրդների հետ: Հիանալի տրադիցիա են դարձել եղբայրական գրականությունների ու արվեստների տասնօրյակներն ու շաբաթները, ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամության շաբաթները, միութենական ռեսպուբլիկաների մայրաքաղաքների օրերը, ֆեստիվալները, ինտերնացիոնալ հանդիպումների երեկոները, նկարչական փոխադարձ ցուցահանդեսների կազմակերպումը, թատրոնների և համերգային խմբերի փոխադարձ գաստրոլները եղբայրական ռեսպուբլիկաներում, ռադիո և հեռուստատեսային հաղորդումների փոխանակումը, ռեսպուբլիկական թերթերի հատուկ համարների համատեղ թողարկումները և այլն:

Ուզբեկստանի կուլտուրական կյանքում անջնջելի հետք են թողել անցյալ տարի մեր ռեսպուբլիկայում անցկացված ռուս գրականության և արվեստի տասնօրյակը, ռուսական երաժշտության «Տաշքենդի գարուն» ֆեստիվալը (որը կայացավ այս տարի), ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամության շաբաթը, Լենինգրադի գրականության և արվեստի շաբաթը: Վերջին տարիներս Ուզբեկստանում անց են կացվել նաև ադրբեջանական գրքի շաբաթ, մերձբալթյան ռեսպուբլիկաների, Միջին Ասիայի և Ղազախստանի կինոֆիլմերի ֆեստիվալներ, կազմակերպվել են ռուս, ուկրաինացի և տաջիկ նկարիչների նկարների ցուցահանդեսներ: Մեր ռեսպուբլիկան գաստրոլների են եկել Մոսկվայի, Լենինգրադի, Սվերդլովսկի, Ռոստովի, Ուկրաինայի, Ղազախստանի, Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Տաջիկստանի, Էստոնիայի և մյուս ռեսպուբլիկաների թատրոնների

արտիստները: Ուզբեկ արտիստներն իրենց հերթին գաստրոլներ են ունեցել
Մոսկվայում, Արևմտյան Սիբիրում, Կույբիշևում, Ղազախստանում, Ադրբեջանում,
Վրաստանում, Հայաստանում, Տաջիկստանում, Թուրքմենիայում: Ուզբեկստանի
նկարիչներն իրենց գործերը ցուցադրել են Ուկրաինայում, Դուշանբեում, Նովո-
սիբիրսկում և այլ քաղաքներում:

Այդ շաբաթներն ու տասնօրյակները, փեստիվալները, ցուցահանդեսներն ու
գաստրոլային ուղևորությունները միշտ էլ անցնում են հայրենասիրական հսկա-
յական ոգևորության, անկեղծ ու ջերմ մթնոլորտում, ստեղծագործական միաս-
նության պայմաններում. դրանք ավելի են իրար մոտեցնում տարբեր ազգու-
թյունների մարդկանց, ավելի են մերձեցնում նրանց սրտերը: Դրանք աշխատա-
վորների լայն մասսաներին օգնում են ավելի մոտիկից ծանոթանալու եղբայրա-
կան ժողովուրդների գրականության ու արվեստի նվաճումներին, նպաստում են
կենարար սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնա-
լիզմի ոգով նրանց դաստիարակելու գործին, ծառայում են ազգային կուլտուրա-
ների հետագա մերձեցմանը և փոխհարստացմանը, նրանց ինտերնացիոնալ հիմ-
քի ամրապնդմանը: Դրանք վերածվում են սովետական ժողովուրդների ամրա-
պնդվող եղբայրության ու բարեկամության վառ ցույցի, ծառայում են նրանց
ուժերի համախմբմանը կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում:

Աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության, սոցիալիստական
ազգերի համախմբման, նրանց բարեկամության ամրապնդման գործում առանձ-
նապես կարևոր դեր է խաղում ռուսաց լեզվի ուսումնասիրությունը, մի լեզու, որը
փաստորեն ՍՍՌՄ բոլոր ժողովուրդների ազգամիջյան շփման ու համագործակ-
ցության ընդհանուր լեզուն է և այն կարևորագույն միջոցը, որի օգնությամբ
յուրաքանչյուր ազգ հաղորդակից է լինում երկրի մյուս ժողովուրդների կուլտու-
րական նվաճումներին և համաշխարհային կուլտուրային: Ուզբեկ ժողովրդի
համար ռուսաց լեզուն դարձել է երկրորդ մայրենի լեզուն: Մեզանից յուրաքան-
չյուրը իր համար պատիվ է համարում, երբ սովորում է խոսել մեծ Լենինի
լեզվով, իր ավագ եղբոր ու հավատարիմ բարեկամի՝ ռուս մեծ ժողովրդի
լեզվով:

Ուզբեկստանի կոմպարտիան ամեն ինչ անում է, որպեսզի օրեցօր կարգա-
նա ու ամրապնդվի սովետական ժողովուրդների բարեկամությունը: Մենք աչքի
լույսի պես ենք պահում և կշարունակենք պահել սովետական իրավակարգի
ծնած, լենինյան պարտիայի դաստիարակած, աշխատանքում ու մարտերում
եղբայրական անխզելի կապերով ամրապնդված այդ մեծ բարեկամությունը:

***

Սովետական իշխանության տարիներին Ուզբեկական ՍՍՌ-ն հիրավի վիթ-
խարի հաջողությունների է հասել ժողովրդական տնտեսության, գիտության ու
կուլտուրայի բոլոր ճյուղերի կարգացման ասպարեզում: Սակայն դրանք ինքնա-
հանգստացում չեն առաջացնում մեր շարքերում: Ռեսպուբլիկայի աշխատավոր-
ները ոչ մի րոպե չեն թուլացնում աշխատանքի լարվածությունը: Դիմավորելով
փառապանց քառասնամյա հոբելյանը, նրանք իրենց բոլոր ուժերը, իրենց ողջ
ստեղծագործական եռանդը, իրենց բոլոր գիտելիքները, իրենց բոցավառ սըր-
տերը, ամբողջ ավյունը նվիրաբերում են կոմունիզմի կառուցման հոյակապ ծրա-
գիրն իրականացնելու համար մղվող պայքարին:

---

## ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ՊԱՐՏԼՈՒՍՅԱՆՑԻ ՊՐՈՊԱ-ԳԱՆԴԻՍՏՆԵՐԻՆ ԵՎ ՈՒՆԿՆԴԻՐՆԵՐԻՆ

Ա. ՍԻՄՈՆՅԱՆ

Պատմական գիտությունների թեկնածու

# ՄԵՐ ԴԱՐԱՇՐՋԱՆԻ ԲՆՈՒՅԹԸ ԵՎ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆ ԳԼԽԱՎՈՐ ԳԻԾԸ

Մարդկային հասարակության կարգացման երկար ու ձիգ ուղու վրա միան-
գամայն ուրույն տեղ են գրավում պատմական այն դարաշրջանները, երբ ժողո-
վըրդական կանգվածների հուժկու գրոհի տակ ընկել-խորտակվել են մարդու
ստեղծագործ ոգին կաշկանդող երբեմնի հոգևոր ու աշխարհիկ կուռքերը, իրենց
տեղը պիջելով նոր տերերին, նոր գաղափարներին: Եվ իրոք, չնայած դարեր ու
հազարամյակներ են մեզ բաժանում ստրուկների ու ճորտերի անցյալի համաժո-
ղովրդական ընդվզումներից, այսօր էլ դրանք մնում են որպես մարդու՝ իր
ազատ ու անկաշկանդ գոյության համար պայքարի վսեմ օրինակներ: Սակայն
որքան էլ իմաստալի լինեն անձնուրաց խիզախության դրվագներով հարուստ
դասակարգային պայքարի այդ իրադարձությունները, մարդկության առաջըն-
թացի վրա իրենց վճռական ազդեցությամբ նրանք ըստ էության ոչ մի կերպ չեն
կարող համեմատվել այն դարաշրջանի հետ, որն սկսվեց Հոկտեմբերյան սոցիա-
լիստական մեծ ռևոլյուցիայով:

Մարքսիզմ-լենինիզմի դրոշի ներքո և կոմունիստական պարտիայի ղեկավա-
րությամբ մեր երկրում հիմնահատակ կործանելով կապիտալիստների ու կալվա-
ծատերերի իշխանությունը, պրոլետարական ռևոլյուցիան իրենով նշանավորեց
համայն մարդկության սոցիալական ու ազգային ազատագրության պայքարի նոր
դարաշրջանի սկիզբը, դարաշրջան, որի հիմնական բովանդակությունը անցումն
է կապիտալիզմից սոցիալիզմին ու կոմունիզմին, անցումը դեպի այն հասարակու-
թյունը, ուր չկա «ո՛չ տեր, ո՛չ ստրուկ», ուր ստեղծվում են իրական պայմաններ
բոլոր մարդկանց ազատ ու երջանիկ կյանքի համար:

Մեր երկրագնդի վրա այժմ կա երկու աշխարհ՝ սոցիալիստական և կապի-
տալիստական: Երկփառեմության նման մի բան եղել է և անցյալում: Հայտնի
է, որ երկար ժամանակ գոյակցում էին ստրկատիրությունն ու ֆեոդալիզմը, իսկ
այնուհետև՝ ֆեոդալիզմը և բուրժուական հասարակությունը:

Սակայն այժմ երկրագնդի վրա սոցիալական երկու տարբեր սիստեմների՝ սո-
ցիալիզմի և կապիտալիզմի միաժամանակյա առկայությունն իր էությամբ արմա-
տապես տարբերվում է մինչսոցիալիստական կարգերի այդ համակեցությունից:
Բանը ոչ միայն նրանում է, որ սոցիալիզմն ու կապիտալիզմը որպես սոցիալական
գոյաձևեր ելնում են տրամագծորեն միանգամայն հակառակ սկզբունքներից:

Նրանց գոյակցությունը տեղի է ունենում պատմական այնպիսի հանգամանքներում, երբ հասարակության սոցիալական առաջընթացը, մի կողմից, և XX դարում, առանձնապես վերջին տասնամյակներին գիտատեխնիկական մտքի մինչև այդ նմանը չունեցող հաջողությունները, մյուս կողմից, խիստ արագացրել են պատմական զարգացման պրոցեսը, ակտիվ քաղաքականության մեջ ներգրավել աշխարհի բոլոր ժողովուրդներին: Դրա շնորհիվ մարդկությանը հուզող պրոբլեմները դադարել են այսպես կոչված «ընտրյալների» մոնոպոլիան լինելուց: Ստեղծվել են նյութական հնարավորությունները կապիտալիզմը՝ շահագործողների վերջին հասարակարգը կոմունիստականի վերափոխելու համար:

Համաշխարհային պատմության ընթացքը անհերքելիորեն ապացուցել է արտադրության սոցիալիստական եղանակի անվիճելի առավելությունները կապիտալիստականի նկատմամբ: Ծնվելով կապիտալիզմի ընդերքից և ծառանալով հին աշխարհի դեմ՝ սոցիալիզմը բովանդակ մարդկությանը ցույց տվեց սոցիալական վերածնության իսկական ուղին: Սոցիալիստական շինարարության սովետական փորձը տակավին մինչպատերազմյան տարիներին ոգեշնչում էր իմպերիալիզմի դեմ պայքարող ուժերին: ՍՍՌՄ-ում սոցիալիզմի հաղթանակը, նրա վճռական դերը երկրորդ համաշխարհային պատերազմում ֆաշիզմի ջախջախման գործում էլ ավելի բարձրացրին մեր երկրի հեղինակությունը, նրա շուրջը համախմբելով կապիտալի բռնության դեմ մաքառող բոլոր ժողովուրդներին:

Իմպերիալիզմի դիրքերին նոր, խոշոր հարված էր սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակը ժողովրդական դեմոկրատիայի երկրներում: Դուրս գալով մեկ երկրի շրջանակներից, սոցիալիզմը վերածվեց համաշխարհային սիստեմի: Դա էլ հենց արդի դարաշրջանի հասարակության վերընթաց զարգացման գլխավոր արդյունքն է:

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմը տարբեր երկրների միջև տնտեսական և քաղաքական հարաբերությունների նոր տիպ է, որը հենված է սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, ժողովուրդների իրավահավասարության և անկախության վրա: Նրանց եղբայրական համագործակցությունը ապահովում է յուրաքանչյուր երկրի ներքին ռեսուրսների առավել լրիվ և խելացի օգտագործումը, արտադրողական ուժերի բազմակողմանի զարգացումը, հետևաբար, բոլոր աշխատավորների կենսամակարդակի հարաճուն վերելքը: Սոցիալիստական երկրների նվաճումները տնտեսության և կուլտուրայի զարգացման բնագավառներում մի անգամ ևս հաստատեցին այն ճշմարտությունը, որ անկախ տեղական պայմանների յուրահատկություններից, սոցիալիզմն է բոլոր երկրների իսկական առաջընթացի գլխավոր երաշխիքը: Դրանով իսկ սոցիալիզմի լագերը վճռական ազդեցություն է թողնում համաշխարհային ռևոլյուցիոն պրոցեսի վրա, խթանելով այն պայքարին, որ մղում են աշխատավոր մասսաները իմպերիալիզմի դեմ:

Պատահական չէ, որ բուրժուազիայի սպասարկու գրչակները, վերանալով ռեալ փաստերից, ձգնում են «ապացուցել» կապիտալիզմի «օրինական լինելը» և ամեն կերպ վարկաբեկում են սոցիալիզմը, այն համարելով «հնացած, մերժելի և անընդունելի» այսպես կոչված «արևմտյան հասարակությունների» համար: Ոչ անհայտ լեյբորիստական գործիչ Կ. Քրոսմենը, որը չի ուզում տեսնել, թե ինչպիսինն է սոցիալիզմը այսօր սոցիալիստական լագերի երկրներում, բայց իր վրա է վերցրել սոցիալիզմի ապագան «գուշակողի» դերը, գրում է. «այն հայցքը, թե մենք մի օր կարթնանանք և կտեսնենք այսպես կոչված «սոցիալիզ-



մը» իրականացված, ծնվել է կապիտալիզմի կործանման վերաբերյալ ռևոլյուցիոն տեսություններից: Բայց արևմտյան հասարակություններում փոփոխություններ կատարվում են աստիճանաբար և էվոլյուցիոն կերպով»: Որ սոցիալիզմն այսօր հսկայական ձգողական ուժ է ձեռք բերել նաև հենց այդ «արևմտյան հասարակություններում», դրա վառ ապացույցը կապիտալիզմի «աստիճանաբար և էվոլյուցիոն կերպով» զարգացման մասին տեսությունների կրախն է, կապիտալիստական մոնոպոլիաների ազդեցության ոլորտների հետագա կծկումը, իմպերիալիզմի վայրէջքը և քայքայումը:

Կապիտալիզմը «երիտասարդացնելու», «ձևափոխելու», «նորոգման» մասին բուրժուական ու ռեֆորմիստական գաղափարախոսների նախագծերն ու վարդապետությունները, սակայն, անկոր են քողարկելու այն ճշմարտությունը, որ համաշխարհային կապիտալիստական սիստեմը ամբողջությամբ վերցրած հասունացել է սոցիալիստական ռևոլյուցիայի համար:

Իրեն հատուկ ներքին հակասությունների հետևանքով կապիտալիզմը ոչ միայն չի կարողացել դուրս գալ, այլև թեկուզ մի փոքր մեղմացնել իր ամբողջ սիստեմն ընդգրկող ընդհանուր ճգնաժամը, որը սկսած առաջին համաշխարհային պատերազմից և Հոկտեմբերյան ռևոլյուցիայից, գնալով ավելի է խորանում, սպառնալով իմպերիալիզմի գոյությանն ընդհանրապես: Երբեք այնպիսի ահռելի չափերի չի հասել անտագոնիզմն աշխատանքի և կապիտալի միջև, ինչպես այժմ: Երբեք կապիտալիստական սիստեմում սոցիալական ու ազգային հակասությունները այնքան չեն սրվել, ինչպես այժմ: Իմպերիալիզմը եղել և մնում է որպես աշխատավոր մարդկանց կեղեքիչը և հարստահարողը, որպես ազատասեր ժողովուրդների գլխավոր հակառակորդը, մարդկային հասարակության առաջընթացի հիմնական խոչընդոտը:

Այսպիսով, արդի դարաշրջանի համար բնորոշն այն է, որ իրար դեմ հանդիման կանգնած են երկու տարբեր հասարակական սիստեմներ, ընդ որում դրանցից առաջինը՝ սոցիալիզմն ընթանում է վերելքի ուղիով, օրեցօր ավելի ու ավելի է ծավալում իր ուժերը, իր կողմը նվաճում նորանոր միլիոնների, իսկ մյուսը՝ կապիտալիզմն ապրում է մայրամուտ, ընթանում դեպի իր վերջնական կործանումը: Սոցիալիզմը ժողովուրդներին բերում է ազատություն և երջանկություն, իսկ կապիտալիզմը՝ թշվառություն և աղքատություն: Հետևաբար, պայքարը այդ երկու սիստեմների միջև, դա պայքար է ապագայի համար, պայքար ամբողջ մարդկության հետագա ճակատագրի համար:

Տակավին սովետական իշխանության առաջին տարիներին, բացահայտելով սոցիալիստական ռևոլյուցիայից հետո սկսված դարաշրջանում միջազգային հարաբերությունների էությունն ու զարգացման տենդենցները, Վ. Ի. Լենինը պատմական բարդ իրադարձությունների շարքում առանձնացրեց այն հիմնականը, գլխավորը, որով պայմանավորվում են պետությունների ու ժողովուրդների փոխհարաբերությունը: Նա նշում էր, որ «...ժողովուրդների փոխադարձ հարաբերությունները, պետությունների ամբողջ համաշխարհային սիստեմը որոշվում է իմպերիալիստական ազգերի փոքրաթիվ խմբի պայքարով ընդդեմ սովետական շարժման ու սովետական պետությունների, որոնց գլխավորում է սովետական Ռուսաստանը: Եթե դա մենք աչքաթող անենք, ապա չենք կարող ոչ մի ազգային կամ գաղութային հարց ճիշտ դնել, եթե անգամ խոսքը վերաբերի աշխարհի ամենահեռավոր անկյունին: Այդ տեսակետից ելնելով միայն, կոմունիստական պարտիաները կարող են ճիշտ դնել ու լուծել քաղաքական հարցերը, ինչ-

պես քաղաքակրթված, այնպես էլ հետամնաց երկրներում» (Լենին, Երկեր, հատ. 31, էջ 290) : Լենինյան այս դրույթը նոր ուժով է հնչում մեր օրերում, երբ ստեղծվել է սոցիալիզմի համաշխարհային սիստեմը, որը վճռական ազդեցություն է թողնում պատմության ամբողջ ընթացքի վրա:

Հասարակական երկու տարբեր սիստեմների փոխհարաբերությունները կազմում են ժամանակակից պատմության առանցքը: Հիրավի, երկու սիստեմների պայքարն է այն հանգույցը, ուր այսօր լուծվում են մարդկությանն առավել հուզող հարցերը և ուր վեր է հառնում ռևոլյուցիոն ու ռեակցիոն ուժերը բաժանող անջրպետը: Այդ պայքարում են թրծվում ժողովրդի գործին նվիրված իսկական հերոսները, կամ անհետ կորչում պատմության անիվը ետ շրջելու մոլուցքով տարված ռևիզիոնիստական ու ռեֆորմիստական տարրերը:

Եվ այսպես, սոցիալիզմի ու կապիտալիզմի միջև հակասությունն է ներկա դարաշրջանում պատմության առաջմղիչ ուժը, նրա զարգացման հիմնական գործոնը, քանի որ այդ դարաշրջանի համար բնորոշը՝ համաշխարհային երկու տարբեր հասարակական սիստեմների գոյությունն է, երկու իրարամերժ գաղափարախոսությունների անվիջում պայքարը:

2.

Մեր ժամանակներում մարդկային հասարակության զարգացման գլխավոր բովանդակությունը, գլխավոր ուղղությունը և գլխավոր առանձնահատկությունները որոշում են միջազգային բանվորական ռևոլյուցիոն շարժումը և նրա ծնունդ սոցիալիզմի համաշխարհային սիստեմը:

Պատմական զարգացման պրոցեսում սոցիալիզմի սիստեմի դերի անշեղ աճը բնորոշվում է նրա ամենակարևոր գործոնի՝ նյութական արտադրության հզորության բուռն աճմամբ: Սոցիալիզմի սիստեմը արագորեն առաջ է շարժվում, հասնելով կապիտալիստական սիստեմին: Եթե սոցիալիստական սիստեմի բաժինը համաշխարհային արդյունաբերական արտադրության մեջ 1955 թ. կազմում էր 27 տոկոս, ապա այժմ այն մոտենում է 40 տոկոսի: Սոցիալիզմի երկրներում արտադրության, գիտության ու տեխնիկայի զարգացման բնագավառում ձեռք բերած նվաճումները, սոցիալական պրոբլեմների լուծումը հօգուտ ժողովրդական լայն զանգվածների, մարդու ստեղծագործական ուժերի հետագա ծավալման համար ռեալ պայմանների ստեղծումը—այս ամենը սարսափեցնում է բուրժուազիային, քանի որ այն կապիտալի երկրների աշխատավորներին դուրս է բերում պայքարի հանուն սոցիալիզմի ամբողջ աշխարհում: Սոցիալիստական պետությունները իրենց անխորտակելի տնտեսական-քաղաքական հզորությամբ կանգնած են իմպերիալիզմի ագրեսիվ, հակառևոլյուցիոն ոտնձգությունների դեմ, ձախողում են նրա՝ աշխարհը նոր պատերազմի հորձանուտի մեջ նետելու մարդատյաց պլանները:

**«Մեր ժամանակի գլխավոր հատկանշական գիծն այն է,**— ասված է կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների Մոսկվայի խորհրդակցության Դեկլարացիայի մեջ,— **որ համաշխարհային սոցիալիստական սիստեմը դառնում է մարդկային հասարակության զարգացման վճռական գործոնը»:**

Գնալով նոր թափ է ստանում բանվոր դասակարգի միջազգային ռևոլյուցիոն շարժումը: Ուժերի նոր հարաբերակցությունը աշխարհում կապիտալիս-



տական երկրների աշխատավորների առջև բացել է նոր հեռանկարներ, նրանք
հնարավորություն են ստացել լուծելու իրենց առջև այսօր կանգնած՝ խաղաղու-
թյան, ազգային անկախության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար պայքարի
պատմական խնդիրները: Նոր իրադրության մեջ բանվոր դասակարգը կարող
է հարկադրել բուրժուազիային հօգուտ աշխատավորական զանգվածների կատա-
րելու սոցիալական զիջումներ, որոնք դուրս կգան սովորական ռեֆորմների շըր-
ջանակներից և մեծ ներդրում կլինեն սոցիալիզմի հաղթանակի համար մղվող
պայքարում: Կապիտալիստական երկրների բանվոր դասակարգի ելույթները հա-
նուն դեմոկրատական իրավունքների և ազատությունների բարձրացնում է ժողո-
վուրդների քաղաքական ակտիվությունը, արագացնում ռևոլյուցիայի սուբյեկտիվ
գործոնի հասունացումը, խթանում պատմական զարգացման տեմպերը: Միաժա-
մանակ ակտիվ գործողությունների մեջ են մտնում պրոլետարիատի նորանոր ջո-
կատներ: Ծավալվում է բանվորական շարժումը Ասիայի, Աֆրիկայի, Լատինա-
կան Ամերիկայի երկրներում, ուր ստեղծվել են կոմունիստական պարտիաներ,
որոնք օգտագործելով սոցիալիզմի երկրների պատմական փորձը՝ աշխատում
են բանվոր դասակարգի շուրջը համախմբել իմպերիալիզմի դեմ հանդես եկող
բոլոր դեմոկրատական ուժերին:
Հսկայական են մեր դարաշրջանում ազգային-ազատագրական պայքարի
նվաճումները: Գաղութարարության լուծը թոթափել և ազգային անկախություն են
ձեռք բերել ավելի քան 50 երկրների ժողովուրդներ: Այժմ բոլոր առաջադեմ մար-
դիկ Սովետական Միության գլխավորությամբ առաջ են քաշել գաղութարարու-
թյունը, աշխարհի որ մասում էլ որ լինի, իսպառ վերացնելու, անխտիր բոլոր ժո-
ղովուրդներին իրենց բախտը տնօրինելու իրավունք տրամադրելու հարցը: Պար-
զաբանելով պատմական նոր հանգամանքներում ազգային-ազատագրական շար-
ժումների զարգացման հեռանկարները, Վ. Ի. Լենինը այն միտքն էր անցկացնում,
որ եթե առաջներում դրանք ավարտվում էին բուրժուազիայի իշխանության գլուխ
անցնելով, ապա կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի դարաշրջանում, երբ ժո-
ղովուրդների ազգային-ազատագրական պայքարի ղեկավար ուժը կոմունիստա-
կան պարտիաների գլխավորությամբ պրոլետարիատն է, հնարավոր է, նպաստա-
վոր պայմանների դեպքում, որ հաստատվի իսկական ժողովրդական իշխանու-
թյուն: Դրանով իսկ իմպերիալիզմից ազատագրվող գաղութային երկրների հա-
մար հնարավորություն է ստեղծվում հաղթանակած երկրների պրոլետարիատի
օգնությամբ կատարել անցում դեպի սոցիալիզմ, շրջանցելով զարգացման կա-
պիտալիստական փուլը: Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի գաղու-
թարարությունից ազատագրված մի շարք երկրներում տեղի ունեցող իրադարձու-
թյունները լրիվ հաստատում են լենինյան կանխատեսության ճշտությունը:
Սովետական Միությունը, ինչպես և սոցիալիզմի սիստեմի մյուս երկրները
տնտեսական ու քաղաքական օգնություն են ցույց տալիս ազգային-ազատա-
գրական շարժմանը, ձեռք են առնում բոլոր միջոցները, ընդհուպ մինչև ռազ-
մական օժանդակությունը, որպեսզի խանգարեն նախկին գաղութարարներին
սանձազերծելու տեղական պատերազմներ, որոնք կոչված են ազատագրված եր-
կրները ներմուծելու հակառևոլյուցիա և նրանց շեղել ինքնուրույն զարգացման
ուղուց: Այժմ ազատագրված երկրների սոցիալական առաջընթացի հիմնական
պայմանը նրանց տնտեսական ինքնուրույնության ապահովումն է: Այդ գործում
հսկայական նշանակություն ունի Սովետական Միության ներդրումը: Բավական
է ասել, որ ՍՍՌՄ-ը ազատագրված երկրներին արտոնյալ պայմաններով տրա-

մադրել է ավելի քան 3 միլիարդ ռուբլի վարկ, օգնում է նրանց կառուցելու մոտ 500 արդյունաբերական և ուրիշ օբյեկտներ:

Գաղութային դաժան ստրկության կապանքներով երբեմնի շղթայված ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարն իմպերիալիզմի դեմ երկրագնդի տարբեր մասերում ծավալվող պայքարի բաղկացուցիչ մասն է:

Ամբողջ երկրագնդի մասշտաբով կապիտալիզմի նկատմամբ հաղթանակը կարող է ձեռք բերվել արդիականության երեք գլխավոր ռևոլյուցիոն ուժերի՝ սոցիալիզմի համաշխարհային սիստեմի, կապիտալիստական երկրների պրոլետարիատի պայքարի, կեղեքված ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումների համատեղ ջանքերի շնորհիվ: Այդ ջանքերի միավորման գործում արդի պայմաններում առաջնահերթ նշանակություն է ստացել ժամանակակից համաշխարհային քաղաքականության մի այնպիսի արմատական հարց, ինչպիսին պատերազմի և խաղաղության հարցն է:

Մարդկային պատմության կրիտիկական մոմենտին, երբ իմպերիալիստական բուրժուազիայի առավել ռեակցիոն շրջանների կողմից աշխարհին սպառնում է ջերմամիջուկային պատերազմի ահավոր վտանգը, բոլոր ժողովուրդների ամենակենսական խնդիրը՝ խաղաղության պաշտպանությունը և ամրապնդումն է: Թեև քանի գոյություն ունի իմպերիալիզմը, այնքան առկա է ագրեսիվ պատերազմի հնարավորությունը, սակայն այժմ ստեղծվել են պայմաններ, երբ ոչ միայն կարելի է կանխել պատերազմը, այլև ընդհանրապես հրաժարվել նրանից, որպես միջազգային հարցերը լուծելու միջոցի: Խաղաղության կողմնակիցների ուժերը աճում են ամենուրեք: Այդ ուժերի առաջին շարքերում ընթանում են կոմունիստները՝ ժողովուրդների բարեկամության ու եղբայրության դրոշակակիրները, տարբեր սոցիալական սիստեմ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության քաղաքականության ոգեշնչողները:

Խաղաղության, աշխարհի բոլոր ժողովուրդների բախտի նկատմամբ անսահման հոգատարությամբ են տոգորված կոմունիստական ու բանվորական պարտիաների 1957 և 1960 թթ. խորհրդակցությունների փաստաթղթերը, որտեղ խաղաղ գոյակցության լենինյան քաղաքականությունը դիտվում է սերտորեն կապված համաշխարհային ռևոլյուցիոն պրոցեսի կարգացման հետ, խաղաղությունը իրավամբ համարելով արդի դարաշրջանի համամարդկային նշանակություն ունեցող մյուս պրոբլեմների լուծման գլխավոր պայմանը:

Արդի միջազգային կոմունիստական շարժումը ելնում է այն բանից, որ դեմոկրատիայի, ազգային անկախության, սոցիալիզմի ու կոմունիզմի համար պայքարը անխզելիորեն կապված է խաղաղության համար մղվող պայքարի հետ: ՍՄԿՊ XXII համագումարում ընդունված պարտիայի ծրագիրը ոչ միայն հռչակեց, որ հնարավոր է կոմունիզմի հաղթանակը մեր երկրում, այլև սոցիալիստական սիստեմի վերջնական հաղթանակը կապիտալիզմի հետ խաղաղ մրցության պայմաններում:

Կոմունիստական պարտիաների Մոսկվայի խորհրդակցությունները, որոշելով բանվոր դասակարգի վերջնական նպատակներին հասնելու համար պայքարի ուղիները, նշեցին, որ ամենակարևորագույն խնդիրը, սոցիալիստական սիստեմը ամրապնդելու հետ միասին, միջազգային կոմունիստական շարժման միասնության ապահովումն է: Մարքսիստական-լենինյան պարտիաների միասնությունը դա բոլոր երկրների բանվոր դասակարգի միասնության ու համերաշխության բարձրագույն արտահայտությունն է: Այդ միասնությունն ունի իր օբյեկտիվ հիմ-



քը. անկախ այն բանից, թե որ երկրում են ապրում կամ ինչ ազգին են պատկանում,— բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների շահերն ընդհանուր են. ընդհանուր են նաև նրանց վերջնական նպատակը՝ կոմունիզմը, գաղափարախոսությունը՝ մարքսիզմ-լենինիզմը: Ահա թե ինչու սոցիալիզմի համաշխարհային սիստեմի առաջատար դերով հանդերձ միջազգային կոմունիստական շարժման միասնության ըստ ամենայնի ամրապնդման դիրքորոշումը լիովին համապատասխանում է բոլոր երկրների բանվոր դասակարգի կենսական շահերին:

Մարքսիստական-լենինյան կոմունիստական ու բանվորական պարտիաները ամեն ինչից վեր են դասում համաշխարհային կոմունիստական շարժման միասնության շահերը, դրանում տեսնելով բոլոր երկրների աշխատավորների միջազգային համերաշխության, իմպերիալիզմի և գաղութարարության դեմ, սոցիալիզմի և կոմունիզմի համար պայքարի հաջողության գրավականը:

## 3.

Համաշխարհային կոմունիստական շարժման արմատական հարցերում, բանվոր դասակարգի գործի համար վնասակար, ըստ էության իմպերիալիստական ռեակցիայի համար օգտավետ գիծ են վարում Չինաստանի կոմունիստական պարտիայի ղեկավարները: Դավաճանելով պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներին, նրանք հանդես են գալիս իրենց ուրույն գաղափարական և քաղաքական պլատֆորմով, որն ուղղված է 1957 և 1960 թթ. խորհրդակցությունների որոշումների դեմ և նպատակ ունի արդարացնելու իրենց սանձարձակ պառակտողական գործունեությունը:

Պայքար սկսելով կոմունիստական և բանվորական պարտիաների համատեղ մշակած՝ համաշխարհային կոմունիստական շարժման գլխավոր գծի դեմ, չինական ղեկավարությունը սկզբում ջանում էր ցույց տալ, որ ինքը մյուս պարտիաների հետ ունի միայն «գաղափարական տարաձայնություններ», որ միայն մարքսիզմ-լենինիզմի անաղարտության և սոցիալիզմի երկրների ժողովուրդների բախտի նկատմամբ մտահոգությունն են նրան ստիպում հանդես գալ «քննադատական խոսքով»: Հենց այդ նպատակն էին հետապնդում նրա այսպես կոչված «25 կետերը», որտեղ երկար ու բարակ շաղակրատվում էր արդի աշխարհը հուզող հարցերի՝ պատերազմի ու խաղաղության, ռևոլյուցիայի կարգացման հեռանկարների, պրոլետարիատի դիկտատուրայի դերի, խաղաղ գոյակցության, սոցիալիստական համագործակցության երկրների փոխհարաբերությունների և այլ պրոբլեմների մասին: Ընդունելով ամենագետ իմաստունի անառարկելի դիրք, չինական ղեկավարներն իրենց վրա պարտականություն էին վերցրել մյուս բոլոր ժողովուրդներին ու պետություններին, պարտիաներին ու կազմակերպություններին սովորեցնելու, թե ինչպես պետք է ապրեն ու գործեն նրանք, ինչ պետք է անեն և այլն:

Մինչդեռ, երբ ամբողջ առաջավոր մարդկությունը ողջունեց ատոմային զենքի փորձարկումների մասնակի արգելման մասին Մոսկվայի պայմանագիրը, Պեկինի թերթերը կաշվից դուրս էին գալիս վարկաբեկելու խաղաղության ամրապնդմանը նպաստող այդ խոհեմ քայլը: Շատերի համար անսպասելի էր տեսնել Պեկինի գործիչներին մի շարքում, ուր կանգնել էին հակակոմունիզմի ջատագովները՝ ամերիկյան «կատաղիներից» մինչև արևմտագերմանական ռեվան-

չիստները, ըը Գոլից մինչև Ադենաուերը: Այն ժամանակ, երբ բոլոր նրանք, ովքեր կողմ են միջազգային լարվածության թուլացմանը, միահամուռ ողջունում էին Սովետական Միության կառավարության, նրա ղեկավար Ն. Ս. Խրուշչովի հեռատես քաղաքականությունը, որի շնորհիվ չպայթեցին Կարաիբյան ծովում ճգնաժամի օրերին արդեն կրակազիծ հանած ռումբերը, չինական գործիչները հերյուրանքներ էին տարածում Սովետական Միության հասցեին, որ նա իբր գործարքի մեջ է մտել ԱՄՆ-ի հետ՝ աշխարհն իրենց միջև բաժանելու համար:

Հանդես գալով սանձարձակ պրոպագանդայով ընդդեմ կոմունիստական շարժման միասնության և իր շուրջը համախմբելով տարբեր երկրներում ավանտյուրիստ-թափթփուկներին, չինական ղեկավարությունը ձգտում է «տեսականորեն» հիմնավորել իր պառակտիչ քաղաքականությունը, այդ նպատակով նենգափոխելով մարքսիստական փիլիսոփայությունը: Բնությունը և հասարակությունը, հայտարարում են այդ նորաթուխ ռևիզիոնիստները, զարգանում են երկատվելու ճանապարհով, ուստի միջազգային կոմունիստական շարժումն էլ պետք է երկատվի, պառակտվի, որպեսզի «զարգանա»: Ըստ չինացիների այդ «փիլիսոփայության» դուրս է գալիս, որ միասնական կոմունիստական շարժումը ոչ թե արագացնում, այլ խանգարում, խոչընդոտում է հասարակական զարգացման պրոցեսին: Սա ոչ միայն նողկալի դավաճանություն է միասին մշակված և ընդունված պարտիական ծրագրային փաստաթղթերի սկզբունքներին, այլև լրիվ հրաժարում մարքսիզմ-լենինիզմից, բացահայտ անցում կոմունիստական շարժման հակառակորդների կողմը: Ասենք այժմ դա չինացիների համար ոչինչ չի նշանակում, քանի որ նրանք արդեն դադարել են ՍՄԿԿ-ի և մարքսիստական-լենինյան մյուս պարտիաների դեմ իրենց կատաղի պայքարը «տեսական դրույթներով» քողարկելուց և դիմում են այնպիսի հերյուրանքների, որին կարող է նախանձել բուրժուական ամենամոլի ռեակցիոները:

Չինական կոմպարտիայի ղեկավարության բուն նպատակները և հեռուն գնացող պլանները, որոնք այսօր էլ համաշխարհային հասարակայնությանն են մատուցվում երբեմն «պատմական էքսկուրսիաներով» և «տեսական ընդհանրացումներով» շաղախված իրենց մերկապարանոց արտահայտությունն են գտել այն կրույցում, որ ունեցել է Մաո Ցզե-դունը ճապոնական սոցիալիստների խմբի հետ: Միջազգային ռևոլյուցիոն շարժման «առաջնորդի» և «տեսաբանի» հավակնությամբ տառապող այդ ռևիզիոնիստը բոլորովին դեն է նետում դասակարգային մոտեցումը դեպի արդի աշխարհի այրող հարցերը, առաջին պլանի վրա մղելով չինական էքսպանսիոնիստների աշխարհակալական ձգտումները: Ըստ նրա, ներկա դարաշրջանում որոշիչը ոչ թե սոցիալ-տնտեսական կարգով պայմանավորված երկու հասարակական սիստեմների հակասությունն է, այլ աշխարհագրական գործոններով սահմանվող ինչ որ «գոտիների» փոխհարաբերությունը. արդի աշխարհում ոչ թե գոյություն ունեն սոցիալիստական և կապիտալիստական սիստեմներ, այլ կան «սովետա-ամերիկյան գոտի» և այսպես կոչված «միջանկյալ գոտի», ընդ որում եթե առաջինի մեջ մտնում են Սովետական Միությունը և ԱՄՆ-ն, ապա երկրորդը միավորում է մնացած աշխարհը, այդ թվում և Չինաստանը:

«Միջանկյալ գոտիների» «տեսությունը» մարտնչող հակամարքսիստական, հակալենինյան կոնցեպցիա է, որը «կենսական տարածության» վերաբերյալ հիտլերյան տեսության պես կոչված է քողարկելու չինական ղեկավարների ագրեսիվ դիտավորությունները: Որ դա այդպես է, երևում է այդ կրույցում ուրիշ երկրների,



մասնավորապես Սովետական Միության նկատմամբ դրսևորած Մաո Ցզե-դունի հավակնություններից:

Չինական կոմպարտիայի ղեկավարությունը ձգտում է աշխարհի առջև երևալ հակաիմպերիալիստական ազգային-ազատագրական պայքարի «բարեկամի» կերպարանքով: Սակայն ինչպես մյուս դեպքերում, այս անգամ էլ դժվար չէ կռահել այդ «բարեկամի» սպեկուլյատիվ նպատակները: Իրոք, եթե նրան քիչ թե շատ հետաքրքրում է ազգային-ազատագրական շարժումների բախտը, ապա ինչո՞ւ է փորձում քայքայել դրանց շարժիչ ուժերը: Մի՞թե Չինաստանի հարձակումը Հնդկաստանի վրա, որը չափազանց ծանր վիճակում դրեց հնդկական կոմպարտիային, կարելի է դիտել որպես հոգատարություն ազգային-ազատագրական պայքարի նկատմամբ: Մի՞թե Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների հասցեին արվող կրպարտչական հայտարարությունները, որով պարբերաբար հանդես են գալիս չինական ներկայացուցիչները միջազգային տարբեր հավաքույթներում, օգնում են հակաիմպերիալիստական ուժերի միավորմանը: Կարելի է բերել ուրիշ շատ փաստեր, որոնք վկայում են, որ չինական ղեկավարությունը աշխատում է ջլատել ժողովուրդների ազատագրական պայքարը, քանի որ այն իր համար խոչընդոտ է ուրիշի տերիտորիաները կալթելու ճանապարհին:

Այսպիսով հանձին չինական կոմպարտիայի ղեկավարության միջազգային կոմունիստական շարժումը գործ ունի ոչ միայն մի խումբ ռևիզիոնիստ-պառակտիչների, այլև ռասմատենչ շովինիստների կլիկի հետ, որը ջանում է մի կողմից կազմալուծել իմպերիալիզմի դեմ պայքարող ռևոլյուցիոն ուժերի ճակատը, մյուս կողմից՝ սրել միջազգային իրադարձությունը, աշխարհը գլորել դեպի նոր համաշխարհային պատերազմ հօգուտ իր մեծապետական-շովինիստական ձգտումների: Չինական ղեկավարության այդ դավադիր քաղաքականությունը, անշուշտ, լուրջ վտանգ է համաշխարհային ռևոլյուցիոն շարժման, խաղաղությունը պաշտպանելու և ամրապնդելու գործի համար:

Վերոհիշյալ հանգամանքները հույժ կարևորություն են տալիս ռևոլյուցիոն շարժման ակտուալ խնդիրների կոլեկտիվ քննարկման նպատակով կոմունիստական և բանվորական պարտիաների միջազգային խորհրդակցության հրավիրմանը: Համաշխարհային կոմունիստական շարժումը համախմբելու անսահման հոգատարությամբ է տոգորված Սովետական Միության կոմունիստական պարտիայի քաղաքականությունը, որը պաշտպանություն է գտնում կոմունիստական ու բանվորական պարտիաների մեծ մասի կողմից:

Համառոտեն հաղթահարելով իր ճանապարհին հանդիպող դժվարությունները, միջազգային կոմունիստական շարժումը որպես արդիականության ամենահզոր ազդեցիկ քաղաքական ուժը, առաջիկայում ևս կաճի, իր դրոշի տակ համախմբելով ամբողջ առաջավոր մարդկությունը:

Ռ. ՇԱԽԿՈՒԼՅԱՆ

# ՔԻՄԻԱՆ ԵՎ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

*Քիմիայի, որպես գիտության, քիմիական արդյունաբերության և տեխնոլոգիայի փայլուն հաջողությունները վերջին տարիների ընթացքում մեծ չափով բարձրացրին նրա դերն ու նշանակությունը էկոնոմիկայում։*

*«Քիմիական արդյունաբերությունն այժմ ժողովրդական տնտեսության զարգացման ասպարեզում առաջին պլանի վրա է դրվում,— ասված է ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1963 թ.) պլենումի որոշման մեջ,— որովհետև քիմիական նյութերի կիրառումը արմատական որակական վերափոխություններ է առաջացնում նյութական արտադրության առաջատար ճյուղերում»։*

*Արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության մեջ օրավուր ավելի ու ավելի մեծ մասշտաբներով է կիրառվում քիմիան։ Այդ տանում է դեպի հանրային արտադրության հետագա կատարելագործում և ընդլայնում, փոփոխում է նրա կառուցվածքը՝ զարգացնելով առավել արդյունավետ ճյուղերը։*

*Հանրային արտադրության համարյա բոլոր ճյուղերում արտադրողական ուժերի զարգացումն անհնար կլինի առանց քիմիական արտադրանքի կիրառման։ Այդ պատճառով էլ ՍՄԿԿ Կենտկոմն անհետաձգելի խնդիր համարեց 1964—1970 թվականներին լայն ասպարեզ տալ քիմիական արդյունաբերության զարգացմանը և դրա հիման վրա ավելացնել նյութական արժեքների արտադրությունը ո՛չ միայն արդյունաբերության, այլև գյուղատնտեսության մեջ։*

*Հայտնի է, որ արդյունաբերության համեմատությամբ գյուղատնտեսության հնարավորությունները սահմանափակ են, ուստի և նրա արտադրության աճն ու զարգացումը ետ են մնում արդյունաբերականից։ Եթե հաշվի չառնենք բնա-կլիմայական պայմանները (բարենպաստ կամ անբարենպաստ), ապա գյուղատնտեսության ետ մնալը անմիջական արդյունքն է նրա արտադրողական ուժերի զարգացման դեռևս ցածր մակարդակի։ Արդյունաբերության արտադրողական ուժերի զարգացման բարձր մակարդակը հնարավորություն տվեց վերջին տասնամյակում (1953—1963 թթ.) համախառն արտադրանքն ավելացնել 2,7 անգամ, մինչդեռ գյուղատնտեսական արտադրության մեջ համախառն արտադրանքը չի ավելացել նույնիսկ երկու անգամ։*

*Գյուղատնտեսական արտադրության այդպիսի աճը չի կարող բավարարել գյուղատնտեսական մթերքների նկատմամբ մեր երկրի բնակչության աճող պահանջմունքները։ Դրա հետ միասին արագ աճում է նաև բնակչությունը։ Այսպես, եթե 1964 թվականի սկզբում մեր երկրի բնակչությունը 226 միլիոն էր, ապա,*



*Կենտրոնական վիճակագրական վարչության հաշվումներով, 1970 թվականի վերջում այն կկազմի մոտ 250 միլիոն, իսկ 1980 թ. վերջում՝ 280 միլիոն մարդ։ Գյուղատնտեսական արտադրանքը պետք է ավելացնել այն չափով, որ գերազանցվի պահանջմունքների բավարարման ներկայիս մակարդակը։ Հետագայում շատ ավելի կմեծանա գյուղատնտեսական արտադրանքի նկատմամբ ամեն մի շնչին ընկնող պահանջմունքը։ Հետևաբար, գյուղատնտեսությունը պետք է զարգանա այնպիսի տեմպերով, որը հնարավորություն ընձեռի իրոք գերազանցելու յուրաքանչյուր շնչին ընկնող գյուղատնտեսական արտադրանքի սպառման ներկայիս մակարդակը։*

*ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1963 թ.) պլենումը նշեց, որ մեր երկրի բնակչության՝ պարենային ապրանքների պահանջմունքները բավարարելու համար 1970 թվականին պետք է արտադրվի 14—16 միլիարդ փութ հացահատիկ, 20—25 միլիոն տոննա շաքար և այլն։ Այստեղից էլ անհրաժեշտ է գյուղատնտեսական արտադրությունը վարել առավել պրոգրեսիվ մեթոդներով։*

*ՍՄԿԿ Կենտկոմը գյուղատնտեսության զարգացման գլխավոր ուղին համարեց նրա ինտենսիվացումը, որը աշխատատար պրոցեսների մեքենայացման, ոռոգման սիստեմի ընդլայնման հետ մեկտեղ պահանջում է գյուղատնտեսության մեջ քիմիայի ամենալայն կիրառում։*

*Մեքենայացման հետ միասին քիմիայի և քիմիական մեթոդների ներդրումը ռևոլյուցիա է գյուղատնտեսության զարգացման գործում, որը պայմաններ է ստեղծում աշխատանքի ամենաբարձր արտադրողականության համար։*

*Օգտագործելով գյուղատնտեսության քիմիացման ընձեռած մեծ հնարավորությունները, կարելի է զգալիորեն նվազեցնել գյուղատնտեսության կախվածությունը բնության քմահաճույքներից և ուզած եղանակին երաշխիք ունենալ ստանալու այնպիսի բերք, որը կապահովի հացահատիկի, մսի, կաթի և հողագործական մյուս կուլտուրաների նկատմամբ երկրի պահանջը։ Քիմիական պարարտանյութերի կիրառումը, հատկապես սակավաբերրի հողերի մեջ, վճռական նշանակություն ունի հողի կառուցվածքը և պտղաբերությունը բարձրացնելու գործում։ Քիմիական միջամտությունը գյուղատնտեսական բույսերի կյանքում ունի աշխատանքի արտադրողականության բարձրացման և գյուղատնտեսական արտադրանքի ավելացման մեծ ռեզերվներ։ Աճման քիմիական խթանիչները շատացնում են կանաչ զանգվածը և նպաստում բույսի զարգացումն արագացնելուն։*

*Քիմիական պրեպարատները հեշտացնում են գյուղատնտեսության վնասատուների և մոլախոտերի դեմ մղվող պայքարը. դրանք կիրառվում են տեխնիկական կուլտուրաների բերքահավաքի ընթացքում, նպաստում հավաքված բերքի պահպանմանը և անասունների գլխաքանակի ավելացմանը։ Բարձր բերք է ստացվում մեծ մասշտաբներով զանազան քիմիական պարարտանյութեր կիրառելիս։ Մուտք գործելով գյուղատնտեսական արտադրության մեջ, քիմիական նյութերը փոխում են հողի կառուցվածքը և հողագործական կուլտուրաների աճման պրոցեսները։ Այստեղ ևս քիմիան տիրաբար ուղղություն է տալիս բնության մեջ մարդուն «չենթարկվող» մասի աճմանն ու զարգացմանը։*

*Գյուղատնտեսության արդյունավետ քիմիացման համար անհրաժեշտ է արագ զարգացնել քիմիացման նյութական հիմքը՝ քիմիական արդյունաբերությունը։ 1964—1970 թվականներին քիմիական արդյունաբերության ճյուղերի զարգացման համար կներդրվի 42 միլիարդ ռուբլի, որից գյուղատնտեսության*

քիմիացման վրա կծախսվի 10,5 միլիարդը, այսինքն՝ նույնքան, որքան նախատեսված էր 1959—1965 թվականներին ամբողջ քիմիական արդյունաբերության զարգացման համար։ Այդ գումարի կեսից ավելին կծախսվի քիմիական պարարտանյութեր արտադրող նոր գործարաններ կառուցելու և արդեն գործող օբյեկտներն ընդլայնելու վրա, որովհետև քիմիական պարարտանյութերը գյուղատնտեսության վերելքի հիմքերի հիմքն են։

Անվիճելի է քիմիական պարարտանյութերի դերը գյուղատնտեսության ինտենսիվացման գործում։ Սակայն մեր գյուղատնտեսության մեջ մինչև վերջերս դրանք լայն չափերով չէին կիրառվում։ 1953 թվականին երկրի հողագործության ամբողջ մշակվող տարածության համար արտադրվում էր ընդամենը 7 միլիոն տոննա հանքային պարարտանյութ։

Հացահատիկային կուլտուրաների բերքատվության համեմատաբար ցածր մակարդակը մեզ մոտ բացատրվում է նաև նրանով, որ մինչև վերջին ժամանակներս քիմիական պարարտանյութերը հիմնականում (70—80 տոկոսը) տրվում էին տեխնիկական կուլտուրաներին։ Նույնիսկ համեմատաբար մոտիկ անցյալում՝ 1957 թվականին, հանքային պարարտանյութերի սպառման ընդհանուր քանակից հացահատիկային կուլտուրաներին բաժին էր ընկնում 19,2 տոկոսը (յուրաքանչյուր հեկտարին միջին հաշվով 2—2,5 կգ.) և այդ այն դեպքում, երբ մի շարք կապիտալիստական երկրներում հացահատիկային կուլտուրաների յուրաքանչյուր հեկտարին տրվում է հարյուրավոր կիլոգրամ հանքային պարարտանյութ, որով հեկտարից միջին հաշվով ապահովվում է 28—30 ցենտներ բերք։

ԱՄՆ-ում զգալի քանակությամբ քիմիական պարարտանյութեր են տրվում եգիպտացորենին։ 1962 թվականին եգիպտացորենի ընդհանուր ցանքատարածությունները ԱՄՆ-ում կազմել են 23,7, ՍՍՌՄ-ում՝ 37,4 միլիոն հեկտար, իսկ բերք է հավաքվել համապատասխանորեն 92,6 և 23,6 միլիոն տոննա։ ՍՍՌՄ-ում այդպիսի ցածր բերքատվությունը հետևանք է այն բանի, որ 1962 թվականին մեկ հեկտար վարելահողին ընկնում էր 62 կգ. պարարտանյութ, մինչդեռ ԱՄՆ-ում 229 կգ.։ Հանքային պարարտանյութերի փոքր չափերով օգտագործումը հնարավորություն չտվեց նույնիսկ ամենաբերքատու տարիներին հացահատիկային կուլտուրաների հեկտարից միջին հաշվով 11 ցենտներից ավելի բերք ստանալու։

Այլ է պատկերը տեխնիկական կուլտուրաների և, հատկապես, բամբակի մշակության գործում, որտեղ լայնորեն կիրառվում են պարարտանյութերը։ Այսպես, 1961 թվականին մեկ հեկտարից բամբակի թելիկի միջին բերքատվությունը ՍՍՌՄ-ում կազմել է 6,7, ԱՄՆ-ում՝ 4,9, Հնդկաստանում՝ 1,2, Բրազիլիայում՝ 1,6 ցենտներ և այլն։ Թվերը պարզ ցույց են տալիս, որ հարկ եղած չափերով հանքային պարարտանյութեր օգտագործելու շնորհիվ ՍՍՌՄ-ում բամբակյա թելիկի ավելի բարձր բերք է ստացվել, քան նշված կապիտալիստական երկրներում։

ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1963 թ.) պլենումի որոշման մեջ սահմանված է, որ 1970 թվականին գյուղատնտեսության պահանջմունքների բավարարման համար պետք է արտադրվի 80 միլիոն տոննա հանքային պարարտանյութ։ Ընդ որում խիստ կփոփոխվի զանազան կուլտուրաներին տրվող պարարտանյութերի բաշխման չափը։ 80 միլիոն տոննա պարարտանյութերից 32 միլիոնը կտրվի տեխնիկական, բանջարանոցային, կերային կուլտուրաներին



և կարտոֆիլին, իսկ 45 միլիոնը, այսինքն՝ ավելի քան 56 տոկոսը, հացահատիկային կուլտուրաներին։ Արդեն 1964 թվականին հանքային պարարտանյութերի մոտավորապես մեկ երկրորդը (7 միլիոն տոննա) օգտագործվել է հացահատիկային կուլտուրաների ցանքերի համար։ Սակայն հացահատիկային կուլտուրաներին տրվող պարարտանյութերի ավելացումը չի նշանակում, որ պետք է պակասեցվի տեխնիկական կուլտուրաների ցանքերին տրվող պարարտանյութերի չափը։ Այսպես, եթե 1957 թվականին տեխնիկական կուլտուրաների համար օգտագործվել է 7—8 միլիոն տոննա հանքային պարարտանյութ, ապա 1970 թվականին կօգտագործվի 4 անգամ ավելի։

Հաշվումները ցույց են տալիս, որ 80 միլիոն տոննա պարարտանյութերի օգտագործումը հավասարազոր է 160 միլիոն հեկտար մշակվող նոր հողատարածության։ Ահա թե ինչի կհասցնի գյուղատնտեսության մեջ խոշոր մասշտաբներով պարարտանյութերի կիրառումը։

Բայց մեծ քանակությամբ պարարտանյութերի ռացիոնալ օգտագործումը պայմանավորված է մի շարք հանգամանքներով։ Հողը քիմիացնելու և ամենաբարձր տնտեսական արդյունք ստանալու համար պետք է հաշվի առնվեն հողի մեջ գտնվող և լրացուցիչ տրվող օրգանական նյութերի քանակն ու որակը. գոմաղբի օգտագործման անհրաժեշտ չափը, բույսերին տրվող հանքային պարարտանյութերի քանակը և այլն։

Տնտեսական մեծ արդյունք են տալիս խտացված և գրանուլացված (հատիկացված) պարարտանյութերը։ Գրանուլացված պարարտանյութերը փոշեձևերի նկատմամբ ունեն ֆիզիկական և ագրոտեխնիկական առավելություններ։ Հողի հետ ունեցած փոքր շփման մակերեսի շնորհիվ դրանք քիչ են ռեակցիայի մեջ մտնում հողի հետ, հողից չեն ամրանում, այնքան դեգրադացիայի չեն ենթարկվում, ինչպես սուպերֆոսֆատի նման մի քանի փոշեձև պարարտանյութերը։ Ակադեմիկոս Տ. Դ. Լիսենկոյի հաշվումների համաձայն, մեկ հեկտարին տրված 50 կգ. գրանուլացված սուպերֆոսֆատը տալիս է բերքատվության նույնքան հավելում, որքան 2—3 ցենտներ չգրանուլացված սուպերֆոսֆատը։

Քիմիայի և քիմիական արդյունաբերության զարգացմանը զուգընթաց կավելանա խտացրած և գրանուլացված պարարտանյութերի արտադրությունը և հնարավոր կլինի դրանք լայն չափերով օգտագործել ո՛չ միայն հացահատիկի, այլև խոտերի, կերաբույսերի և այլ կուլտուրաների աճեցման համար։

Քիմիական պարարտանյութերից բացի գյուղատնտեսական արտադրության զարգացման գործում մեծ դեր են կատարում թունանյութերը, հերբիցիդներն ու գյուղատնտեսական վնասատուներից բույսերի պաշտպանության այլ միջոցները։

Խոշոր նշանակություն տալով այդ միջոցներին՝ ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1963 թ.) պլենումն ընդունեց հերբիցիդների և բույսերի պաշտպանության մյուս միջոցների արտադրությունը ևս մեծ չափով ավելացնելու ծրագիր, ըստ որի առաջիկա յոթ տարում դրանց տարեկան արտադրանքը կհասնի 800—900 հազար տոննայի։

Խոշոր մասշտաբներով հերբիցիդների կիրառումը հնարավորություն է տալիս 15—20 անգամ կրճատելու քաղհանի վրա ծախսվող աշխատանքը, միաժամանակ 1—2 ցենտներով բարձրացնելով հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը։

Գյուղատնտեսական վնասատուներից երկիրը տարեկան կրում է հարյուրավոր միլիոն ռուբլու հասնող արտադրանքի կորուստ։ Այսպես, շաքարի ճակնդեղի վնասատուներից, գլխավորապես ճակնդեղի երկարակնճիթից, մեր երկրում մինչև վերջերս տարեկան կորչում էր միջին հաշվով 3270 հազար տոննա ճակնդեղ։ Միայն 1956 թվականին բամբակենու հիվանդությունների ու վնասատուների պատճառով կորուստները հասան մոտ 150 միլիոն ռուբլու։

Բազմամյա փորձերով հաստատված է, որ բույսերի պաշտպանության քիմիական միջոցների վրա կատարված մեկ ռուբլի ծախսը միջին հաշվով պահպանում է 11 ռուբլու բերք, իսկ առանձին տեխնիկական կուլտուրաներինը և պտուղներինը՝ ավելի քան 100 ռուբլու բերք։

Քիմիայի մուտքը անասնապահության մեջ ի հայտ է բերում խոշոր և մանր եղջերավոր անասունների մթերատվությունը բարձրացնելու նոր ռեզերվներ։ Քիմիական արդյունաբերության արտադրանքն օգտագործվում է հիմնականում որպես անասունների պրոտեինային և հանքային սնուցման աղբյուր։

Կերաբույսերի քիմիացումը ավելացնում է անասունների քաշը և գլխաքանակը։ Կուբանի գյուղատնտեսական և Կրասնոդարի անասնապահության գիտա-հետազոտական ինստիտուտների փորձերը ցույց են տվել, որ 8—10 ամսական հորթերից յուրաքանչյուրի օրական կերաբաժնին 40 գրամ կարբամիդ ավելացնելով, այդ նյութի յուրաքանչյուր կիլոգրամի դիմաց ստացվում է 2—2,5 կիլոգրամ լրացուցիչ քաշաճ։

Անասուններին սովորական ֆոսֆորային խառնուրդով, ոսկրի ալյուրով կերակրելու հետ միաժամանակ այժմ օգտագործվում են երկկալցիումային ֆոսֆոր պարունակող կերանյութեր։ Լուրջ ուշադրություն է նվիրվում անասունների օրական կերաբաժինը բավարար չափով ֆոսֆորով լրացնելուն։ Մեծ քանակությամբ կոշտ կերից կազմված օրական կերաբաժիններում խիստ սահմանափակ է ֆոսֆորը և կենդանիներին այն հատկապես չի բավականացնում մսուրային խնամքի ընթացքում։

Շատ շրջաններում զգացվում է մի շարք հանքային տարրերի՝ մանգանիումի, մանգանի, պղնձի, երկաթի պակաս։ Քիմիան թողարկում է նշված տարրերի միկրոսկոպիկ պարունակությամբ աղեր այն շրջանների անասունների համար, որտեղ կերի մեջ այդ տարրերը չկան։

Մեծ արդյունք է տալիս մսատու անասունների օրական կերաբաժիններում հակաբիոտիկների կիրառումը, որը կանխում է անասունների զանազան հիվանդությունները։

Գյուղատնտեսական արտադրության զարգացման մեջ քիմիայի և քիմիական արդյունաբերության դերը չի սահմանափակվում քիմիական նյութերի մատակարարմամբ։ Այժմ քիմիան ստանձնում է այնպիսի ֆունկցիաներ, որոնք մինչև վերջերս գյուղատնտեսության բացարձակ մենաշնորհն էին։ Արդեն ստեղծվում է կոմբինացված կերի հզոր արդյունաբերություն, որն օգտագործում է քիմիական (հանքային նյութեր, միզանյութ և այլն), դեղագործական արդյունաբերության արտադրանքը (հակաբիոտիկներ, հորմոնային պրեպարատներ)։

Քիմիական արդյունաբերության, նոր տեխնիկայի հաջողությունները հասցրին հիդրոպոնիկայի՝ ինդուստրիալ բուսաբուծության այդ նոր ճյուղի ծագմանն ու զարգացմանը, ընդ որում բանջարեղենը, ծաղիկները և նույնիսկ միրգը (խաղողը) արտադրվում են առանց հողի, քիմիական սննդանյութերի



կիրառման միջոցով։ Այստեղից հետևում է, որ գյուղատնտեսության մեջ արտադրության ինդուստրիալ մեթոդների ներդրումը արտադրական շատ պրոցեսների տալիս է արդյունաբերական բնույթ, որն արդեն պրոգրեսիվ երևույթ է։ Քիմիական արդյունաբերության շնորհիվ մեծանում է գյուղատնտեսության արտադրական պոտենցիալը, որը մոտ ապագայում լրիվին կապահովի գյուղատնտեսական մթերքների նկատմամբ բնակչության և երկրի պահանջմունքները։



Այժմ, երբ ՍՄԿՊ Կենտկոմը ծրագրել է քիմիական արդյունաբերության արագ զարգացումը և դրա հիման վրա հարց է դրել լրիվ բավարարել երկրի գյուղատնտեսական մթերքների պահանջը, ավելի է բարձրանում ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության, որպես մեր երկրի մեծ քիմիայի զարգացած օղակներից մեկի, դերը։

Նախատեսվում է Հայաստանում, 1962 թվականի համեմատությամբ, 1970 թվականին արտադրել հացահատիկ՝ 1,5 անգամ, բանջարեղեն՝ 2,2 (350 հազար տոննա), խաղող՝ 1,8 (330 հազար տոննա), պտուղներ՝ 3,1 (144 հազար տոննա), միս՝ 1,9, կաթ՝ 1,8, բուրդ՝ 1,4, ձու՝ 3 անգամ ավելի և այլն։ Այդպիսի ցուցանիշներ նվաճելու համար պետք է հողագործությունը և անասնապահությունը վարել արդիական մեթոդներով։

Ինչպես հայտնի է, ռեսպուբլիկայի մշակվող հողային ֆոնդը մոտ 600 հազար հեկտար է, որի անբավարար կառուցվածքը և կլիմայական պայմանները հնարավորություն չեն տալիս զարգացնելու գյուղատնտեսության բոլոր ճյուղերը։ Ուստի, նպատակահարմար է ռեսպուբլիկայի տարբեր շրջաններում հատուկ ուշադրություն դարձնել այն կուլտուրաների վրա, որոնք տալիս են ամենամեծ տնտեսական արդյունքը։ «Առաջնությունը պետք է տրվի բերքին։ Այն կուլտուրան, որը որոշակի գոտու պայմաններում առավել բարձր բերք է տալիս, ավելի լավ է փոխհատուցում ներդրված աշխատանքը, տնտեսությունում հենց այն էլ պետք է լինի առաջին կուլտուրան» (Խրուշչով)։

Մեր ռեսպուբլիկայում 1970 թվականին հանքային պարարտանյութերի արտադրությունը, 1963 թվականի համեմատությամբ, կավելանա 4,5 անգամ, տարեկան կարտադրվի մոտ մեկ միլիոն տոննա։ Սակայն հանքային պարարտանյութերի արտադրությունը ո՛չ միայն քանակապես կաճի, այլև կկրի որակական փոփոխություններ։ Բանն այն է, ո՛ր այժմ երկրում արտադրվող հանքային պարարտանյութերը պարունակում են միայն 20—25 տոկոս սննդատու նյութեր, իսկ մնացածը ոչ պիտանի, նույնիսկ վնասակար բալաստ է։

Ներկայումս ռեսպուբլիկայում արտադրվում են պարզ, միակողմանի հանքային պարարտանյութեր՝ ամոնիակային սելիտրա և սուպերֆոսֆատ։ Սուպերֆոսֆատի սննդատու նյութերը կազմում են 14—19 տոկոս։ Հողը վատ է յուրացնում պարզ պարարտանյութերը, և դրանք չեն տալիս ցանկացած արդյունքը։ Ուստի պետք է վերափոխել պարզ քիմիական պարարտանյութեր արտադրող օբյեկտները, որպեսզի նրանք թողարկեն բարդ, բարձր խտությամբ պարարտանյութեր։ Հայաստանում նպատակահարմար է կազմակերպել միզանյութի արտադրությունը, որը խտացված ազոտային պարարտանյութ է և պարունակում է 46 տոկոս օգտակար սննդանյութեր։ Միզանյութը կարող է

արդյունավետ օգտագործվել ո՛չ միայն բուսաբուծության, այլև անասնապահության մեջ, որպես արժեքավոր հանքային լրացուցիչ կեր։

Քիմիական նյութերի գործադրման շնորհիվ հնարավորություն է ստեղծվում յուրացնելու Արարատյան դաշտավայրի աղակալած հողերը, որն ավելի քան 30 հազար հեկտար է։ Սոդայական աղուտները ծծմբական թթվով ողողելուց հետո կարելի է ստանալ գյուղատնտեսական կուլտուրաների բարձր բերք։

Հայկական ՍՍՌ գյուղատնտեսական մթերքների արտադրության ու մթերումների մինիստրության հողագիտության և ագրոքիմիայի գիտահետազոտական ինստիտուտի մշակած մեթոդով հողերի թթվեցման միջոցով աղազերծված հողերում գրեթե բոլոր կուլտուրաներից ստացվում է բարձր բերք։ Ծծմբական թթվի միջոցով իրացվելուց հետո ստորերկրյա ջրերի օգտագործմամբ այդ հողերը հնարավորություն կտան ստանալու եթերաձիթատու կուլտուրաների, բանջարեղենի, խաղողի բարձր բերք։

Քիմիայի լայն կիրառումը գյուղատնտեսության մեջ մեկ անգամ ևս ապացուցում է Մալթուսի և արդի մալթուսականների «թեորիաների» անհիմն ու անհեթեթ լինելը։ «Հողի նվազող բերրիության» թեորիայի հակագիտական իմաստն այն է, որ Մալթուսն ու նրա արդի հետևորդները նկատի են առնում միայն հողի բնական բերրիությունը, այսինքն՝ հողը վերցնում են կտրված մարդու աշխատանքից, որն այն մշակում, հարստացնում, փոփոխում է։ Միաժամանակ, նրանք հողի բնական բերրիությունը մեկընդմիշտ անփոփոխ բան են համարում։ Սակայն հողի այդպիսի անփոփոխ բերրիություն գոյություն չունի։ Մարդը առնչվելով հողի հետ՝ աշխատանք է թափում, մշակում է հողը, օգտագործում գիտության ու տեխնիկայի ժամանակակից նվաճումները, այդ թվում և քիմիական պարարտանյութերը, որոնք հսկայական փոփոխությունների ենթարկելով հողը՝ բարձրացնում են նրա արգասավորությունը։

Կարլ Մարքսը, քննադատելով «հողի նվազող բերրիության» թեորիան, նշում էր, որ թեպետ բերրիությունը հողի օբյեկտիվ հատկությունն է, բայց տնտեսական տեսակետից բերրիությունն այդուհանդերձ ենթադրում է որոշակի մի հարաբերություն՝ արտադրողական ուժերի զարգացման տվյալ մակարդակի և, առաջին հերթին, հողագործական քիմիայի և մեխանիկայի նկատմամբ ունեցած հարաբերությունը։

Քիմիացման միջոցով հասարակությունը շարունակում է ազդել բնության վրա, փոփոխելով, իրեն ծառայեցնելով այն, ձգտում է լիովին ապահովել իր հոգեկան և նյութական պահանջմունքները։



Մ. ԽԱՐԱՋՅԱՆ

# ԼԵՆԻՆԻ ՊԱՅՔԱՐԸ «ՁԱԽ» ԴՈԳՄԱՏԻԶՄԻ ԴԵՄ ԲՐԵՍՏԻ ՀԱՇՏՈՒԹՅԱՆ ԿՆՔՄԱՆ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ

«Ձախ» դոգմատիզմի դեմ կոմունիստական պարտիայի, նրա առաջնորդ Վ. Ի. Լենինի մղած պայքարի փորձի ուսումնասիրությունն արդի պայմաններում խիստ հրատապ նշանակություն ունի՝ Չինաստանի կոմպարտիայի ղեկավարների «ուլտրառևոլյուցիոն» կոնցեպցիաների երևան գալու և դրանց աշխուժացման կապակցությամբ։ Հետապնդելով մեծապետական, հեգեմոնիստական նպատակներ, նրանք վարում են միջազգային կոմունիստական շարժումը պառակտելու գիծ։ Իրենց «ձախ» ֆրազաբանության մեջ նրանք հաճախ վկայակոչում են Վ. Ի. Լենինին, լռության մատնելով, սակայն, մանրբուրժուական ավանտյուրիզմի դեմ լենինիզմի պայքարի փորձը։

Աշխատավորների մեծ առաջնորդն իր ռևոլյուցիոն գործունեության հենց սկզբից պայքարում էր մարքսիզմի դոգմատիկ ըմբռնման դեմ։ Դեռևս 1899 թվականին նա գրում էր. «Մենք Մարքսի տեսության վրա բնավ էլ չենք նայում որպես մի ինչ-որ ավարտուն և անձեռնմխելի բանի. մենք, ընդհակառակը, համոզված ենք, որ այն դրել է միայն անկյունաքարերն այն գիտության, որը սոցիալիստները ՊԵՏՔ է առաջ շարժեն բոլոր ուղղություններով» (Երկեր, հ. 4, էջ 262)։

Խոսելով բանվորական շարժման ներսում թշնամական հոսանքների դեմ բոլշևիզմի պայքարի պատմության մասին, Վ. Ի. Լենինը նշում էր, որ բոլշևիզմը աճել, ամրապնդվել և կոփվել է գլխավորապես աջ օպորտունիզմի դեմ մղած պայքարում։ Միևնույն ժամանակ նա ընդգծում էր, որ բոլշևիզմի հաստատումը տեղի էր ունենում «երկարամյա պայքար մղելով մանրբուրժուական ռևոլյուցիոնության դեմ, որը նմանվում է անարխիզմին կամ որոշ բան նրանից փոխ է առնում, որն ամեն մի էական բանում նահանջում է պրոլետարական տոկուն դասակարգային պայքարի պայմաններից ու պահանջներից»։ (Երկեր, հ. 31, էջ 18—19)։

««Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ» գրքում Վ. Ի. Լենինը բերում է երկու դեպք, երբ «ձախ» թեքումների դեմ բոլշևիկների պայքարն առանձնապես սուր բնույթ էր ստացել. 1908 թվականին ռեակցիոն բուրժուական պառլամենտին բոլշևիկ պատվիրակների մասնակցության նպատակահարմարության հարցում և 1918 թվականին՝ Բրեստի հաշտության կնքման հարցում։

1918 թվականին, երբ կենսականորեն անհրաժեշտ էր, որ երիտասարդ սովետական ռեսպուբլիկան, ինքնապահպանման շահերից ելնելով, հաշտություն կնքեր Գերմանիայի հետ և դուրս գար իմպերիալիստական պատերազմից, պարտիայի մեջ աշխուժացան «ձախ», ավանտյուրիստական տարրերը, որոնք առաջ քաշեցին կայզերական Գերմանիայի դեմ «ռևոլյուցիոն պատերազմ» մղելու պահանջը։ Պարտիայի մեջ սուր պայքար ծավալվեց։

«Ձախ կոմունիստները» Բուխարինի, Լոմովի (Օպպոկովի), Օսինսկու (Օբոլենսկու) և ուրիշների գլխավորությամբ, Տրոցկու հետ միասին, հակառակ Գերմանիայի հետ հաշտություն ստորագրելու անհրաժեշտության լենինյան տեսակետի, պնդում էին, թե հաշտություն կնքելը նշանակում է հեռանալ ինտերնացիոնալիզմից։ «Ձախ կոմունիստների» և Տրոցկու դիրքավորումը բխում էր նրանից, որ նրանք չէին հավատում մեկ երկրում սոցիալիզմի հաղթանակի հնարավորությանը։ Նրանք գտնում էին, որ սովետական իշխանությանը կարող է փրկել միայն Արևմուտքում սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակը, որն «առաջ մղելու» համար անհրաժեշտ է ռևոլյուցիոն պատերազմ։ Այլ խոսքով, նրանք գերի էին դոգմատիզմին, խճճվելով նոր իրադրության մեջ, չկարողացան մարքսիզմի տեսական դրույթները կիրառել փոփոխված պայմանների համեմատ։

Բացահայտելով այդ «ձախ» հիվանդության սոցիալական արմատները, Լենինը նշում է, որ դրանք մանրբուրժուական տարրերի մեջ են։ Մանր տնտեսատերը, մանր բուրժուան, Վ. Ի. Լենինի բնորոշմամբ, հեշտությամբ մի ծայրահեղությունից գլորվում է մյուսը, «ծայրահեղ ռևոլյուցիոնությունից» անցնելով ծայրահեղ ռեակցիոնության։ Նա ընդունակ չէ կայունության, կազմակերպվածության, կարգապահության, տոկունության։ Լենինը ցույց տվեց, որ ռևոլյուցիոն ֆրազի հիվանդությամբ ռևոլյուցիոն պարտիաները հաճախ բռնըվում են այն ժամանակ, երբ նրանք իրագործում են պրոլետարական ու մանրբուրժուական տարրերի կապը, և երբ ռևոլյուցիոն իրադարձությունների ընթացքում կտրուկ և արագ շրջադարձեր են առաջանում։

«Ձախ» օպոզիցիայի դեմ մղված պայքարում Վ. Ի. Լենինը տվեց մարքսիզմի ստեղծագործական զարգացման փայլուն օրինակ։ Նա ակնառու կերպով ցույց տվեց, թե ինչպես պետք է գործնականորեն կիրառել մարքսիստական այն դրույթը, որ ռևոլյուցիոն պարտիայի տակտիկան մշակելիս անհրաժեշտ է առաջնորդվել ոչ թե վերացական դրույթներով, այլ ռևոլյուցիոն նպատակահարմարությամբ, հաշվի առնել օբյեկտիվ իրադրությունը, դասակարգային ուժերի հարաբերակցությունը և մասսաների տրամադրությունը։ «Ամեն մի վերացական ճշմարտություն դառնում է ֆրազ, եթե այն գործադրենք ամեն մի կոնկրետ դրության նկատմամբ»,— գրում է նա (Երկեր, հ. 27, էջ 58)։

Լենինը նշում էր, որ մարքսիզմը հավերժ կենդանի, ստեղծագործական ուսմունք է, որը պահանջում է անշեղ հավատարմություն սկզբունքներին, բայց որը չի ճանաչում ոչ մի շաբլոն և դոգմա։ «Մարքսիստը,— գրում էր նա,— պետք է հաշվի առնի կենդանի կյանքը, իրականության ճշգրիտ փաստերը, և ոչ թե շարունակի կառչել երեկվա տեսությանը, որը, ինչպես և ամեն մի տեսություն, լավագույն դեպքում միայն նշում է հիմնականը, ընդհանուրը, միայն մոտենում է կյանքի բարդությունն ընդգրկելուն» (Երկեր, հ. 24, էջ 33)։

Վ. Ի. Լենինը ջախջախեց «ձախ կոմունիստների» այն անհեթեթ դրույթը, որ պրոլետարական պետությանն սկզբունքորեն անթույլատրելի են համաձայ-



նությունները իմպերիալիստների հետ։ Բրեստի հաշտության ստորագրման հակառակորդներն ըստ էության հանդես էին գալիս խաղաղ գոյակցության հնարավորության դեմ։ Ծաղրելով նրանց, Լենինը գրում էր, որ «Այսպիսի հայացքների տեսակետից՝ իմպերիալիստական տերությունների շրջապատում սոցիալիստական ռեսպուբլիկան չէր կարող տնտեսական որևէ պայմանագիր կնքել, չէր կարող գոյություն պահպանել, չթռչելով լուսնի վրա»։

Միայն Վ. Ի. Լենինի խորաթափանցությունը, իրադրությունը գնահատելու նրա մեծ կարողությունը, հաստատակամությունն ու կրքոտությունը օրհասական պահին սովետական երկիրը փրկեցին մահացու վտանգից։ «Ձախերի» դեմ մղված պայքարում Վ. Ի. Լենինի հաղթանակը հանդիսացավ մարքսիստական մտքի հաղթանակը կեղծ-ռևոլյուցիոն ճղճղան ֆրազաբանության նկատմամբ, ստեղծագործական մարքսիզմի հաղթանակը դոգմատիզմի նկատմամբ։



Հաշտության կնքումը և պատերազմից Ռուսաստանի դուրս գալը, ինչպես հայտնի է, պարտիայի քաղաքականության ամենագլխավոր հարցն էր՝ սովետական պետության գոյության առաջին ամիսներին։ Վ. Ի. Լենինի, բոլոր լենինյանների համար պարզ էր, որ այն իրադրության մեջ, երբ երկրում տիրում է տնտեսական ահավոր քայքայում, երբ հին բանակը կազմալուծվում է, իսկ նորը դեռ չի ստեղծված, երբ ժողովրդական մասսաները հոգնել են պատերազմից, պատերազմը շարունակել՝ կնշանակի սպառնալիքի տակ դնել սովետական իշխանության բուն գոյությունը։ Սովետական պետության պահպանման շահերը հաստատակամորեն պահանջում էին հաշտություն կնքել նույնիսկ ամենածանր պայմաններով։

Սովետական իշխանության թշնամիները, սկսած մենշևիկներից և էսեռներից մինչև ամենամոլի սպիտակգվարդիականները կատաղի պայքար էին մղում հաշտություն ստորագրելու դեմ։ Չարաշահելով ժողովրդի հայրենասիրական զգացումները, նրանք հանդես էին գալիս պատերազմը շարունակելու օգտին, այդպիսով հույս ունենալով գերմանական իմպերիալիստների սվիններով ոչնչացնել բանվորա-գյուղացիական իշխանությունը։ Դրությունն ավելի էր վատթարանում նրանով, որ հենց պարտիայի ներսում կային մարդիկ, որոնք համաձայն չէին սեպարատ հաշտություն կնքելուն։ Միայն Վ. Ի. Լենինի մեծագույն կայունությունն ու հաստատակամությունը կարող էր պարտիական կադրերին ապացուցել, որ անհրաժեշտ է ընդունել հաշտության ծանր պայմանները՝ դադար առնելու համար։

Հաշտություն ստորագրելու անհրաժեշտությունը Վ. Ի. Լենինը հիմնավորեց «Սեպարատ և անեքսիոնիստական հաշտության անհապաղ կնքման հարցի վերաբերյալ թեզիսներում», որոնք գրվել են 1918 թվականի հունվարի 20-ին։ Դրանցում Լենինը տվել է Սովետական ռեսպուբլիկայի ներքին ու միջազգային դրության մարքսիստական խոր վերլուծությունը, ապացուցել է Գերմանիայի հետ հաշտություն ստորագրելու անհրաժեշտությունը։

Մերկացնելով հաշտություն կնքելու հակառակորդների այն անհեթեթ փաստարկը, թե սեպարատ հաշտությունն, իբր, նշանակում է կապերի խզում պրոլետարական ինտերնացիոնալիզմի հիմնական սկզբունքներից, Լենինը նշում

էր. «...այդ փաստարկն ակներև սխալ է: Գործադուլը տանուլ տվող բանվորները, ստորագրելով աշխատանքը վերսկսելու՝ իրենց համար ոչ ձեռնտու, կապիտալիստների համար ձեռնտու պայմանները, չեն դավաճանում սոցիալիզմին: Սոցիալիզմին դավաճանում են միայն նրանք, ովքեր բանվորների մի մասի օգուտները փոխանակում են կապիտալիստների օգուտների հետ, միայն այդպիսի համաձայնությունններն սկզբունքով անթույլատրելի են»:

Սովետական կառավարությունը, նշում էր Լենինը, հարկադրված է համաձայնել այդ հաշտությանը, քանի որ Սովետական ռեսպուբլիկան ուժեր չունի ռևոլյուցիոն պատերազմ սկսելու գերմանական իմպերիալիզմի դեմ: Դրա համար մենք չունենք բանակ, իսկ գյուղացիությունը այդ պատերազմը չի պաշտպանի. ինչ վերաբերում է այն մեղադրանքին, թե սովետական կառավարությունը, հաշտություն կնքելով Գերմանիայի հետ, իբր, օգնում է առավել ռեակցիոն գերմանական իմպերիալիզմին՝ պատերազմ մղելու Անգլիայի ու Ֆրանսիայի դեմ, ապա այդ փաստարկը նույնպես սնանկ էր, քանի որ Ռուսաստանում սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի պահից բոլոր հարցերը պետք է լուծել ոչ թե այն տեսակետից, թե ո՛ր իմպերիալիզմն է լավ, այլ սոցիալիստական ռևոլյուցիայի շահերի տեսակետից:

Հունվարի 21-ին Լենինն իր «Թեզիսները» հրապարակեց Պետրոգրադի, Մոսկվայի, Ուրալի և Պովոլժիեի պարտիական աշխատողների հետ Կենտկոմի անդամների խորհրդակցությունում: Այստեղ Լենինի դեմ ելույթ ունեցան Օսինսկին, Տրոցկին, Լոմովը, Պրեոբրաժենսկին, Յակովլևան: Վերլուծելով խորհրդակցության արդյունքները, Վ. Ի. Լենինը «Անհապաղ սեպարատ և աննեքսիոնիստական հաշտություն կնքելու վերաբերյալ թեզիսների վերջաբանում» գրում էր, որ քննարկումն ի հայտ բերեց երեք կարծիք: Մասնակիցների մոտավորապես կեսն արտահայտվեց «ռևոլյուցիոն պատերազմի» օգտին, մոտավորապես քառորդը՝ «պատերազմը դադարեցնել, բանակը զորացրել, հաշտություն չստորագրել» տրոցկիստական դիրքավորման օգտին, մնացածները՝ Գերմանիայի հետ հաշտություն ստորագրելու լենինյան առաջարկի օգտին:

Պետք է նշել, որ «ձախ կոմունիստների» կեղծ-ռևոլյուցիոն ֆրազաբանությամբ կարճ ժամանակով հրապուրվեցին պարտիային նվիրված որոշ ընկերներ. այդ հանգամանքը պարտիայի մեջ լարված դրություն ստեղծեց:

1918 թվականի հունվարի 24-ին հաշտության հարցը քննարկվեց պարտիայի Կենտկոմի նիստում: Վ. Ի. Լենինն առաջարկեց անհապաղ ընդունել հաշտության գերմանական պայմանները, նախազգուշացնելով, որ պատերազմական գործողությունները վերսկսելու դեպքում գերմանացիները հարձակում կձեռնարկեն, և մենք, միևնույն է, ստիպված կլինենք հաշտություն ստորագրել ավելի ծանր պայմաններով: «...Գերմանիան,— ասում էր նա,— նոր է միայն հղի ռևոլյուցիայով, իսկ մեզ մոտ արդեն ծնվել է միանգամայն առողջ երեխա՝ սոցիալիստական ռեսպուբլիկան, որին մենք կարող ենք սպանել՝ պատերազմ սկսելով (Երկերի լիակատար ժողովածու, հ. 35, էջ 256, ռուս.):

Կենտկոմի նիստում Լենինը ո՛չ միայն հանդես եկավ հաշտության հարցի շուրջ, այլև քննադատեց իր կողմնակիցների որոշ սխալ մտքերը: Մասնավորապես իր երկրորդ ելույթում նա նշեց, որ որոշ հարցերում համաձայն չէ իր համախոհ Ստալինի հետ, որը ժխտում էր Արևմուտքում ռևոլյուցիոն շարժման առկայությունը, պնդելով, թե այդ շարժումը սոսկ պոտենցիայում է գտնվում (տե՛ս ՌՍԴԲ(բ)Պ Կենտկոմի արձանագրություններ, 1917 թ. օգոստոս, 1918 թ.



փետրվար: Մ, 1958, էջ 171 ռուս): Արևմուտքում, հայտարարեց Վ. Ի. Լենինը, կա մասսայական շարժում, բայց այնտեղ ռևոլյուցիան դեռ չի սկսվել: Սակայն, եթե այդ պատճառով մենք փոխենք մեր տակտիկան, ապա մենք կդառնանք միջազգային սոցիալիզմի դավաճաններ: Վ. Ի. Լենինի ազդեցությամբ Ստալինը հրաժարվեց իր պնդումից և Կենտկոմի հաջորդ նիստերից մեկում ճիշտ ելույթ ունեցավ:

Կենտկոմի նիստից մի քանի օր անց, 1918 թվականի հունվարի 28-ին Բուխարինը, Պյատակովը, Լոմովը, Օսինսկին, Յակովլևան, Սմիրնովը և ուրիշներ պարտիայի Կենտկոմին հայտարարություն տվեցին, պահանջելով մեկ շաբաթվա ընթացքում հրավիրել պարտիական կոնֆերանս՝ սպառնալով հեռանալ պարտիական ու սովետական բոլոր պոստերից, եթե հաշտության պայմանագիրը ստորագրվի մինչև կոնֆերանսը: Կենտկոմին համանման հայտարարություններ ուղարկեցին նաև պարտիայի Պետրոգրադի կոմիտեի գործադիր հանձնաժողովի, պարտիայի Ուրալյան մարզկոմի և պարտիայի Լիտվայի սեկցիաների կենտրոնական բյուրոյի որոշ անդամներ: Հաշտության հակառակորդներն շտապում էին օգտվել այն բանից, որ պարտիայի մի շարք տեղական ղեկավար օրգաններ ընկել էին «ձախ կոմունիստների» ձեռքը և այդ կերպ կոնֆերանսում կապահովեին իրենց մեծամասնությունը: Այն ժամանակ Լենինը նշեց, որ տվյալ պահին միայն պարտիայի համագումարի որոշումները կարող են պարտադիր լինել Կենտկոմի համար և հեղինակավոր՝ պարտիայի բոլոր անդամների համար: Կենտկոմը որոշեց 1918 թվականի մարտի 5-ին հրավիրել պարտիայի VII համագումարը:

Այդ միջոցին Բրեստ-Լիտովսկում տեղի ունեցած հաշտության բանակցությունների ժամանակ գերմանական հրամանատարությունը վերջնագիր ներկայացրեց անհապաղ աննեքսիոնիստական հաշտություն կնքելու մասին: Պայմանավորվածության և Լենինի տված դիրեկտիվին հակառակ, Տրոցկին հրաժարվեց հաշտության պայմանագիրն ստորագրելուց և հայտարարեց, որ սովետական կառավարությունը պատերազմը դադարեցնում է, հաշտություն չի ստորագրում ու շարունակում է բանակի զորացրումը: Դա դավաճանական հայտարարություն էր, որը հղի էր մահացու վտանգով Սովետական ռեսպուբլիկայի համար: Փետրվարի 16-ին բանակցություններն ընդհատվեցին, իսկ 18-ին՝ գերմանական բանակը հարձակման անցավ ռազմաճակատի ամբողջ երկարությամբ: Ռուսական հին բանակը չկարողացավ դիմագրավել գերմանական զորքերի գրոհը: Սովետական երկրի վրա կործանման սպառնալիք կախվեց:

Դեռ նախքան գերմանական հարձակումն սկսվելը՝ փետրվարի 17-ին, Լենինը պարտիայի Կենտկոմի նիստում վճռականապես պահանջեց վերսկսել հաշտության բանակցությունները: Բնորոշ է, որ այդ նիստում «ռևոլյուցիոն պատերազմի» օգտին արդեն ոչ ոք չքվեարկեց: Նույնիսկ «ձախ կոմունիստների» լիդերները ձեռնպահ մնացին: Սակայն Տրոցկու և Բուխարինին հաջողվեց Լենինի առաջարկը մերժել մեկ ձայնի մեծամասնությամբ: Փետրվարի 18-ի առավոտյան Կենտկոմի նիստը շարունակվեց: Լենինը մեծ հաստատակամությամբ շարունակում էր պնդել, որ գերմանացիներին հեռագիր ուղարկվեր և հայտնվեր, որ մենք համաձայն ենք հաշտության պայմաններին: Տրոցկիստները և «ձախ կոմունիստները» պնդում էին, թե «գերմանացին չի համարձակվի հարձակվել», քանի որ դրան կխանգարի Գերմանիայում տիրող իրադրությունը: Լենինի առաջարկը նորից մերժվեց մեկ ձայնի մեծամասնությամբ:

Նույն օրը ցերեկվա ժամը 12-ին սկսվեց գերմանացիների հարձակումը։ Կենտկոմի երեկոյան նիստում Լենինը կտրականապես դրեց հաշտություն ստորագրելու հարցը։ Բուխարինը ցինիկաբար հայտարարեց, որ իրադարձությունները ծավալվում են հենց այնպես, ինչպես կանխագուշակում էին «ձախ կոմունիստները» կամ անհապաղ կսկսվի համաշխարհային ռևոլյուցիա, կամ Ռուսաստանում սոցիալիստական ռևոլյուցիան կկործանվի։ Տրոցկին առաջարկեց՝ չհայտնելով, որ համաձայն ենք հաշտություն ստորագրելու, գերմանական կառավարությունից իմանալ նրա պահանջների մասին։

Մերկացնելով տրոցկիստների և «ձախ կոմունիստների» դավաճանական գիծը, Լենինը նշեց, որ նրանց «խաղը հասել է այնպիսի փակուղու, որ ռևոլյուցիայի կործանումն անխուսափելի է, եթե շարունակենք վարել միջին քաղաքականություն» (Երկեր, հ. 26, էջ 642), այսինքն՝ «ոչ հաշտություն, ոչ պատերազմ» քաղաքականությունը։ Մենք հնարավորություն ունեինք հաշտություն ստորագրելու, որը ոչ մի չափով չէր սպառնում ռևոլյուցիային, ընդգծում էր Լենինը։ Սպասել և ձգձգել հաշտության կնքումը՝ նշանակում է «խորտակման մատնել ռուսական ռևոլյուցիան»։ Գերմանացիներն այժմ կարող են հաշտության ավելի ծանր պայմաններ առաջադրել, բայց դրանք պետք է ընդունել։ Պատմությունը մեզ չիների, որ մենք ռևոլյուցիան կործանում ենք հաշտություն ստորագրելու հնարավորության դեպքում։

Պարտիայի Կենտկոմը յոթ ձայնով ընդդեմ հինգի, մեկի ձեռնպահությամբ, ընդունեց Լենինի առաջարկը՝ հեռագիր ուղարկել գերմանական կառավարությանը, որ սովետական կառավարությունը համաձայն է հաշտություն ստորագրել այն պայմաններով, որոնք առաջարկել է գերմանական պատվիրակությունը Բրեստ-Լիտովսկում։ Փետրվարի լույս 19-ի գիշերը ռադիոգիրն ուղարկվեց։

Բայց գերմանական կառավարությունը պատասխանը չէր արագացնում։ Իր համար հաշտության ավելի շահավետ պայմաններ ապահովելու նպատակով գերմանացիները շարունակում էին հարձակվել։ Փետրվարի 19—22-ը գերմանական զորքերը գրավեցին Պոլոցկը, Օրշան, Մինսկը, Պսկովը, Ռևելը, Նարվան և մյուս քաղաքները։ Սովետական պետության պատմության ծանր ու վտանգավոր ժամանակաշրջաններից մեկն էր այդ։

1918 թվականի փետրվարի 21-ին Վ. Ի. Լենինը ժողովրդին դիմեց «Սոցիալիստական հայրենիքը վտանգի տակ է» կոչով։ Խորագույն հայրենասիրությամբ է տոգորված այդ կոչի յուրաքանչյուր տողը։ Պարտիան բանվորներին ու գյուղացիներին կոչ էր անում մինչև արյան վերջին կաթիլը պաշտպանել սովետական իշխանությունը, պաշտպանել Պետրոգրադը և Կիևը, կասեցնել գերմանական իմպերիալիզմի ավազակային հարձակումը։

Սովետական Ռեսպուբլիկայի համար այդ ահեղ օրերին Վ. Ի. Լենինը ձևակերպեց սոցիալիստական հայրենիքի պաշտպանության վերաբերյալ իր նշանավոր թեզը։ «Մենք պաշտպանողականներ ենք այժմ, 1917 թ. հոկտեմբերի 25-ից, մենք հայրենիքի պաշտպանության կողմնակիցներ ենք» (Երկեր, հ. 27, էջ 42)։

Կայզերական Գերմանիայի կառավարությունը միայն փետրվարի 22-ին, վերջապես, պատասխանեց սովետական կառավարության առաջարկին։

Փետրվարի 23-ին Կենտկոմի նիստում Լենինը հաստատակամորեն պահանջեց ընդունել հաշտության գերմանական պայմանները։ Նա հայտարարեց,



որ եթե ռևոլյուցիոն ֆրազի քաղաքականությունը շարունակվի, ապա ինքը ստիպված կլինի դուրս գալ կառավարության ու Կենտկոմի կազմից և դիմել մասսաներին։ Լենինի առաջարկի դեմ նորից հանդես եկան «ձախ կոմունիստները», Բուխարինը, Լոմովը, Ուրիցկին, Բուբնովը։ Տրոցկին, առարկելով հաշտություն ստորագրելու դեմ, հայտարարեց, որ հեռանում է արտաքին գործերի ժողկոմի պոստից։ Այդ վճռական պահին տատանումներ հանդես բերեց Ստալինը։ Իր առաջին ելույթում, արտահայտվելով հաշտության բանակցությունների օգտին, նա հայտարարեց, որ հաշտություն առայժմ «կարելի է չստորագրել» (Վ. Ի. Լենին, Երկերի լիակատար ժողովածու, հ. 35, էջ 369, ռուս)։ Սակայն, երբ Լենինը քննադատեց նրա դիրքը, նա հանդես եկավ հօգուտ անհապաղ հաշտություն կնքելու։

Ֆրակցիոներների դեմ մղված կատաղի պայքարում հաղթանակեց լենինյան տեսակետը։ Պարտիայի Կենտկոմը յոթ ձայնով, ընդդեմ չորսի, չորսի ձեռնպահությամբ, որոշեց ընդունել գերմանական կառավարության պայմանները։ Քվեարկությունից հետո «ձախ կոմունիստներ» Բուխարինը, Լոմովը, Բուբնովը, Պյատակովը, Յակովլևան, Ուրիցկին հայտարարեցին, որ հրաժարվում են բոլոր պատասխանատու պարտիական ու սովետական պոստերից և իրենց լիակատար ազատություն են վերապահում ագիտացիա անել հաշտությունը ստորագրելու վերաբերյալ Կենտկոմի որոշման դեմ, ինչպես պարտիայի ներսում, այնպես էլ նրանից դուրս, որովհետև այդ որոշումը կործանաբեր են համարում ռուսական և միջազգային ռևոլյուցիայի համար։

Կենտկոմի հաղթանակը ամրապնդվեց Սովետների համառուսաստանյան Կենտգործկոմի նիստում, որտեղ ձայների մեծամասնությամբ հաստատվեց հաշտության գերմանական պայմաններն ընդունելու բոլշևիկների առաջարկած բանաձևը։ Այսպիսով, լենինյան գիծը լիովին հաղթանակեց։

Սակայն սովետական իշխանության թշնամիների դիմադրությունն ավելի կատաղի բնույթ ստացավ։ Կադետները, մենշևիկները, էսեռները և մյուսներն էլ ավելի ուժեղացրին իրենց հարձակումները բոլշևիկների և Վ. Ի. Լենինի վրա։ Ստեղծված լարված իրադրության մեջ «ձախ կոմունիստներն» սկսեցին պարտիան պառակտելու կուրս վարել։ Փետրվարի 24-ին պարտիայի Մոսկվայի մարզային բյուրոն, որին գլխավորում էին նրանք, ընդունեց Կենտկոմի նկատմամբ անվստահություն արտահայտող բանաձև։ Բանաձևում ասված էր, որ ելնելով համաշխարհային ռևոլյուցիայի շահերից, «ձախ կոմունիստները» նպատակահարմար են գտնում ընդունել «Սովետական իշխանությունը կորցնելու հնարավորությունը, որն այժմ զուտ ձևական է դառնում»։ Վ. Ի. Լենինը այդ որոշումն անվանեց տարօրինակ և հրեշավոր։ Նա սուր քննադատության ենթարկեց «ձախ կոմունիստների» հայացքները, որոնք բացեիբաց հռչակեցին սովետական իշխանության պարտվողականության քաղաքականություն։

1918 թվականի փետրվարի 21-ից մինչև մարտի 5-ը «Պրավդայում» հրապարակած փայլուն հոդվածաշարում՝ «Ռևոլյուցիոն ֆրազի մասին», «Քոսի մասին», «Հաշտություն թե՞ պատերազմ», «Դժբախտ հաշտություն», «Ծանր, բայց անհրաժեշտ դաս», «Տարօրինակն ու հրեշավորը», «Լուրջ դաս և լուրջ պատասխանատվություն»,— Լենինը ցույց տվեց, որ պատերազմի հետ խաղալը, «ռևոլյուցիոն պատերազմի» վերաբերյալ ռևոլյուցիոն ֆրազը կարող են կործանել սովետական իշխանությունը։ «Ռևոլյուցիոն ֆրազը ռևոլյուցիոն լոզունգների կրկնումն է, առանց հաշվի առնելու տեղի ունեցող իրադարձու-

թյունների օբյեկտիվ հանգամանքները... Հիանալի, հրապուրիչ, արբեցուցիչ լոզունգներ,— բայց դրանց տակ հող չկա,— ահա ռևոլյուցիոն ֆրազի էությունը»,— գրում էր Վ. Ի. Լենինը (Երկեր հ. 27, էջ 1)։ Մինչդեռ հաշտության ստորագրումը նույնիսկ ամենածանր պայմաններով, նշում էր Լենինը, սովետական իշխանությանը դադար կտա, որը նրան ընդունակ կդարձնի դիմանալու ամեն տեսակ փորձությունների։ Վ. Ի. Լենինը սովետական իշխանությունը փրկելու համար կոչ էր անում պատերազմ հայտարարել «ռևոլյուցիոն պատերազմի վերաբերյալ ռևոլյուցիոն ֆրազին»։

Լենինյան այդ բոցաշունչ հոդվածներից յուրաքանչյուրը տոգորված է խոր հավատով սոցիալիստական ռևոլյուցիան պաշտպանելու ժողովրդական մասսաների կարողության նկատմամբ։ Խաղաղության օգտին մեծ Լենինի ագիտացիան հնչում էր հսկայական ուժով ու համոզչականությամբ, նրա յուրաքանչյուր խոսքը ամրապնդում էր վստահությունը հաղթանակի հանդեպ։

Հաշտության հարցում Լենինի դիրքը արտացոլում էր բանվոր դասակարգի հսկայական մեծամասնության և պարտիական լայն զանգվածների կարծիքը։ «Ձախ կոմունիստների» այն պնդումը, թե իբր Վ. Ի. Լենինը խաղաղության և պատերազմի հարցը քննարկելիս պարտիայի մեջ փոքրամասնություն էր կազմում, սնանկ է։ Պարտիական լայն մասսաները գնում էին Լենինի հետևից, է՛լ ավելի սերտորեն համախմբվելով պարտիայի ղեկավարության լենինյան կորիզի շուրջը։ Մարտի 4-ին բոլշևիկների պարտիայի Մոսկվայի կոմիտեն արտահայտվեց հաշտություն ստորագրելու օգտին։ Նույն օրը պարտիայի Մոսկվայի քաղաքային կազմակերպության կոնֆերանսը նույնպես հավանություն տվեց Գերմանիայի հետ հաշտություն կնքելու լենինյան քաղաքականությանը։ Մարտի 5-ին Պետրոգրադի Սովետի բոլշևիկյան ֆրակցիայի ժողովը, որին ներկա էին մի քանի հարյուր մարդ, պահանջեց վերընտրել պարտիայի Պետրոգրադի կոմիտեն, որի մեծամասնությունը կազմում էին «ձախ կոմունիստները», և փակել նրանց ֆրակցիոն լրագիրը։

1918 թվականի մարտի 3-ին Բրեստ-Լիտովսկում ստորագրվեց Գերմանիայի հետ հաշտության պայմանագիրը։ Մինչդեռ «ձախ կոմունիստները» չէին թուլացնում իրենց պառակտիչ աշխատանքը, բացեիբաց հանդես գալով Բրեստի հաշտությունը վավերացնելու դեմ։ Ստեղծված իրադրությունն շտապեցին օգտագործել ձախ էսեռները։ Նրանք դիմեցին Բուխարինին՝ առաջարկելով Վ. Ի. Լենինին հանել ժողովրդական կոմիսարների սովետի նախագահի պոստից և ստեղծել նոր կառավարություն՝ կազմված ձախ էսեռներից և «ձախ կոմունիստներից»։ Բուխարինը չընդունեց այդ առաջարկը։ Բայց հենց այն փաստը, որ ձախ էսեռները դիմեցին Բուխարինին, հատկանշական է այն տեսակետից, թե ինչպես էին դասակարգային թշնամիները փորձում օգտագործել ֆրակցիոներների պառակտիչ վարքագիծը։

Հաշտության հարցը վերջնականապես լուծելու համար 1918 թվականի մարտի 6-ին Մոսկվայում բացվեց պարտիայի VII համագումարը։ Համագումարի արտահերթ հրավիրման և երկրի տերիտորիայի մի մասի օկուպացման պատճառով պարտիական շատ կազմակերպություններ չհասցրին պատգամավորներ ուղարկել։ Պատերազմի և խաղաղության վերաբերյալ զեկուցման մեջ Վ. Ի. Լենինը համակողմանիորեն հիմնավորեց Բրեստում Գերմանիայի հետ ստորագրված հաշտությունը հաստատելու անհրաժեշտությունը։ Ռուսաստանում սոցիալիստական ռևոլյուցիայի զարգացման և այլ երկրներում ռևոլյու-



ցիոն շարժման վիճակի վերլուծության հիման վրա Լենինն ապացուցեց, որ Սովետական ռեսպուբլիկայի գոյությունն զգալի չափով կախված է այն բանից, թե արդյոք կհաջողվի խաղաղ դադար ստանալ։ Լենինը մերկացրեց «ձախ կոմունիստների» և տրոցկիստների ավանտյուրիստական քաղաքականությունը, որոնց պառակտիչ գործունեությունը պարտիայի մեջ չափազանց լարված դրություն ստեղծեց։

Պարտիայի VII համագումարը մերժեց «ձախ կոմունիստների» և տրոցկիստների ավանտյուրիստական քաղաքականությունը և ապահովեց լենինյան գծի հաղթանակը։ Չնայած բուխարինականների և տրոցկիստների կատաղի դիմադրությանը, համագումարը 30 ձայնով ընդդեմ 12-ի, 4-ի ձեռնպահությամբ, ընդունեց Լենինի գրած այն բանաձևը, որի մեջ ասված էր, որ չնայած ծանր, նվաստացուցիչ պայմաններին, անհրաժեշտ է հաստատել սովետական կառավարության կողմից Գերմանիայի հետ կնքված հաշտության պայմանագիրը։ Բանաձևում նշված էր, որ այսուհետև ևս անխուսափելի են իմպերիալիստական պետությունների ռազմական ելույթները ընդդեմ Սովետական ռեսպուբլիկայի։ Ուստի պարտիայի հիմնական խնդիրն է՝ ամենաեռանդուն ու վճռական միջոցներ ձեռք առնել՝ բարձրացնելու բանվորների և գյուղացիների ինքնակարգապահությունը և կարգապահությունը, լայն մասսաներին նախապատրաստել սոցիալիստական հայրենիքը պաշտպանելու համար, կազմակերպել կարմիր բանակ և բնակչության ընդհանուր ռազմական ուսուցում։

Համագումարից քիչ անց, մարտի 15-ին, Բրեստի հաշտությունը վավերացվեց Սովետների համառուսաստանյան IV արտահերթ համագումարի կողմից։ Համագումարում «ձախ կոմունիստները» վերստին հուսահատ փորձեր ձեռնարկեցին՝ վիժեցնելու հաշտության պայմանագրի հաստատումը։ Սակայն համագումարը հավանություն տվեց Գերմանիայի հետ հաշտություն կնքելու համառուսաստանյան Կենտգործկոմի և Ժողկոմսովետի գործողություններին։

Պարտիայի VII համագումարի և Սովետների համառուսաստանյան IV համագումարի որոշումները պաշտպանեցին կոմունիստներն ու անպարտիականները, Սովետական ռեսպուբլիկայի ամբողջ աշխատավոր բնակչությունը։ Պատերազմից Սովետական ռեսպուբլիկայի դուրս գալը, ինչպես նշեց Լենինը, միջազգային մեծագույն նշանակություն ուներ։ Ամբողջ աշխարհի բանվորները մեզ ողջունեցին «...այն բանի համար, որ մենք, որպես սոցիալիստական ռեսպուբլիկա, թեկուզ և իմպերիալիստների կողմից բզկտված, կողոպտված, մնացինք իմպերիալիստական պատերազմից դուրս և ամբողջ աշխարհի առաջ բարձրացրինք խաղաղության դրոշը, սոցիալիզմի դրոշը» (Երկեր, հ. 28, էջ 62)։ Ինչպես պարտիայի XI համագումարում նշեց Լենինը, հաշտություն կնքելով, պարտիան հաշվի էր առնում ժողովրդի հիմնական կարիքը, և դա ապահովեց մեր հաղթանակը շատ տարիների համար։

Հաշտության ստորագրումը Սովետական ռեսպուբլիկային տվեց կենսականորեն անհրաժեշտ դադար։ Դրանում արտահայտվեց կոմունիստական պարտիայի իմաստությունը, Վ. Ի. Լենինի իմաստությունը։ Հաշտության կնքումը սովետական իշխանությանը հնարավորություն ընձեռեց ձեռնամուխ լինելու խաղաղ սոցիալիստական շինարարության, կազմակերպելու կարմիր բանակ։ Դա պրոլետարիատին թույլ տվեց իր կողմում պահելու գյուղացիությանը, որի հետ դաշինքը վճռական պայման եղավ սովետական իշխանության ամրապնդման պայքարում։ Պարտիայի VII համագումարը ցույց տվեց տար-

բեր հասարակարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության հնարավորությունը:

Բրեստի հաշտության կնքման հարցում Վ. Ի. Լենինի հաղթանակը փրկեց աշխարհում առաջին սոցիալիստական պետությունը: «Պատմությունը ցույց տվեց,— ասաց Ն. Ս. Խրուշչովը,— որ այն ուղին, որը Վ. Ի. Լենինը նշել ու պաշտպանում էր կեղծ ռևոլյուցիոներների դեմ մղվող պայքարում, միակ խելացի և ճշգրիտ ուղին էր»:

Բրեստի հաշտության կնքման ժամանակաշրջանում «ձախերի» դեմ Վ. Ի. Լենինի, կոմունիստական պարտիայի պայքարի փորձը սովորեցնում է, որ պրոլետարիատի պարտիայի ներսում «ձախ» թեքումները ամենևին էլ պակաս վտանգավոր չեն, քան աջ թեքումները: Բայց, եթե Վ. Ի. Լենինը այն ժամանակաշրջանում «ձախությունը» համարում էր «մանկական հիվանդություն կոմունիզմի մեջ», ապա սոսկ այն պատճառով, որ դա երիտասարդ, նոր ծնունդ առնող հոսանք էր: Արդի պայմաններում, երբ ձախ աղանդավորական հիվանդությունը դրսևորվում է իշխանության գլուխ կանգնած պարտիայի գործունեության մեջ, պակաս լուրջ վտանգ չի դառնում, քան ռևիզիոնիզմն ու ռեֆորմիզմը:

Չինաստանի կոմպարտիայի ղեկավարները բացահայտ պայքար են մղում միջազգային կոմունիստական շարժման գլխավոր գծի գաղափարական-տեսական և քաղաքական հիմունքների դեմ: Ոտնահարելով պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքները, նրանք այնպիսի պառակտիչ գործունեություն են ծավալել, որն ինչպես իր ծավալով, այնպես էլ իր մեթոդներով նախադեպ չի ունեցել կոմունիստական շարժման պատմության մեջ:

Փաստերը վկայում են, որ Պեկինի գործիչները, թեպետև նրանք հայհոյում են իմպերիալիզմին, իրենց գլխավոր հարվածն ուղղում են կոմունիստական պարտիաների դեմ: Մարքս-լենինյան պարտիաների դեմ նրանց մղած պայքարը վնաս է հասցնում ամբողջ կոմունիստական շարժմանը, բացասական ազդեցություն է ունենում բազմաթիվ կոմունիստական պարտիաների գործունեության վրա, հատկապես կապիտալիստական երկրներում, վնասում է հակաիմպերիալիստական ուժերի համախմբման գործին: Այդ բանը ամեն կերպ ձգնում են օգտագործել իմպերիալիզմի լագերի ու ռեակցիայի պարագլուխները: Ահա թե ինչու ստեղծված պայմաններում առանձնապես հրատապ է դարձել կոմունիստական և բանվորական պարտիաների միջազգային նոր խորհրդակցության հրավիրումը կարծիքներ փոխանակելու և համատեղ որոշումներ ընդունելու համար: Ինչպես մատնանշված է Պրավդայի 1964 թվականի օգոստոսի 10-ի խմբագրական հոդվածում՝ Կոմպարտիաների խորհրդակցությունը գումարվում է ոչ թե կոմունիստական շարժումից այս կամ այն պարտիան «հեռացնելու» համար, համաշխարհային սոցիալիստական սիստեմից այս կամ այն երկիրը կամայական կերպով արտաքսելու համար, ոչ թե փոխադարձ հայհոյանքների ու միմյանց հասցեին մեղադրանքներ նետելու համար: ՍՄԿՊ-ն ելնում է այն բանից, որ կոմունիստական շարժման մեջ առաջացած տարաձայնությունների պայմաններում պետք է ամենից առաջ ջանքերը կենտրոնացնել ընդհանուր դիրքավորումներ մշակելու վրա, այն ընդհանուրը պարզելու վրա, ինչը որ միավորում է բոլոր մարքս-լենինյան պարտիաներին, նրանց առջև ծառացած դժվարությունները հաղթահարելու ուղիներ որոնելու վրա:



Մ. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ

Պատմական գիտությունների դոկտոր

# ՊԱՏՄԱԿԱՆ ԻՐՈՂՈՒԹՅՈՒՆՆ ԱՅՍ Է

Ռուսական առաջին ռևոլյուցիայի պարտությունից հետո ուժեղացավ ռեակցիան հասարակական կյանքի բոլոր բնագավառներում, այդ թվում նաև գաղափարական ճակատում: Աշխատավոր մասսաների դեմ ուղղված քաղաքական դաժան հալածանքներին ու տնտեսական ահավոր ճնշմանը միացավ երկրի ռեակցիոն ուժերի գաղափարական արշավը: Ռեակցիայի այդ թևատարած հարձակմանը մասնակցում էին ոչ միայն սևհարյուրյակային միապետականները, եկեղեցականներն ու բուրժուական ինտելիգենտները, այլև մանրբուրժուական գրչակներն ու ամեն կարգի օպորտունիստները:

Դրությունն ավելի ծանրացավ նրանով, որ ռեակցիայի տարիներին գաղափարական տարրնթացությունն ընդգրկեց նաև ռևոլյուցիոն միջավայրը: Սոցիալ-դեմոկրատական պարտիան ապրում է լուրջ ճգնաժամ ոչ միայն կազմակերպական, այլև գաղափարական առումով: Ռևոլյուցիայի վաղեմի ուղեկիցները, անկայուն սոցիալ-դեմոկրատները համակերպվեցին հունիսերեքյան ռեակցիոն ռեժիմին, անձնատուր եղան բուրժուական գաղափարախոսությանը և կանգնեցին մարքսիզմի փիլիսոփայությունը ռևիզիայի ենթարկելու դիրքերի վրա: Մենշևիկ-լիկվիդատորները, տրոցկիստները և այլ գույնի օպորտունիստներ հանդես էին գալիս որպես բուրժուազիայի գործակալներ բանվորական շարժման մեջ և փորձում էին դիալեկտիկական ու պատմական մատերիալիզմին հակադրել իդեալիզմը, նեոկանտականությունը, մախիզմը, էմպիրիոկրիտիցիզմը, կրոնը, միստիցիզմը, «աստվածաշինարարությունն» ու «աստվածորոնումը»: Հենց այդպիսին էր Բազարովի, Բերմանի, Բոգդանովի, Հելֆոնդի, Լունաչարսկու, Սուվորովի, Յուշկևիչի հրատարակած ռեակցիոն ժողովածուն՝ «Մարքսիզմի փիլիսոփայության ուրվագծերը» վերնագրով, որը Վ. Ի. Լենինը զայրույթով անվանեց «Ուրվագծեր՝ ընդդեմ մարքսիզմի փիլիսոփայության»:

Այդ ամենն ստեղծում էր լուրջ վտանգ աշխատավոր մասսաների համախմբման և ռևոլյուցիայի հետագա հաղթանակի կազմակերպման գործում: Ահա թե ինչու ռեակցիայի տարիներին, երբ մասսաները պետք է յուրացնեին 1905—1907 թվականների ռևոլյուցիայի փորձն ու դասերը, առաջին պլանը մղվեցին բոլշևիկյան պարտիայի աշխարհայացքի, մարքսիստական փիլիսոփայության պաշտպանության հարցերը. «Երբ մասսաները մարսում են անմիջական ռևոլյուցիոն պայքարի նոր չտեսնված հարուստ փորձը,— գրել է Վ. Ի. Լենինը,— այն ժամանակ թեորիական պայքարը ռևոլյուցիոն աշխար-

հայացքի, այսինքն՝ ռևոլյուցիոն մարքսիզմի համար, դառնում է օրվա լոզունգ» (Երկեր, հատ. 15, էջ 358—359)։

Անհրաժեշտ էր վճռական հակահարված տալ բուրժուական հարձակումներին, մերկացնել ու ջախջախել ռևիզիոնիզմը, պաշտպանել ու զարգացնել մարքսիզմի փիլիսոփայությունը։

Պատմական այդ մեծ խնդիրը կատարեցին բոլշևիկները՝ Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ։ Հատկապես վճռական նշանակություն ունեցավ պարտիայի առաջնորդի «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» հռչակավոր աշխատությունը, որը լույս տեսավ 1909 թվականին։

Անդրկովկասի բոլշևիկների առաջ ևս այդ տարիներին ծառացավ անհետաձգելի խնդիր՝ վճռական հակահարված տալ ինչպես բուրժուական ու մանրբուրժուական իդեոլոգներին, այնպես էլ օպորտունիստներին, ռևիզիոնիստներին, պաշտպանել մարքսիստական փիլիսոփայությունը թշնամական հարձակումներից, հետևողական պայքար մղել նրա անաղարտության համար։ Պետք է ընդգծել, որ նրանք պատվով կատարեցին այդ խնդիրը։

Ինչպես միշտ, այնպես էլ ռեակցիայի տարիներին Անդրկովկասում առաջատար դեր էր կատարում Բաքվի բոլշևիկյան կազմակերպությունը, որտեղ աշխատում էին այնպիսի ականավոր գործիչներ, ինչպիսիք էին՝ Ստ. Շահումյանը, Գ. Օրջոնիկիձեն, Ս. Սպանդարյանը, Պ. Ջափարիձեն, Մ. Ազիզբեկովը, Բ. Կնունյանցը և ուրիշներ։ Չնայած դրան, երկար ժամանակ՝ անհատի պաշտամունքի շրջանում արհեստականորեն Ստալինին էին վերագրվում Բաքվի և նույնիսկ բովանդակ Կովկասի բոլշևիկների ծառայությունները։ Դա ո՛չ միայն պատմության հրեշավոր կեղծում էր, այլև փոհված հերոս ռևոլյուցիոներների սրբազան հիշատակի պղծում։ Շրջանցվում էր նույնիսկ մի այնպիսի ականավոր լենինյան, ինչպիսին էր Ստեփան Շահումյանը՝ «տեսական մարքսիզմի ծանր հրետանին», որն, իրոք, անմիջականորեն գլխավորել է Անդրկովկասի բոլշևիկների գործունեությունը և բացառիկ խոշոր դեր կատարել նաև գաղափարական պայքարում։

Ռեակցիայի տարիներին Բաքվի ու ողջ Կովկասի բոլշևիկները՝ Ստ. Շահումյանի ղեկավարությամբ անհաշտ պայքար էին մղում մարքսիզմի թշնամիների ու ռենեգատների դեմ։ Գործին հատկապես լուրջ վնաս էին հասցնում ռևոլյուցիայի ուղեկիցները, որոնք ռեակցիայի տարիներին խուճապահար նահանջեցին և փարվեցին բուրժուազիային։ Բայց, ինչքան էլ ծանր լիներ դրությունը, ոչինչ չէր կարող ընկճել գաղափարապես հաստատ բոլշևիկներին, որոնք իրենց դրսևորեցին որպես «կարծրաքար» ռևոլյուցիոներներ։ Այդ առթիվ Ստ. Շահումյանը Անդրկովկասի բոլշևիկների անունից 1908 թվականի նոյեմբերին հաղորդում է արտասահման, ուր գտնվում էին Լենինը, բոլշևիկյան կենտրոնը. «Աշխատանքի պայմանները... սոսկալի դժվարացել են. մեզ տառացիորեն խաչում են, ամեն կողմից թքակոծում են, ստորացնում... Բայց մենք չենք վհատվում։ Հավատը դեպի ապագան և սերը դեպի մեր փորձը անսպառ եռանդ են ներշնչում մեզ» (Երկեր, հ. 2, էջ 66)։

Իրոք, երկրամասի բոլշևիկները ծավալեցին եռանդուն գործունեություն նաև գաղափարական ճակատում։ Բաքվում, Թիֆլիսում, Երևանում և այլուր տեղի էին ունենում փիլիսոփայական վեճեր, որտեղ բոլշևիկները հանդես էին գալիս որպես մարտնչող մատերիալիստներ և պայքար մղելով մարքսիզմի ռևիզիայի փորձերի դեմ, անց էին կացնում լենինյան գիծը։



Բաքվի բոլշևիկները ոչ միայն հետևողականորեն պաշտպանում էին լենինյան տեսությունը իրենց մոտ ու անհրաժեշտ պայքար մղում ռևիզիոնիստների դեմ պարտիայի ներսում, այլև ցուցաբերում անհանդուրժողականություն բոլոր նրանց նկատմամբ, ովքեր թեկուզ այս կամ այն հարցում կատարում էին ժամանակավոր նահանջ կամ մասնակի շեղումներ այդ գծից։ Այսպես, Ստ. Շահումյանը ընկերական, բայց սկզբունքային քննադատության է ենթարկում Մ. Ցխակայային, որը միաժամանակ հարել էր վպերիոդականների խմբին։ Այդ առթիվ նա Բաքվի բոլշևիկների անունից 1908 թվականի նոյեմբերին Մ. Ցխակայային գրում է. «Այժմ ինչպիսի՞ն են ձեր հարաբերությունները Իլյիչի հետ։ Առաջին մեծ նամակում դու ուժգնորեն հարձակվում էիր նրա վրա, և այդ նամակը այդ կողմից (ֆրակցիոն տարաձայնությունների... կողմից) ընդհանրապես մեզ վրա շատ վատ տպավորություն թողեց։ Մենք ամբողջովին Իլյիչի կողմն էինք։

Երկրորդ նամակում դու արդեն գրում էիր բոլորովին այլ ոգով» (Ն. տ., էջ 67)։ Ստ. Շահումյանը միաժամանակ պատասխանելով Մ. Ցխակայայի այն հարցումին, թե ում է տրվում Բաքվի մանդատը Համառուսաստանյան պարտիական կոնֆերանսի համար, գրել է, որ մենք «որոշեցինք մանդատը հանձնել Իլյիչին»։

Բաքվի բոլշևիկներն այդ բոլորի մասին իրազեկ էին պահում Լենինին, և Ստ. Շահումյանը Մ. Ցխակայային գրած նամակներից մեկը եզրափակում է հետևյալ խոսքերով. «Հաղորդիր Իլյիչին մեր ողջույնը և հայտնիր մեր վերաբերմունքը ձեզ զբաղեցնող հարցերի նկատմամբ։ Մենք կուզենայինք նամակագրություն ունենալ նրա հետ, ուղարկեք մեզ նրա հասցեն» (Ն. տ., էջ 42)։

Կասկածից վեր է, որ այդպիսի նամակագրություն եղել է և դրա մասին արժանահավատ կերպով վկայում է Ն. Կ. Կրուպսկայան՝ իր հիշողությունների հենց այն բաժնում, որը վերաբերում է Ստ. Շահումյանին, այն էլ ռեակցիայի տարիներին։ Ավելին, այդ իրողությունը հաստատվում է նաև Լենինի՝ «Պրոլետարիատ» թերթի ընդլայնված խմբագրության խորհրդակցությանը 1909 թվականի հունիսի 9-ին արտասանած ճառով, որտեղ նա, մերկացնելով Բոգդանովի խորամանկությունները, ասել է. «Մաքսիմովի պատմած պառակտման պատմությունը կուրիոզ է։ Մաքսիմովի թղթերում ոչինչ չի ասվում կենտրոնի մասին, բայց Միխայի նամակն այժմ ապացուցված է։ Այդ նամակում ասված է, որ Լենինը վարում է աջ-բունդական գիծ։ Դա կա փաստաթղթերում։ Միխան գրել է այն, ինչ այժմ ասում է Մաքսիմովը։ Ահա այն՝ կենտրոնի գաղափարը։ Եվ այդ նամակը մեզ են ուղարկել մեր կովկասյան բարեկամները, որոնք մանդատը տվել են աջ Իլյիչին։ Այդ քաղաքականությունը վարել է Միխան 1908 թ. հուլիսին՝ խմբի աջակցությամբ» (Երկերի լիակատար ժողովածու, հ. 19, էջ 15)։ Նշանակում է, Բաքվի բոլշևիկները՝ Ստ. Շահումյանի գլխավորությամբ, խորապես ըմբռնելով ներպարտիական պայքարի ողջ սրությունը, ո՛չ միայն գրում էին Լենինին, այլև անհրաժեշտ համարեցին նրան ուղարկել Ցխակայայից ստացած ֆրակցիոն բնույթի նամակը, որը շատ բան էր պարզում Բոգդանովի պառակտիչ խմբի կազմալուծիչ գործունեության մասին։

Բաքվի բոլշևիկյան կազմակերպությունը պարտիայի խոշորագույն կազմակերպություններից մեկն էր։ Նա վճռականորեն դատապարտեց ո՛չ միայն մախիզմը, այլև օտզովիզմը, գտնելով, որ այն անհամատեղելի է բոլշևիզմի հետ. «Պարտիայի մեջ,— գրել է Ստ. Շահումյանը,— մեզ ավելի անհասկանալի

երևույթ է թվում, այսպես կոչված, «օտզովիզմը»։ Ուղղակի անհավատալի և
ծայրաստիճան վիրավորական է թվում, որ նման հայացքները, նման մտածո-
ղությունը կարող են տեղ գտնել լուրջ ս.-դ. պարտիայի շարքերում» (Ն. տ.,
էջ 41)։

Օտզովիստների պարագլուխ, կատաղի մախիստ Բոգդանովն ամեն կերպ
փորձում էր լենինյան գծից շեղել և իր կողմը գրավել Բաքվի պարտիական
կազմակերպությանը։ Դրա համար նա նույնիսկ հատուկ նամակ գրեց բաք-
վեցիներին, բայց ոչ մի հաջողության չհասավ։ Ստ. Շահումյանը 1908 թ. նոյեմ-
բերին՝ Մ. Ցխակայային գրած նամակում նշում է, որ «մինչև այժմ մենք չենք
պատասխանել Մաքսիմովին»։ Մոտիկից ծանոթանալով այդ նամակին ու այլ
նյութերի, Բաքվի բոլշևիկները դատապարտեցին Բոգդանովի և նրա համա-
խոհների պառակտիչ գործողությունները։ Բաքվի կոմիտեն հավանություն
տվեց «Պրոլետարի» ընդլայնված խմբագրության խորհրդակցության որոշմա-
նը՝ օտզովիստներին պարտիայից վտարելու և մարքսիզմից կատարվող ամեն
մի նահանջի դեմ պայքարելու մասին. «Բաքվի կոմիտեն գտնում է, որ խմբա-
գրության փոքրամասնության տեսակետը չի համապատասխանում պարտիայի
ու պրոլետարիատի շահերին, ուստի և վճռականապես արտահայտվում է հօ-
գուտ խմբագրության մեծամասնության դիրքի, որի ներկայացուցիչն է ընկեր
Լենինը» («Բակինսկի պրոլետարի» № 7, 1909 թ. օգոստոսի 27)։ Այդ առթիվ
ՌՍԴԲԿ Բաքվի կոմիտեն ընդունում է հատուկ բանաձև, որտեղ դատապարտ-
վում են «օտզովիզմը», «ուլտիմատիզմը», «աստվածաշինարարությունը» և
նշվում է, որ «գաղափարական անխնա պայքարը խմբագրության փոքրամաս-
նության շուրջը խմբավորվող մատնանշված հոսանքների դեմ՝ պարտիական աշ-
խատանքի հերթական հրամայական խնդիրներից մեկն է» (նույն տեղում)։

Նման հարցադրումը ճիշտ էր և տեղին, բայց Ստալինի կողմից գրված այդ
բանաձևի մեջ կան նաև սխալներ և լուրջ թերություններ. հատկապես այնտեղ
անհամաձայնություն է արտահայտվում խմբագրության մեծամասնության
կազմակերպական քաղաքականության հետ և բողոք է հայտնում խմբագրու-
թյան փոքրամասնության կողմնակիցներին «մեր շարքերից» ամեն մի «դուրս
նետելու» դեմ։ Ապա նշվում է, որ խմբագրության երկու մասերը կարող են ու
պետք է համատեղ աշխատեն, իսկ Կապրիում ստեղծված ֆրակցիոն դպրոցի և
«ձախ մենշևիկների» նկատմամբ ունենալիք վերաբերմունքի մասին բանա-
ձևում որոշակի ո՞չինչ չի ասվում («ձեռնպահ են մնում»)՝ «բավարար քանա-
կությամբ նյութեր չունենալու պատճառով»։ Պարզ է, որ նման հաշտվողական
դիրքը հակադրվում է օտզովիզմի ու մախիզմի դեմ վճռական պայքար մղելու
լենինյան գծին։

Բաքվի կոմիտեի բանաձևի հիմնական մասը հրապարակվեց «Պրոլետա-
րի» թերթում, բայց և միաժամանակ հանձնարարվեց Բաքվի բոլշևիկներին
կարդալ Վ. Ի. Լենինի հոդվածը՝ «Զրույց Պետերբուրգի բոլշևիկների հետ»
(1909 թ.), որտեղ, մասնավորապես, ասված է. «Մենք անհուսալի կերպով
կխայտառակեինք բոլշևիզմը և անուղղելի հարված կհասցնեինք պարտիայի
գծին, եթե մենք չսահմանազատվեինք Մաքսիմովից» (Երկեր, հ. 16, էջ 81)։

Թեև Ստալինը ծանոթացավ այդ հոդվածին, բայց շարունակեց համառել
իր սխալի մեջ։ Այսպես, նա 1909 թվականի նոյեմբերի 12-ին «Պրոլետարի»
թերթի խմբագրությանը գրում է. «Ձեր հավելագրումը մեր բանաձևին՝ «Պր.»
ընդլայնած խմբագրությունում եղած տարաձայնությունների մասին («Պր.»



№ 49), ինչպես նաև «Զրույցը Պետերբուրգի բոլշևիկների հետ» ավելի համո-
զեցին մեզ խմբագրության կազմակերպ. քաղաքականության անճշտության
մեջ» (ՍՄԿՊ Կենտկոմին կից ՄԼԻ-ի ԿՊԱ, ֆ. 558, ց. 1, գ. 26, թ. 1)։ Այնու-
հետև Ստալինը նշում է, որ թեև կա «ուլտիմատիվ-խելացնոր պրակտիկների
մի փոքրաթիվ խումբ», այնուամենայնիվ նրա հետ «համատեղ աշխատանքը
թույլատրելի է ու անհրաժեշտ»։ Ավելին, նա մեղադրում է «Պրոլետարի»-ի
խմբագրությանը, որ իբր նրա «կազմակերպական քաղաքականությունը միայն
նպաստում է» տարաձայնությունների էության մեջ դեռևս չկողմնորոշված
բանվորների խմբավորմանը Ալեքսինսկիների շուրջը, իսկ Ալեքսինսկիներին
մղում է դեպի հատուկ կենտրոն (Ն. տ., թ. 2)։ Հենց այդ նույն նամակում
Ստալինը իրար է հակադրում արտասահմանյան ղեկավարությունը և պար-
տիական աշխատանքը Ռուսաստանում, մի բան, որ հետագայում էլ նա շա-
րունակում է բազմիցս կրկնել։

Ընդհանրապես պետք է նշել, որ Ստալինը ռեակցիայի տարիներին թույլ է
տվել քաղաքական ու տեսական կոպիտ սխալներ։ Հատկապես նա ոչ ճիշտ
դիրք գրավեց Վ. Ի. Լենինի «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» գրքի
նկատմամբ և, ինչպես նշել է Ստ. Շահումյանը, բոլշևիկների՝ օտզովիզմի ու
մախիզմի դեմ մղած պայքարը համարել է «փոթորիկ մի փոքրիկ բաժակ
ջրում» (Ստ. Շահումյան, Երկեր, հ. 2, էջ 41)։ Ավելին, Ստալինը գտնում էր,
որ պարտիայի մեջ եղած լուրջ տարաձայնությունները, այդ թվում նաև գաղա-
փարական հարցերի շուրջը, հանդիսանում են սոսկ «ժնևյան գործեր», «ար-
տասահմանյան փոթորիկ մի բաժակ ջրում», ընդ որում նա բացահայտ թերա-
հավատություն էր ցուցաբերում դեպի արտասահմանից իրականացվող պար-
տիական ղեկավարությունը։

Դրա մասին է վկայում նաև նրա՝ 1911 թվականի հունվարի 24-ին Սոլ-
վիչեգոդսկից Մոսկվա՝ Վ. Ս. Բոբրովսկուն գրած նամակը, որտեղ ասված է.
«Ընդհանրապես բանվորներն սկսում են արտասահմանին նայել արհամար-
հանքով՝ «Թող, իբր, ինչքան ուզում են մագլցեն պատը, իսկ ըստ մեզ, ում հա-
մար թանկ են շարժման շահերը, նա կաշխատի, մնացածը կկարգավորվի»։
Դա, ըստ իս, լավ է» (ՄԼԻ-ի ԿՊԱ, ֆ. 558, ց. 1, գ. 29, թ. 1)։

Դժվար չէ եզրակացնել, որ այդպիսի հախուռն արհամարհական վերա-
բերմունքով դեպի արտասահմանը, Ստալինը փաստորեն շրջանցում էր լենին-
յան ղեկավարությունը և թեև գտնվում էր աքսորում, բայց հավակնոտ կերպով
հանդես էր գալիս բանվորների անունից։

Ըստ էության չկարողանալով խորանալ փիլիսոփայական հարցերի մեջ և
չըմբռնելով մարքսիզմի ռևիզիայի դեմ Լենինի մղած պայքարի ողջ կարևորու-
թյունը, Ստալինը 1908 թվականի հուլիսին գրում է Միխա Ցխակայային. «Ո՞ր-
տեղ է արմատը այդ «մի բաժակ ջրում փոթորկի», որը կարող է վերածվել իս-
կական փոթորկի։ Փիլիսոփայակա՞ն տարաձայնություններում։ Տակտիկակա՞ն
Կազմակերպակա՞ն քաղաքականության հարցերում (վերաբերմունքը դեպի
«ձախ մենշևիկները» և այլն)։ Ջանազան «ես»-երի «ինքնասիրությա՞ն» մեջ»
Ն. տ., գ. 5262, թ. 1)։

Այդ բոլորը թվարկելով հանդերձ Ստալինը պարզապես գտնում էր, որ
ներկա տարաձայնություններն ունեն սուբյեկտիվ պատճառներ։ Դա երևում է
նաև հենց նույն նամակի շարունակությունից, որտեղ նա գրում է. «Այո, դառն
է, խիստ դառն է մեր վիճակը, և այն կլիներ էլ ավելի դառը, եթե մենք, ռու-

սաստանյան պրակտիկներս չկարողանայինք կարգի հրավիրել մեր ջղային գրողներին» (Ն. թ., թ. 2)։ Թվում է՝ մեկնաբանություններն ավելորդ են, որովհետև Ստալինը գերադասում էր խոսել միայն «ջղային գրողների», «ժնևյան գործերի», «մի բաժակ ջրում արտասահմանյան փոթորկի» մասին և միաժամանակ իր վրա էր վերցնում մեծ միսիա՝ «կարգի հրավիրել նրանց»։

Այստեղ տեղին է բերել Միխա Ցխակայայի այն խոսքերը, որ նա ասել է այն ժամանակ՝ դատապարտելով Ստալինի ամբարտավանությունը և փքուն հավակնոտությունը. «Գլխավորը՝ չգիտե մուտքն ու ելքը... դա, առնվազն «մեծամտություն է»։ Եվ mania grandiosa»[1] (Ն. տ., ֆ. 157, ց. 2, գ. 16, թ. 1)։

Այնուամենայնիվ, հետաքրքրական է իմանալ, թե Ստալինը ինչպես է կատարում իր վրա վերցրած «միսիան»։ Միանգամայն սխալ. նա տալիս է կամ անհիմն մեղադրանքներ և կամ փիլիսոփայական «սխալ» խորհուրդներ։ Այդպես, նա գտնում էր, որ Մախն ու Ավենարիուսը «գիտության մարդիկ» են, ինչպես Հեգելն ու Հոլբախը և նրանց նկատմամբ «արհամարհական վերաբերմունքը պետք է դեն նետել, որպես մարքսիզմի ոգուն անհարիր մի բան» (Ն. տ., ֆ. 558, ց. 1, գ. 5262, թ. 2)։ Այնուհետև, խորացնելով իր սխալ հայացքները, Ստալինը 1909 թվականի դեկտեմբերին, այսինքն՝ Վ. Ի. Լենինի «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» գրքի հրատարակությունից հետո, Մ. Տորոշելիձեին գրած նամակում, Լենինի աշխատությունը դրական գնահատելով հանդերձ (որպես «մարքսիզմի փիլիսոփայության (գնոսեոլոգիայի) դրույթների իր տեսակի մեջ միակ ամփոփում»), լուրջ վերապահություն է կատարում և նշում, թե «հակառակ տրամաբանության պահանջներին (ի շահ դիվանագիտությա՞ն) Իլյիչը ձգտում է քողարկել», բայց Բոգդանովը «շատ դիպուկ և ճիշտ է նշել Իլյիչի մի քանի սայթաքումները» (Ն. տ., գ. 5225, թ. 1)։ Այստեղ դժվար չէ տեսնել թե ինչքան է իջնում Ստալինը, երբ նա փաստորեն Լենինին մեղադրում է նույնիսկ ոչ-տրամաբանության, անսկզբունքայնության, ինչ-որ դիվանագիտության մեջ և հաճույքով ընդգծում Իլյիչի «որոշ սայթաքումների» բոգդանովյան քննադատությունը։ Այդ ամենը, սակայն, նա ասում էր ընդհանուր խոսքերով և նույնիսկ չի փորձում հիմնավորել կոնկրետ փաստերով, որպիսիք, իհարկե, չկան և Ստալինին երբեք էլ չէր հաջողվի հիմնավորել իր մեղադրանքը՝ առանց նոր ծուղակ ընկնելու։

Հարցը բավականաչափ պարզվում է անուղղակի ճանապարհով, երբ նա իր մի այլ նամակում՝ գրված Միխա Ցխակայային, փորձում է ցույց տալ, թե ո՞րն է ելքը փիլիսոփայության ասպարեզում ծավալվող պայքարից և վերջիվերջո ո՞ր ուղղությունը պետք է պաշտպանել։ Այդ հարցին Ստալինը, տալով յուրահատուկ պատասխան, գրել է. «էմպիրիոկրիտիցիզմը, չնայած նրա լավ կողմերին, ընդհանուր առմամբ նույնպես անընդունելի է, նկատի ունենալով նրա գործը խճճող զուգահեռականությունը։ Հարկավոր է կանգ առնել դիալեկտիկական մատերիալիզմի վրա (ոչ թե Պլեխանովի, այլ Մարքս-Էնգելսի), յուրացնելով ու կոնկրետացնելով այն Դիցգենի ոգով, միաժամանակ յուրացնելով «մախիզմի» դրական կողմերը» (Ն. տ., գ. 5262, թ. 2)։

Այս ձևակերպման մեջ, անշուշտ, կա ռացիոնալ հատիկ (խոսքը՝ Մարքսի ու Էնգելսի դիալեկտիկական մատերիալիզմի պաշտպանության մասին է), բայց այն պարուրված է սխալ վերապահումներով ու դատապարտելի հաշտվողակա-

---

[1] mania grandiosa—մեծամոլություն, մեծության մոլագարություն։



նությամբ դեպի մախիզմը։ Նորից պարզ է դառնում, որ Ստալինը լիովին դեմ չի եղել մախիզմին կամ էմպիրիոկրիտիցիզմին և այն չի ընդունել միայն «գործը խճճող զուգահեռականության համար»։ Ստալինը պարզապես չի հասկացել, որ այդ այսպես կոչված «զուգահեռականությունը», որով մախիստները փորձում էին շրջանցել փիլիսոփայության հիմնական հարցը և վերանալ մատերիալիզմի ու իդեալիզմի «միակողմանիությունից», ոչ այլ ինչ է, եթե ոչ յուրահատուկ փիլիսոփայական տրյուկ՝ քարոզելու սուբյեկտիվ իդեալիզմ, այսինքն՝ այն, որ իբր աշխարհը «ես»-ի զգայությունների կոմպլեքս է։

Ո՞ւր է տանում Ստալինի արատավոր թեզը՝ թե պետք է յուրացնել «մախիզմի դրական կողմերը»։ Մի՞թե դժվար է տեսնել, որ նա ո՛չ միայն ցուցաբերում է էկլեկտիցիզմ, տատանումներ, այլև կատարում է կոպիտ սխալներ, ընդհուպ մինչև մարքսիստական փիլիսոփայության հաշտեցումը մախիզմի, այսպես կոչված՝ «լավ կողմերի» հետ։ Հարց է առաջանում՝ մախիզմի, այդ ի՞նչ «լավ կողմերի» մասին է խոսքը, երբ ամբողջությամբ վերցրած այդ հոսանքը հանդիսանում է ռեակցիոն սուբյեկտիվ-իդեալիստական ուղղություն, երբ մախիստները հասան նույնիսկ այնպիսի անհեթեթ հայտարարության, թե ուղեղը մտածողության օրգան չէ և, հետևապես, միտքը հնարավոր է առանց ուղեղի։ Ահա թե ինչու Լենինը այդ «փիլիսոփայությունը» համարեց անուղեղ և բացահայտեց մախիզմի ողջ սնանկությունն ու վնասակարությունը։

Նշանակում է Ստալինի առաջ քաշած «փիլիսոփայական համադարմանը»,— սխալ ու վնասակար վերապահումներով համեմված դիալեկտիկական մատերիալիզմը դառնում է խոցելի և ըստ էության չի դիմանում քննադատության։ Իհարկե, խոսքը ոչ թե բուն մարքսյան փիլիսոփայության մասին է, այլ Ստալինի սխալ հասկացողության հենց այդ փիլիսոփայության՝ դիալեկտիկական մատերիալիզմի մասին։

Ստալինը միաժամանակ չէր հասկանում ռեակցիայի տարիներին լենինյան նոր տակտիկայի անհրաժեշտությունն ու նշանակությունը։ Հանդես գալով մեղադրողի դերում, հատկապես լեգալ հնարավորությունների օգտագործման հարցում, նա ձգնում էր ցույց տալ, որ իբր Իլյիչը մի քիչ գերագնահատում է այդպիսի կազմակերպությունների նշանակությունը», իսկ նրա հրաժարումը III Պետական դումայի բոյկոտից համարում է «պատահական շեղում հին բոլշևիզմից» (Ն. տ., գ. 5262, թ. 3)։ Ուրեմն, այժմ էլ Ստալինը բացահայտորեն Լենինին մեղադրում է «բոլշևիզմից շեղվելու մեջ»։

Իրականում սխալվողը (և ոչ միայն շեղվողը) Ստալինն էր, որը չէր ըմբռնում ռեակցիայի տարիներին ստեղծված իրադրությանը համապատասխան Լենինի ստեղծագործական մոտեցումը, դոգմատիկ կերպով կրկնում էր նախկին տակտիկան, որը պիտանի էր ռևոլյուցիոն ժամանակաշրջանի համար։ Այդ տեսակետից Միխա Ցխակայան, որը հարում էր օտզովիզմին, 1908 թվականի սեպտեմբերի 17-ի նամակում՝ ուղարկված Ժնևից Բաքու, այնուամենայնիվ, ճիշտ է նկատում, որ եթե «Ստեփանը [Շահումյանը] սարսափով է նայում «օտզովիզմին», ինչպես մի այլանդակ երևույթի, ինչպես մի մեծագույն հանցանքի», ապա «Կո.-ն... [Ստալինը] ավելի խաղաղ է տրամադրված դեպի «օտզովիզմը» և համաձայն է Բոգ.-ի հետ... Երևում է, նա բոյկոտիստ է, իսկ Ստեփանի մասին նույնը չեմ կարող ասել, նա, հավանորեն, ավելի շուտ հակաբոյկոտիստ է» (Ն. տ., ֆ. 157, ց. 2, գ. 16, թ. 19)։

Այդպիսով, Ստալինի հաշտվողականությունը գաղափարական հարցերում

իր հետ բերում էր հաշտվողականություն նաև քաղաքականության մեջ։ Միայն դրանով կարելի է բացատրել նաև այն, որ Ստալինը 1908 թվականին, այսինքն՝ երբ վաղուց ՌՍԴԲՊ-ն պառակտված էր երկու հակադիր թևերի, երբ բոլշևիկներն ու մենշևիկները փաստորեն գործում էին որպես ինքնուրույն պարտիաներ, երբ ռեակցիայի տարիներին բոլշևիկներն ուժեղ պայքար էին մղում մենշևիկ-լիկվիդատորների, օտզովիստների, ուլտիմատիստների դեմ, պահանջում էր «բոլշևիզմի սուր ծայրերի որոշ բթացում» և գտնում, որ «սոց. դեմոկրատիայի միասնությունը ոչ պակաս կարևոր է, քան ֆրակցիայի միասնությունը,— առանց այդպիսի միասնության դժվար է դրոշը պահպանել պատշաճ բարձրության վրա, առանց նրա սոցիալ-դեմոկրատիան կկորցնի ազդեցությունը պրոլետարիատի մեջ» (Ն. տ., ֆ. 558, ց. 1, գ. 5262, թ. 4)։

Հարց է առաջանում՝ հանուն ինչի պիտի բթացվեր բոլշևիզմի հատու զենքը. մի՞թե հասկանալի չէ, որ բոլշևիկները միայն անհաշտ ու վճռական պայքար մղելով ամեն գույնի օպորտունիզմի դեմ, կարող էին և, իրոք, պահպանում են իրենց շարքերի մարքս-լենինյան միասնությունն ու բարձր են պահում ռևոլյուցիոն պայքարի կարմիր դրոշը, համախմբում պրոլետարիատին ու մնացած աշխատավորությանն իրենց շուրջը։

Ինչպես երևում է, դեռ վաղ ժամանակներից Ստալինի համար բնորոշ էր վերացական դատողությունների առաջքաշման հատկությունը, որի օգնությամբ նա փորձում էր «տեսականորեն» արդարացնել իր նպատակներն ու գործողությունները, տվյալ դեպքում «միասնության» անունով հաշտվողականությունը։ Այդ դատողությունները առաջին հայացքից, ժամանակից ու տարածությունից դուրս, կարող են թվալ նույնիսկ ճշմարիտ. բայց դա սոսկ խաբուսիկ տպավորություն է, որովհետև ճշմարտությունը միշտ կոնկրետ է։ Ստալինի աշխատանքի այդ արատավոր մեթոդն առանձնապես կործանարար եղավ 1937 թվականին, երբ նա մեր երկրում սոցիալիզմի հաղթանակի պայմաններում հայտարարեց, թե սովետական հասարակության առաջխաղացման հետ միասին դասակարգային պայքարը պետք է ավելի սրվի։ Իրականում այն ժամանակաշրջանում մեր երկրի համար սխալ այդ թեզը Ստալինին պետք էր՝ տեսականորեն հիմնավորելու իր իսկ կողմից հրահրած ու կազմակերպած անօրինական մասսայական ռեպրեսիաները, որոնց զոհ դարձան բազմահազար մարդիկ՝ պարտիական, պետական, զինվորական ականավոր գործիչներ՝ լենինյաններ, սովետական անմեղ քաղաքացիներ։

Վերոհիշյալ փաստերն անհերքելիորեն վկայում են, որ ռեակցիայի տարիներին Ստալինի դիրքը չէր համընկնում լենինյան գծին՝ բոլշևիկյան պարտիայի տեսության ու տակտիկայի մի շարք կարևոր հարցերում։ Նրա սխալ հայացքների բացահայտումն ու քննադատությունը լիովին հերքում են անհատի պաշտամունքի ժամանակաշրջանի այն կեղծ պնդումները, թե իբր ռեակցիայի տարիներին Ստալինը բոլոր հարցերում հետևողականորեն պայքարում էր լենինյան գծի պաշտպանության համար, մարքսիստական փիլիսոփայության անաղարտության համար։



Անդրկովկասի բոլշևիկները, հակահարված տալով հակապարտիական հոսանքներին ու շեղումներին, կազմակերպեցին Վ. Ի. Լենինի «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» գրքի և, ընդհանրապես, մարքսիստական փիլիսոփայության ուսումնասիրությունը։ Հատկապես ակտիվ էին գործում Բաքվի և Թիֆլիսի բոլշևիկյան կազմակերպությունները, որոնք ծավալեցին բանավոր ու գրավոր պրոպագանդա։ Տեսականորեն պատրաստված այնպիսի գործիչներ, ինչպիսիք էին՝ Ստ. Շահումյանը, Գ. Օրջոնիկիձեն, Բ. Ջափարիձեն, Ս. Սպանդարյանը, Մ. Ազիզբեկովը, Ե. Ստասովան, Ա. Ենուկիձեն, Ն. Նարիմանովը, Ս. Կասյանը և ուրիշներ հանդես էին գալիս զեկուցումներով ու զրույցներով, գիտա-հանրամատչելի հոդվածներով, որոնց մեջ պարզաբանում էին դիալեկտիկական ու պատմական մատերիալիզմի հիմնական դրույթները։ Այդպես, բոլշևիկյան «Սովրեմեննայա ժիզն» ժուռնալում «Գիտական զրույցներ» վերնագրի տակ լույս տեսավ Ենուկիձեի հոդվածաշարքը, որտեղ նա պարզ ու հրստակ շարադրում էր գիտական կոմունիզմի ուսմունքը։ Նա հատկապես ընդգծում էր, որ Մարքսի ու Էնգելսի տնտեսական ուսմունքը, նրանց ստեղծած դիալեկտիկական մատերիալիզմը «իրենց հասարակական նշանակությամբ պատկանում են բոլոր ժամանակների մեծագույն հայտնագործությունների թվին։ Բանվոր դասակարգն ունի լիակատար հիմք հպարտանալու իր մեծ ուսուցիչներով, բայց որպեսզի նա այդ իրավունքն ունենա, պետք է ուսումնասիրի նրանց» («Սովրեմեննայա ժիզն», № 3, 1911 թ. ապրիլի 22)։

Բաքվի և Թիֆլիսի բոլշևիկները նախապատրաստվեցին նույնիսկ վերահրատարակել Վ. Ի. Լենինի «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» աշխատությունը։ Այդ ուղղությամբ հատկապես մեծ աշխատանք կատարեց պարտիայի ականավոր գործիչ Ս. Սպանդարյանը. Լենինի գիրքը նրա ամենասիրած երկերից մեկն էր և գտնում էր, որ դրա հրատարակությունը խորտակիչ հարված է հակագիտական ու քաղաքականապես վնասակար փիլիսոփայական հոսանքներին։ Հենց այդպիսին էին նաև մախիզմը, «աստվածաշինարարությունն» ու «աստվածորոնումը», որոնց Սպանդարյանը դասում էր սանինիզմի ու միստիցիզմի շարքը։

Հայաստանի բոլշևիկներն իրենց հերթին ամեն կերպ աշխուժացնում էին գաղափարական աշխատանքը։ Առանձնապես պետք է նշել Երևանի սոցիալ-դեմոկրատական կազմակերպության գործունեությունը, որտեղ ակտիվ դեր էին կատարում Գ. Սոկոլովսկին, Գ. Աթարբեկյանը, Արշ. Մելիքյանը և ուրիշ բոլշևիկներ։ Խորագիտակ մարքսիստ Արշ. Մելիքյանը հաճախ էր հանդես գալիս փիլիսոփայական թեմաներով ու պաշտպանելով դիալեկտիկական մատերիալիզմը, ուժգին հարվածներ էր հասցնում իդեալիզմի կողմնակիցներին։ 1911 թ. Երևանում, «Նոր ձայն» թերթի № 8-ում լույս տեսավ նրա փիլիսոփայական հոդված-գրախոսականը, որտեղ նա քարը քարի վրա չթողեց դաշնակցական «թեորետիկ» Ե. Ֆրանգյանի «Ե. Կ. Միխայլովսկին որպես փիլիսոփա-սոցիոլոգ» գրքից։ Ա. Մելիքյանը նշում է, որ Ֆրանգյանի գրքույկը նման է աղմկոտ, բայց առանց բնաղունի ջրաղացի։

Ա. Մելիքյանը ցույց է տալիս, որ Ե. Ֆրանգյանի ողջ «փիլիսոփայությունը» հանգում է Մախի, Ավենարիուսի, Նիցշեի, Շոպենհաուերի, Միխայլովսկու և այլոց ռեակցիոն-իդեալիստական գաղափարների խառնաշփոթ քաղվածքին։

Մարտնչող մատերիալիստ Ա. Մելիքյանը մերկացնում է նաև «սպեցիֆիկ» Բախշի Իշխանյանին, այդ «սուտ մարքսիստին», ռևիզիոնիստին և մատնանշում, որ նրան պետք է «դուրս վանել մարքսիստների շրջանից»։ Իհարկե, դա չի նշանակում, թե Բ. Իշխանյանը երբևիցե եղել է մարքսիստ։ Խոսքն այն մա-

սին է, որ նա հավակնում էր այդպիսին լինել և, ինչպես նշել է Ստ. Շահումյանը, նույնիսկ փորձում էր «հավատացնել միամիտ հայ ընթերցողին, թե նրա բերանով խոսում է ինքը՝ Կարլ Մարքսը» (Երկեր, հ. 2, էջ 273)։ Իրականում նա հանդես էր գալիս որպես մարքսիզմի ոխերիմ թշնամի և բոլշևիկներն անարգանքի սյունին են գամել նրան ու նմաններին։ Ստ. Շահումյանն ընդգծել է, որ «հարկավոր է անխնա հարվածել ու հալածել մարքսիզմը շահագործող ու ապականող այդ բախշիներին»։

Այդպիսի հարվածողներից էր նաև Սարգիս Կասյանը՝ Անդրկովկասի ռևոլյուցիոն շարժման ու բոլշևիկյան կազմակերպության ականավոր գործիչներից մեկը։ Տեսականորեն պատրաստված այդ մարքսիստը իր աշխատություններում («Գոյության, ագիտության և ահասության արդյունք»—1906 թ., «Թեբուսը գրական ասպարեզում և գիտության մեջ»—1908 թ.) մերկացրեց Բ. Իշխանյանին որպես բանագողի ու կեղծ մարքսիստի, որպես իդեալիստի ու բուրժուական պնակալեզի։ Այդ «սպեցիֆիկյան-իդեալիստական փիժվածքը» հանդես եկավ «Տնտեսական զարգացման փաղերը» բրոշյուրով, որի մեջ փորձում էր ցույց տալ, թե իբր ի հակադրություն Մարքսի ու Էնգելսի, միայն Կարլ Բյուխերն է տվել գիտական ուսմունքը՝ մարդկության տնտեսական զարգացման մասին։ Վճռականորեն դատապարտելով այդ գրպարտությունը՝ Ս. Կասյանը նշեց, որ այլ բան էլ չէր կարելի սպասել տհաս ու թունոտ Բ. Իշխանյանից։ Նա իր համար ընտրել է միանգամայն հարմար ուսուցիչ՝ գերմանական բուրժուական տնտեսագետ Կ. Բյուխերին, որն ստեղծել էր տնտեսության զարգացման հակագիտական սխեմա, ուր անտեսվում են հասարակական-տնտեսական ֆորմացիաները, արդարացվում է մասնավոր սեփականությունը, իդեալականացվում կապիտալիզմը։

Ահա այն մի քանի հարցերը, որոնք քննարկվում են տվյալ հոդվածում։

Գաղափարական ճակատում ռեակցիայի տարիներին բոլշևիկների մղած պայքարի պատմության ուսումնասիրությունն ունի ո՛չ միայն պատմա-ճանաչողական, այլև քաղաքական-դաստիարակչական նշանակություն։ Այն օգնում է լիովին հաղթահարելու անհատի պաշտամունքի վնասակար հետևանքները պատմագիտության այս հատվածում ևս, ըստ արժանվույն գնահատելու դեպքերն ու մարդկանց ծառայությունները։



ՄԱՐԳԱՐԻՏ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Արվեստագիտության թեկնածու

# ԹՈՂ ԲՈԼՈՐԸ ԵՐԳԵՆ

Երգը մարդու անփոխարինելի զորավիգն է, նրա վեհացման ու ազնվացման անգնահատելի ազդակը, խնդության հարուցողը և տրտմության պահերի սփոփիչը։ Ուստի բնականոն է, որ այն, խորապես ցոլացնելով ժողովրդի հոգաշխարհի նրբերանգները, վաղուց դարձել է մարդկային հոծ զանգվածների հոգեկան բարդ ևևէջների կիզակետը։ Հսկայական դեր խաղալով մարդու գեղագիտական դաստիարակության գործում, երաժշտությունը և, առաջին հերթին, երգը, նոր մարդու ձևավորման հիմնական գործոններից մեկն է։ Հետևաբար այսօր, քան երբևիցե, անհրաժեշտ է մեծագույն ուշադրություն դարձնել հասարակության երաժշտական դաստիարակությանը, համառորեն փնտրել և գտնել երաժշտության պրոպագանդման գործուն և ազդեցիկ ձևեր։

Մեր օրերի գիտության և տեխնիկայի սրընթաց զարգացումը, իմացության շրջանակների չտեսնված ընդլայնումը մեծ փոփոխություններ առաջ բերին նաև իրականության ընկալման եղանակների ոլորտում։ Փոխվեցին այնպիսի «կայուն» հասկացություններ, ինչպիսիք էին՝ մաքսիմալ արագություն, մաքսիմալ տարածություն, բարձրություն, հնչեղություն և այլն։ Խորապես փոխվում է մեր դարաշրջանի մարդու հոգաշխարհը։

Դարաշրջանի գաղափարական հագեցվածությունը, մտավոր կյանքի արտակարգ լարվածությունը յուրօրինակ ձևով ներգործեցին հասարակության ընդհանուր առաջընթացի վրա, իրենց հերթին անդրադառնալով արվեստի և մասնավորապես, երաժշտության զարգացման վրա։

Եթե երաժշտության մեջ նոր ժանրերի առաջացումը տեղի էր ունենում համեմատաբար դանդաղ, ապա արտահայտչական միջոցների հարստացումը կատարվեց մեծ արագությամբ։ Այդ միանգամայն օրինաչափ էր, քանի որ երաժշտական մտքի ամենաճկուն ձևերն արտահայտչական միջոցներ են, որոնք արտացոլում են գեղարվեստական մտածողության մեջ տեղի ունեցող փոփոխությունները։

Տեխնիկայի զարգացումը հսկայական նշանակություն ունեցավ նրանից շատ հեռավոր թվացող՝ երաժշտության զարգացման վրա։ Խոսքը մասնավորապես երաժշտության տարածման ձևերի մասին է։ Ռադիոն, կինոն, հեռուստատեսությունը, ձայնապնակները, մագնիտաֆոնը, այս ամենը մեր դարի մեծա-

գույն նվաճումներն են, որոնք հսկայական հնարավորություններ ստեղծեցին համարյա ամենուրեք երաժշտության տարբեր ժանրերի տարածման համար։ Այսպիսով, մեր արտակարգ հարուստ, հետաքրքրական դարաշրջանն իր հետ բերեց ինչպես երաժշտական արվեստի միջոցով իրականության բացահայտման նոր հնարավորություններ, այնպես և երաժշտության տարածման բազմազան միջոցներ, որոնց մասին դժվար էր երազել նույնիսկ սրանից 100 տարի առաջ։

Ահա թե ինչու մենք այսօր իրավունք չունենք անտեսելու հոգեբանական այն մեծ բեկումը, որը տեղի է ունեցել մտավոր, ստեղծագործական լարված կյանքով համակված մեր ժամանակակցի մոտ։ Դարաշրջանն իր բազմապիսի, հաճախ հակասական երևույթներով, կյանքի նոր դինամիկայով, իր կնիքն է դնում մարդու ներքնաշխարհի վրա։

Մեր օրերի մարդը պահանջում է մեծ գաղափարներ, հույզեր, կրքեր արտահայտող երաժշտություն, որն ի վիճակի է ընդհանրացնելու, գեղարվեստական կատարյալ ձևով արտացոլելու իրականության ամենաբարդ երևույթները և միևնույն ժամանակ ստեղծելու գործեր, որոնք կարող են ապահովել մարդու հանգիստը, նոր լիցք տալ կյանքի և աշխատանքի համար։

Երաժշտության ամենամատչելի և տարածված ժանրերից մեկը երգն է, որն առաջնակարգ դեր է խաղում ժողովրդի գեղագիտական դաստիարակման գործում։ Խոսքն այստեղ ոչ միայն հայ ժողովրդական, աշուղական, դասական և ժամանակակից ազգային, այլև ՍՍՌՄ եղբայրական ռեսպուբլիկաների և արտասահմանյան երկրների ժողովուրդների երգերի մասին է։

Հանրահայտ են սովետահայ կոմպոզիտորների վերջին տարիների նվաճումները սիմֆոնիկ և կամերային գործիքային երաժշտության բնագավառում։ Քիչ չեն հաջողությունները նաև երգարվեստի բնագավառում։ Կարելի է օրինակ բերել Ա. Բաբաջանյանի, Ա. Այվազյանի, Կ. Օրբելյանի, Է. Բաղդասարյանի, Խ. Ավետիսյանի, Ա. Հարությունյանի, Ա. Աճեմյանի, Գ. Հախինյանի ստեղծագործությունները, որոնք ունկնդիրներին համակում են արդիական շնչով, ինքնատիպությամբ, արտահայտչական միջոցների թարմությամբ, ազգային երաժշտության շրջանակների համարձակ ընդլայնմամբ։ Թեմատիկ բազմազանությունը, պրոֆեսիոնալ վարպետությունը, հուզականությունը ապահովեցին նրանց կենսունակությունը։

Անշուշտ, մեր կոմպոզիտորների ստեղծագործական հաջողությունները երգարվեստի ասպարեզում դեռևս չեն կարող բավարարել բնակչության բոլոր խավերի ու հասակների աճող էսթետիկական պահանջմունքները։ Այսպես, սակավաթիվ են տարբեր բնույթի, տարբեր հասակների համար գրված խմբերգերը, կատակերգերը, երիտասարդական աշխույժ և եռանդուն քայլերգերը, վոկալ անսամբլները՝ զուգերգերը և կվարտետները։ Ի դեպ, մեր կոմպոզիտորները բոլորովին դադարել են վոկալ անսամբլների համար գրելուց։ Թերևս դրա պատճառն այն է, որ այժմ ռեսպուբլիկայում չկա և ոչ մի գործող վոկալ անսամբլ, որը երգի պրոպագանդման գեղեցիկ և հաճելի ձևերից մեկն է։

Գաղտնիք չէ, որ մեր ժողովրդի կենցաղում տակավին գերիշխողը ժողովրդական և գուսանական երգերն են, իսկ արդի կոմպոզիտորների երգերը արժանի տարածում չեն ստանում։ Իհարկե, մենք հակված չենք թերագնահատելու ժողովրդական և գուսանական երգերի արժեքն ու նշանակությունը ժողովրդի կյանքում, սակայն նրանց կողքին պետք է լայնորեն հնչեն մեր տաղանդավոր կոմպոզիտորների լավագույն ստեղծագործությունները, որոնք



երաժշտասեր լայն զանգվածների համար ուղի են հարթում դեպի ժամանակակից երաժշտության ավելի բարդ ձևերի ընկալումը։ Այսպիսով, թե՛ ժողովրդական, թե՛ պրոֆեսիոնալ երգերի խելացի, մտածված, սիստեմատիկ պրոպագանդումը առաջնահերթ խնդիր է մեզ համար։

Որո՞նք են այն խոչընդոտները, որոնք կասեցնում են երգի ազատ և արագ տարածումը։ Փորձենք հետևել այն ուղուն, որն անցնում է երգն իր ստեղծման պահից մինչև երաժշտասերները։

Երգի կարևոր պայմաններից մեկը խոսքն է։ Ամեն տարի հրապարակվում են հայ պոետների նոր ժողովածուներ, ժամանակ առ ժամանակ մամուլում լույս են տեսնում նոր բանաստեղծություններ։ Սակայն նրանց շատ չնչին մասն է «երգային»։ Բանն այն է, որ մեր բանաստեղծներից համարյա ոչ ոք կարծեք մտահոգված չէ այդ հարցով, այլ կերպ ինչո՞վ բացատրել այն, որ սովետահայ կոմպոզիտորների երգերի միայն մի փոքր մասն իսկապես ունի պոետիկ տեսակետից բարձրարժեք տեքստ։ Խոսքը մանավորապես մասսայական և էստրադային երգերի մասին է։ Թվում է, որ նման վիճակի պատճառներից մեկը կոմպոզիտորների և գրողների միությունների միջև սերտ ստեղծագործական կապի բացակայությունն է, որի հետևանքով կոմպոզիտորները, պարզապես, անտեսում են այն նորը, հետաքրքրականը և արժեքավորը, որն ստեղծում են ժամանակակից սովետահայ բանաստեղծները։ Արվեստի, ժողովրդի էսթետիկական դաստիարակության շահերը հրամայաբար պահանջում են պոետների և կոմպոզիտորների համագործակցություն։

Բայց ենթադրենք, որ կոմպոզիտորը գտել է իրեն ոգեշնչող բանաստեղծությունը և նոր երգ է հորինել։ Կոմպոզիտորների միությունում դրական կարծիքի արժանանալուց հետո, ո՞ւմ պետք է դիմի նա կատարման համար։ Չէ՞ որ նոր գրված երգը մասսայական կարող է դառնալ միայն նրա հաջող կատարման դեպքում։ Մինչդեռ կատարման հարցը բազմաթիվ դժվարությունների հետ է կապված։ Եթե այսօր ունենք դասական և ժամանակակից, այսպես կոչված՝ «լուրջ» վոկալ ստեղծագործությունների որակյալ կատարողներ, ապա մեր նշանավոր երգիչներից համարյա ոչ ոք իրեն չի նվիրել ժողովրդական, էստրադային երգի մասսայականացմանը, իսկ Հայաստանի էստրադային նվագախումբն իր մենակատարների հետ միասին, համարյա շուրջ տարին համերգային շրջագայության մեջ է։ Եթե նման կոլեկտիվի պահանջն զգում են Երևանում, ապա այն ավելի սուր է ռեսպուբլիկայի մյուս քաղաքներում ու շրջաններում։

Երաժշտության կենդանի պրոպագանդման կարևոր օջախ է ռադիոյի և հեռուստատեսության պետական կոմիտեն, որը, սակայն, երկար տարիներ չի կարողանում դուրս գալ սահմանափակությունից և ակներև միօրինակությունից։ Նրա միակ հաստիքային կոլեկտիվը ժողովրդական գործիքների անսամբլն է, որին տարիներ շարունակ մեծ ջանասիրությամբ ղեկավարում է Ա. Մերանգուլյանը։ Անշուշտ մեծ է անսամբլի ծառայությունը մեր կոմպոզիտորների և ժողովրդական ստեղծագործությունների տարածման գործում։ Սակայն ժողովրդական գործիքների անսամբլի կատարողական հնարավորությունները, բնականաբար, ունեն իրենց որոշակի շրջանակները։

Տարիներ շարունակ ռադիոկոմիտեին կից գործում էր գործիքային կվինտետը, որն էստրադային, մասսայական նոր երգերի օպերատիվ կատարողներից մեկն էր, և կոմպոզիտորը նոր երգ ստեղծելիս հույս ուներ այս լսել ռադիոյով, իսկ այդ, անկասկած, ոգեշնչող միջոց էր։ Այժմ կվինտետը դադարել

է գործելուց, հետևաբար նոր գրված երգերի կատարումը կապված է անհամեմատ մեծ դժվարությունների հետ: Այն, որ ռեսպուբլիկայում բացակայում է առնվազն մեկ, մշտապես գործող որակյալ, ոչ մեծ գործիքային կոլեկտիվ՝ իր երգիչ մենակատարներով, վնասում է թե՛ կոմպոզիտորներին և թե երաժշտասերներին, հատկապես երիտասարդությանը, որոնք կարոտ են նոր երգերի:

Էստրադային երգի հետ միասին չափազանց ետ է մնում նաև կամերային ստեղծագործությունների կատարումը: Բացառությամբ ՍՍՌՄ ժողովրդական արտիստուհի Գոհար Գասպարյանի և Երևանում հազվադեպ ելույթ ունեցող գաստրոլյորների, մեզանում կամերային համերգները պատահական երևույթ են: Այդ նշանակում է, որ տարիներ շարունակ մեր ռեսպուբլիկայի բեմահարթակներից չեն հնչում Կոմիտասի, Ռ. Մելիքյանի, Ա. Սպենդիարյանի, Ա. Սաթյանի, Հ. Ստեփանյանի, Կ. Զաքարյանի, Վ. Կոտոյանի, Է. Աբրահամյանի, Է. Հովհաննիսյանի, Ս. Ջրբաշյանի և մյուս կոմպոզիտորների երգերը: Մեր երգիչների ելույթները ռադիոյով կամ հեռուստատեսությամբ, մի քանի երգերի կատարմամբ, երբեք չեն լրացնում այդ բացը:

Կամերային հազվադեպ համերգներն աննշան չափով են նպաստում երգարվեստի տարածմանը: Կոմպոզիտորներն անտարբեր են դառնում վոկալ կամերային երաժշտության նկատմամբ, իսկ երիտասարդ մեներգիչները զրկվում են կամերային լուրջ ծրագրի վրա աշխատելու և իրենց պրոֆեսիոնալ վարպետությունը կատարելագործելու հնարավորությունից: Եվ դարձյալ տուժում են հազարավոր երաժշտասերներ:

Արդյոք Հայֆիլհարմոնիան օգտագործո՞ւմ է հնարավոր բոլոր միջոցները երաժշտության լայն, սիստեմատիկ պրոպագանդման համար: Թվում է, որ դեռևս անհրապույր են կազմակերպվող աբոնեմենտային համերգները. մինչդեռ աբոնեմենտը պետք է ծառայի որոշակի նպատակի: Այսպես, առանձին աբոնեմենտներ կարող են նվիրված լինել սովետական սիմֆոնիզմի խոշորագույն ներկայացուցիչներին, սովետահայ սիմֆոնիաներին, ժամանակակից արտասահմանյան մշակույթի լավագույն ներկայացուցիչների գործերին, եղբայրական ռեսպուբլիկաների նշանավոր ստեղծագործողներին և կատարողներին, վերջապես աբոնեմենտներ պետք է կազմակերպել ոչ միայն սիմֆոնիկ, այլև կամերային երաժշտությանը նվիրված, և ոչ միայն Երևանի, այլև այլ քաղաքների ունկնդիրների համար:

Կայուն սկզբունքներից զուրկ են դպրոցականների համար կազմակերպվող աբոնեմենտները, այստեղ էլ իշխում է պատահականությունը, սիստեմատիկ ծրագրի բացակայությունը: Թող աբոնեմենտների թիվը լինի ավելի պակաս, բայց նրանք լինեն նպատակասլաց: Այլ կերպ աբոնեմենտային սպասարկման մեջ գործում է առանձին, իրար հետ ոչ մի կապ չունեցող համերգների սկզբունքը:

Հայֆիլհարմոնիան պետք է ձգտի գործել իր դահլիճների սահմաններից դուրս, ռեսպուբլիկայի բազմաթիվ մեծ և փոքր դահլիճներում, տարածելով դասական և ժամանակակից երաժշտության լավագույն նմուշները, նպաստի ռեսպուբլիկայի լավագույն կատարողական ուժերի կազմակերպմանը, հատկապես սովետահայ կոմպոզիտորների գործերի կատարմանը:

Մեր ժամանակը երաժշտության տարածման բազմաթիվ հնարավորություններ է ստեղծում: Անհրաժեշտ է միմիայն օգտագործել բոլոր միջոցները: Ակներևաբար, փոքր կտավի ստեղծագործությունները, մասնավորապես երգերը, շատ ավելի հեշտությամբ կարելի է տարածել փոքր ձայնապնակների միջոցով: Գուցե ժամանակն է կազմակերպել Անդրկովկասի ռեսպուբլիկաների մայրաքաղաքներից մեկում ձայնապնակների արտադրության նոր կենտրոն, այնպես, ինչպես այդ կազմակերպել են Մերձբալթյան ռեսպուբլիկաները, գրառնելով լատվիական, էստոնական և լիտվական ազգային երաժշտության բոլոր ժանրերի բազմաթիվ ստեղծագործություններ: Այդ, անկասկած, հասունացած հարց է և անդրկովկասյան ռեսպուբլիկաների համար: Դրա կարիքն են զգում մեր ռեսպուբլիկաների հարյուր հազարավոր երաժշտասերներ:

Երգի տարածման մի այլ, կարևոր միջոցը, նրա հրատարակումն է: Մեզ մոտ երգի հրատարակումը համարյա չի հետևում նրա առաջին կատարմանը (տվյալ դեպքում խոսքը գեղարվեստական տեսակետից հաջողված գործերի մասին է): Երբեմն հարկավոր է առնվազն մեկ-երկու տարի, մինչև երգը վերջապես հրատարակվի: Այսպես, տարիներ շարունակ սիրված և մեր ռեսպուբլիկայում ու նրա սահմաններից դուրս հաջողությամբ կատարված Խ. Ավետիսյանի «Իմ անուշ տավիղ» երգի հրատարակումն իրականացավ միմիայն այս տարի: Շատ հաճախ կոմպոզիտորը նոր երգ գրելու փոխարեն, կատարողների խնդրանքով, ստիպված, բազմիցս արտագրել է իր հորինած երգը: Իսկ ինչպե՞ս վարվեն Երևանի սահմաններից դուրս ապրող երաժշտասերները: Սովետական Միությունում, ժողովրդական դեմոկրատիայի երկրներում հնչում են Առնո Բաբաջանյանի վառ ու գունեղ երգերը, բայց փորձեք Երևանում, կամ մեր ռեսպուբլիկայի այլ վայրերում ձեռք բերել այդ երգերից գեթ մեկի նոտագիրը: Դա համարյա անհնարին է:

Ուկրաինայում հաճախակի են կազմակերպվում ստեղծագործողների և ունկնդիրների հանդիպումներ, որոնց ժամանակ երաժիշտները հանդես են գալիս իրենց նոր ստեղծագործությունների, մասնավորապես երգերի կատարմամբ: Այդ հանդիպումների առավելություններից մեկն այն է, որ կոմպոզիտորներն իրենց հետ տանում են առանձին թերթիկների վրա տպագրված երգի խոսքերը և երաժշտությունը (հիմնականում մեղեդին): Ունկնդիրները հնարավորություն են ստանում հանդիպումից անմիջապես հետո սովորել և կատարել սիրված երգը: Նման հանդիպումների փորձ ունեն և հայ կոմպոզիտորները, սակայն տպագրության հետ կապված բազմաթիվ արգելքներ խանգարում են մեզ մոտ ևս կիրառել ուկրաինական ընկերների օգտակար նախաձեռնությունը: Երգարանների, առանձին երգերի հրատարակման հարցերը սպասում են հրատապ լուծման, այլ կերպ անհնարին կլինի երաժշտության լուրջ պրոպագանդան:

Եթե երգի ունկնդրումը գեղարվեստական հաճույքի, իրականության գեղարվեստական ճանաչման կարևոր եղանակ է, ապա այն միաժամանակ գեղագիտական դաստիարակության համեմատաբար պասիվ ձևերից մեկն է: Անհամեմատ կարևոր և արժեքավոր է երգի կատարմանը անմիջականորեն մասնակցելը և, մասնավորապես, խմբային կատարումը, որի նշանակությունը դժվար է գերագնահատել:

Այս տարի Էստոնիայում կայացած հայ արվեստի և գրականության շաբաթի մասնակիցներին գերել էր երգի և, մասնավորապես, երգչախմբային արվեստի նկատմամբ այն մեծ սերը, որ հատուկ է էստոն ժողովրդին: Տարբեր շրջաններում, մեծ և փոքր բնակավայրերում գործում են բազմաթիվ երգչա-

խմբեր, որոնք մեծ սիրով կատարում են ո՛չ միայն էստոնական, այլև մյուս ժողովուրդների, այդ թվում նաև հայկական ժողովրդական երգեր:

Պարզապես հաճույք պատճառեց Տալինի պիոներական պալատի երգչախումբը, որի կատարումն արժանի է ամենաբարձր գովասանքի. դա արդյունք է երաժիշտ մանկավարժների լուրջ աշխատանքի: Առաջին դասարանցիները երգում են միաձայն երգչախմբում, միևնույն ժամանակ ծանոթանում երաժշտական տարրական գիտելիքներին: Երկրորդ և երրորդ դասարանների աշակերտները երգում են երկձայն, իսկ չորրորդ դասարանից սկսած՝ եռաձայն և քառաձայն երգչախմբում:

Պիոներական պալատի ներկա երգչախումբը հիանալի կատարում է խմբերգեր և՛ դաշնամուրի նվագակցությամբ, և՛, այսպես կոչված՝ Ա կապելլա (առանց նվագակցության): Մեծ ջանասիրություն և նուրբ երաժշտականություն պահանջող Ա կապելլա երգերի գերազանց կատարումը այդ հիանալի կոլեկտիվի բարձր պրոֆեսիոնալ վարպետության վկայությունն է: Տալինի պիոներական պալատի երգչախումբն ունի շատ հարուստ երգացանկ, որը կազմված է էստոնական ժամանակակից, ռուսական, ժողովրդական դեմոկրատիայի երկրների, դասական կոմպոզիտորների ստեղծագործություններից:

Անկասկած, նման կոլեկտիվի գործունեությունը մեծապես նպաստում է թե՛ կատարողների և թե ունկնդիրների գեղարվեստական դաստիարակության գործին ու ոգեշնչման հզոր աղբյուր է ստեղծագործողների համար: Պիոներական պալատը հրատարակում է իր երգչախմբի կողմից կատարվող բոլոր ստեղծագործությունները՝ փոքրիկ ժողովածուների ձևով, որը մի տեսակ ուղեցույց է դպրոցներում երգարվեստը զարգացնելու համար:

Էստոնիայում, Լատվիայում և Լիտվայում շատ սիրված են երգի տոները, որոնք վեր են ածվում ժողովրդական մեծ տոնակատարությունների: Այդ տոներին մասնակցում են հարյուր հազարավոր երաժշտասերներ: Միայն Տալինի երգի տոնի գլխավոր բեմահարթակը տեղավորում է 35 հազար կատարող, որոնց հաճախ մեծ խանդավառությամբ միանում են տասնյակ հազարավոր ունկնդիրներ: Ցավոք, երգչախմբային արվեստի նման մասսայական կատարման տրադիցիաներ մեզ մոտ չկան: Չնայած այն մեծ և արգասաբեր ջանքերին, որ թափված է նախասովետական շրջանում մի շարք տաղանդավոր կոմպոզիտորների կողմից խմբերգային մշակույթի արմատավորման համար, այսօր մոռացության են տրվել ոչ միայն նրանց հասումները, այլև մինչսովետական շրջանի և, հատկապես, 20—30-ական թվականներին սիրված խմբերգային արվեստը: Իսկ որո՞նք են խմբերգային արվեստի տարածումը կաշկանդող հանգամանքները:

Անշուշտ, խմբերգային արվեստի այսօրվա վիճակը առաջին հերթին պայմանավորված է դպրոցներում երգի դասավանդման նկատմամբ տասնյակ տարիներ շարունակվող անուշադրությամբ: Այստեղ հազվադեպ են բազմաձայն երգչախմբերը, է՛լ ավելի հազվադեպ են երգչախմբերի որակյալ, եռանդուն ղեկավարները, որոնք ի վիճակի լինեն սեր ներշնչել երգարվեստի նկատմամբ: Այդ է պատճառը, որ դպրոցների ինքնագործ խմբերի որոշ մասն իրենց բնույթով զուրկ են երեխայի հոգեբանությանը, նրանց ներքնաշխարհին հատուկ նրբերանգներից և փաստորեն կրկնում են մեծերի երգի և պարի անսամբլներին: Այսպիսով, երեխաների ճաշակն արդեն դպրոցական տարիներից շեղվում է ճիշտ ուղուց:



Մեր հասարակության գեղարվեստական դաստիարակության հզոր միջոցներից մեկը ինքնագործունեությունն է, որի վիճակն այսօր չի կարելի բավարար համարել: Ինքնագործունեության խոցելի կողմերից մեկը նրա դրսևորման ձևերի սահմանափակությունը և միօրինակությունն է: Համարյա լիովին բացակայում են սիմֆոնիկ և կամերային կոլեկտիվները և գրեթե ամենուրեք տարածված են երգի և պարի անսամբլները, որոնք հաճախ ժողովրդական երգի ու պարի վաստակավոր անսամբլի շատ թույլ կրկնությունն են: Նրանք մեծ տեղ են հատկացնում երգերին, սակայն դրանք գերազանցապես կատարվում են միաձայն:

Երբեմն ինքնագործ կոլեկտիվների երգացանկը կազմված է ցածրորակ ստեղծագործություններից: Ըստ երևույթին այս հարցում սկզբունքային և եռանդուն պետք է լինի կոմպոզիտորների միությունը, որը պետք է ժամանակին կանխի ցածրորակ ստեղծագործությունների տարածումը, որը մեծ վնաս է հասցնում աշխատավորների երաժշտական դաստիարակությանը:

Անհրաժեշտ է ինքնագործունեության խմբերի մասնակիցների համար ստեղծել ամենալայն հնարավորություններ՝ նրանց երաժշտական գիտելիքները հարստացնելու, գեղարվեստական ճաշակը զարգացնելու և դրանով իսկ հող պատրաստել ժամանակակից արվեստի լավագույն նմուշները, սիմֆոնիկ և կամերային-գործիքային երաժշտությունն ընկալելու ուղղությամբ:

Գործող բազմաձայն երգչախմբերի ոչ տևական գործունեությունը, բնականաբար, իջեցնում է նրանց կատարողական մակարդակը: Ցավալի է, որ մեր ռեսպուբլիկայում գործող ինքնագործ խմբերից համարյա ոչ մեկն իր ուժերով չի կարող բեմադրել թեկուզ և մեկ գործողությամբ օպերա:

Ժողովրդական ստեղծագործության տունն իր սահմանափակ հնարավորություններով ըստ երևույթին չի կարող ճիշտ ուղղություն տալ բոլոր ինքնագործ խմբերին և նպաստել կատարողական արվեստի նոր ձևերի կազմավորմանը և զարգացմանը: Ժողովրդական ստեղծագործության տունը, ինչպես և ինքնագործ մեծ և փոքր կոլեկտիվները, կարոտ են կոմպոզիտորների միության, Կոմիտասի անվան պետական կոնսերվատորիայի, մեր ռեսպուբլիկայի պրոֆեսիոնալ երաժիշտների օգնությանը: Այդ օգնության ձևերը կարող են բազմազան լինել՝ նոր երգերի ուսուցում, կոնսուլտացիա, երաժշտության տարրական տեսության դասավանդում, զրույցներ երաժշտական արվեստի մասին և այլն:

Ինքնագործ խմբերի կատարողական արվեստի որոշակի սահմանափակությունը հաղթահարելու համար անհրաժեշտ է հնարավորին չափ ընդարձակել երաժշտության պրոպագանդման շրջանակները, որոնել երգի տարածման նոր, հետաքրքրական ձևեր: Դրանցից մեկը կարող է լինել արտադրական ձեռնարկություններին, կոլտնտեսություններին, բուհերին կից երաժշտական ակումբների ստեղծումը, որի աշխատանքները կարելի է կազմակերպել հասարակական հիմունքներով: Այդ ակումբները կարող են կազմակերպել երաժշտության ունկնդրում, առանձին ուշագրավ երաժշտական գործերի քննարկում, նոր երգերի կոլեկտիվ ուսուցում և կատարում: Նման ակումբները, հանդիսանալով հանգստի լավագույն ձևերից մեկը, միևնույն ժամանակ մեծ չափով կնպաստեն նոր մարդու գեղագիտական ճաշակի ձևավորմանը:

Որքան մեծ են երաժշտասերներին մեծ թվով գրավելու հնարավորությունները, այնքան ուշադիր պետք է լինել մատուցվող երաժշտության հանդեպ:

Մեր ռեսպուբլիկայի քաղաքների պուրակներում, կինո-թատրոններում

(սեանսներից առաջ), ճաշարաններում և նման այլ վայրերում հաճախակի հնչում է երաժշտությունը. այստեղ ևս ունկնդիրների զգացմունքները դաստիարակվում են ամեն օր: Կասկածից վեր է, որ հասարակական նման վայրերում, բաց բեմահարթակներում հնչող երաժշտությունը պետք է լինի մատչելի, զվարճալի, սակայն ոչ անորակ և գռեհիկ:

Հասարակական վայրերում պետք է հնչի այնպիսի երաժշտություն, որը գեղարվեստական տեսակետից լինի կատարյալ: Տվյալ դեպքում կարևորն այն չէ, թե որտեղ է կատարվում այս կամ այն ստեղծագործությունը, այլ ո՞ւմ համար: Ունկնդիրների թիվը հասարակական վայրերում շատ ավելի մեծ է, քան սովորական համերգային սրահներում: Երաժշտության տարածման այդ հզոր ձևերից մեկի հնարավորությունները պարզապես չեն օգտագործվում, կամ անբավարար են օգտագործվում: Այս հանգամանքի վրա պետք է սևեռել համապատասխան հիմնարկների ու կազմակերպությունների ուշադրությունը:

Ինքնագործունեության ընդունված ձևերի միօրինակությունը գուցե մասամբ պայմանավորված է այն ոչ նորմալ պայմաններով, որոնք ստեղծվել են մեր ռեսպուբլիկայի միակ պրոֆեսիոնալ բազմաձայն երգչախմբի համար: Խոսքը Հայաստանի պետական երգչախմբի մասին է:

Ակներև են վերջին 2—3 տարիների ընթացքում Պետական երգչախմբի կյանքում տեղի ունեցած ուրախալի փոփոխությունները: Նրա շնորհալի ղեկավար Հ. Չեքիջյանի ջանքերով երգչախումբը ձեռք բերեց կենսունակություն, բարձրացավ խմբի պրոֆեսիոնալ մակարդակը, անհամեմատ հարստացավ նրա երգացանկը ի հաշիվ հայ, ռուս, արտասահմանյան կոմպոզիտորների ստեղծագործությունների:

Սակայն երգչախումբը դեռևս չի գործում իր կարողությունների համաձայն: Նրա ելույթները հազվադեպ են ռեսպուբլիկայի այլ քաղաքներում ու շրջաններում, ինչպես և ռեսպուբլիկայի սահմաններից դուրս:

Հիրավի, մեծ և բազմազան են հեռուստատեսության հնարավորությունները երաժշտության պրոպագանդման գործում, սակայն այստեղ ևս միակ ընդունված ձևը երաժշտության պասսիվ մատուցումն է: Մինչդեռ կարելի է գտնել երեխաների և մեծահասակների համար երգի ուսուցման հետաքրքրական և գրավիչ ձևեր:

Իսկ ինչո՞ւ չօգտվել նաև կինոյի ծառայություններից: Հայֆիլմը կարող է նախաձեռնել 2—3 րոպե տևող երգի կատարման նկարահանումը: Այն հաճույքով կլսվի կինոնկարների ցուցադրումից առաջ: Տարեկան մի քանի նման կինո-մանրանկարների ցուցադրումը կնպաստի երգերի տարածմանը:

Երաժշտասերների ամենալայն շրջաններին մեծ օգնություն կարող է լինել գրադարաններին կից նոտային գրադարակների ստեղծումը, որտեղ կարելի է կենտրոնացնել մատչելի երաժշտական գրականություն:

Երգի ստեղծման և տարածման հարցերը բարդ են և բազմաթիվ: Այդ ասպարեզում լուրջ բեկում ստեղծելու միակ ճիշտ ճանապարհը կուլտուրայի մինիստրության, ՀԱՄԽ-ի, լենինյան կոմերիտմիության, կոմպոզիտորների միության, լուսավորության մինիստրության, ռադիոյի և հեռուստատեսության պետական կոմիտեի, մամուլի կոմիտեի, «Գիտելիք» ընկերության աշխատանքների կոորդինացումն է:

Թող բոլորը երգեն: Ժամանակն է, որ երգը երգվի ժողովրդական հոծ զանգվածների կողմից և ամենուր:

Է. ԱՖՐԻԿՅԱՆ

ՀՍՍՌ ԳԱ միկրոբիոլոգիայի ինստիտուտի դիրեկտոր

# ՄԻԿՐՈԲԻՈԼՈԳԻԱԿԱՆ ՍԻՆԹԵԶԸ ԵՎ ՆՐԱ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ԿԻՐԱՌՈՒՄԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

Ինչպես հայտնի է, քիմիական նոր նյութերի և պրեպարատների արդյունաբերական ստացման ամենատարածված եղանակը քիմիական սինթեզի մեթոդն է, որը բուռն կերպով կարգացող քիմիական արդյունաբերության հիմքն է: Վերջին տարիներին բազմակողմանի կարգացավ քիմիական նյութերի արդյունաբերական ստացման մի նոր՝ միկրոբիոլոգիական սինթեզի մեթոդը, որը հիմնված է միկրոօրգանիզմների կենսագործունեության օգտագործման վրա:

Բիոլոգիական ակտիվ նյութերի արդյունաբերական ստացման այս եղանակը վերջին 10—15 տարիների ընթացքում ձեռք է բերել չտեսնված հաջողություններ, և մենք հանդիսանում ենք նրա հարաճուն կարգացման ու ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի մեջ ներթափանցման վկաներ:

Միկրոօրգանիզմների՝ քիմիական ամենատարբեր վերափոխումներ կատարելու կարմանալի ընդունակությունը հայտնի է վաղուց: Հողի բերրիությունը, ջրամբարների արդյունավետությունը բնորոշող բիոլոգիական պրոցեսները, բնության մեջ տարբեր էլեմենտների շրջապտույտը, խմորման բազմապիսի ձևերը և շատ այլ պրոցեսներ միշտ էլ կապվել են միկրոօրգանիզմների կենսագործունեության հետ: Սակայն նրանց նպատակային օգտագործումը հնարավոր է դարձել միայն վերջին ժամանակներս, որը պայմանավորված է քիմիայի, միկրոբիոլոգիայի և մյուս գիտությունների սերտ համագործակցությամբ:

Միկրոբիոլոգիային վերաբերող հին պատկերացումն այն մասին, որ այն գործ ունի միկրոսկոպների ու փորձանոթների հետ, ներկայումս փոխվել է: Միկրոբիոլոգիան այսօր գործ ունի տասնյակ և հարյուրավոր տոննա ֆերմենտյորների, միկրոբիոլոգիական պրոցեսների կանոնավորման ամենաբարդ սիստեմների, կիբեռնետիկայի կայանքների հետ, որոնք նոր մեթոդների կիրառմամբ հնարավորություն են տվել հաջողությամբ ղեկավարելու միկրոօրգանիզմների կենսագործունեությունը: Այժմ արդյունաբերության մեջ օգտագործվող բարձր արդյունավետ միկրոօրգանիզմների համարյա բոլոր ձևերը միկրոբների արհեստական կուլտուրաներ են, որոնք ստացվել են էքսպերիմենտալ փոփոխականության արդի եղանակով: Ըստ որում, բնության մեջ այդպիսի արդյունավետ շտամներ գոյություն չունեն: Օրինակ, հազարավոր գիտնականներ տարիներ շարունակ բնության մեջ ապարդյուն որոնում էին անտիբիոտիկների պրոդուցենտների բարձր ակտիվության կուլտուրաներ, սակայն պարզվեց, որ պենիցիլինի ամենաակտիվ բնական պրոդուցենտը առաջացնում է 50 միավոր միջավայրի սմ$^3$, մինչդեռ արհեստական եղանակով ստացվածի արդյունավետությունը համարյա 100 անգամ բարձր է:

Միկրոօրգանիզմները բացառիկ նշանակություն ունեն կերի և սննդանյութերի արտադրության համար, որի հիմքում ընկած է սպիտակուցային միացությունների, առաջին հերթին ամինոթթուների ստացումը: Բնության մեջ սպիտակուցների աղբյուր են բույսերը և կենդանիները: Մեզ հայտնի են նաև ոչ քիչ թվով միկրոօրգանիզմներ, որոնք հանքային և պարզ օրգանական միացություններից առաջացնում են ամենաբազմազան բարդ սպիտակուցներ, այդ

Մեզ մոտ միկրոբիոլոգիական արդյունաբերության մեծ օբյեկտ է Սպիտակի լիմոնաթթվի գործարանը, որը դասվում է մեծատոննաժ արտադրությունների շարքը: Նրա տեխնոլոգիական պրոցեսների և սարքավորումների յուրահատկությունը, ցավոք, թույլ չի տալիս կազմակերպելու բիոլոգիական ակտիվ նյութերի և միկրոօրգանիզմներից այլ միացությունների ստացման արտադրությունը:

Ներկայումս գիտությունը մշակել է մի այլ՝ լիմոնաթթվի միկրոբիոլոգիական ստացման խոր ֆերմենտացիայի ավելի հեռանկարային եղանակը: Հարկ կա վերանայել Սպիտակի գործարանն այս եղանակին փոխադրելու հարցը, որը թույլ կտա մի քանի անգամ ինտենսիվացնել լիմոնաթթվի արտադրությունը և, որ գլխավորն է, կազմակերպելու այլ արժեքավոր նյութերի թողարկումը միկրոբիոլոգիական սինթեզի մեթոդով:

Միկրոբիոլոգիական մի այլ ձեռնարկություն է նաև Երևանի բակտերիալ պարարտանյութերի գործարանը, որն իր օգտակար դերն է կատարում ռեսպուբլիկայի և այլ մարզերի գյուղատնտեսությունն անհրաժեշտ պարարտանյութերով ապահովելու ուղղությամբ: Սակայն գործարանը չունի անհրաժեշտ սարքավորումներ, ֆերմենտացիայի կայանք և գործում է հնացած տեխնոլոգիայով: Արտադրական պրոցեսների տեխնոլոգիայի կատարելագործումը և գործարանի փոխադրումը չոր բակտերիալ պարարտանյութերի թողարկման՝ թույլ կտա համարյա 10 անգամ իջեցնել արտադրանքի ինքնարժեքը: Այսօր *միկրոբային պրեպարատների նոր գործարանի կառուցումը ռեսպուբլիկայում* հրամայական անհրաժեշտություն է, քանի որ գոյություն ունեցող գործարանը (Երևանյան ծովի ստեղծման կապակցությամբ), կդադարի գործելուց: Նոր գործարանը նախագծելիս անհրաժեշտ է նախատեսել չոր բակտերիալ մակարդների, ինսեկտիցիդների և այլ միկրոբային պրեպարատների արտադրություն՝ առավել կատարելագործված տեխնոլոգիայի հիման վրա:

Իր ժամանակին չի իրագործվել Հայաստանում շաքարասնկային հիդրոլիզատների գործարան ստեղծելու որոշումը, որը շատ կարևոր նշանակություն կունենար անասնապահությունը լիարժեք կերով ապահովելու գործում: Սակայն ուրախալի է, որ որոշում է ընդունվել (թեկուզ որոշ ուշացումով) մեզ մոտ շաքարասնկային հիդրոլիզատների խոշոր գործարան կառուցելու մասին:

Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի գիտահետազոտական աշխատանքների կոորդինացման պետական կոմիտեն ընդարձակ միջոցառումներ է մշակել կերային, սննդամթերքների և բիոլոգիական այլ ակտիվ միացությունների միկրոբիոլոգիական ստացման, ռեսպուբլիկայում միկրոբիոլոգիական սինթեզի արդյունաբերության կազմակերպման և գիտահետազոտական աշխատանքների բնագավառում արմատական բեկում մտցնելու ուղղությամբ: Այդ միջոցառումների հաջող և արագ իրագործումը խոշոր ավանդ կհանդիսանա ժողովրդական տնտեսության հետագա զարգացումը, հատկապես գյուղատնտեսության ինտենսիվացումն ապահովելու գործում:

Այսօր ռեսպուբլիկայի մի շարք գիտահետազոտական հիմնարկների առաջ կանգնած են մեծ և պատասխանատու խնդիրներ միկրոբիոլոգիական սինթեզի արդյունաբերության զարգացման ուղղությամբ: Այդ գործում վճռական է Հայկական ՍՍՌ գիտությունների ակադեմիայի միկրոբիոլոգիայի ինստիտուտի դերը, որն ունի աշխատակիցների ոչ փոքր կոլեկտիվ և ձեռք է բերել ոչ քիչ հաջողություններ:

Գործնական կարևոր նշանակություն ունեն ինստիտուտի մի շարք աշխատանքները միկրոբների նոր, ակտիվ կուլտուրաները հողի պարարտացման, գինեգործության և հացաթխման արդյունաբերության մեջ օգտագործելու, բակտերիալ պրեպարատների արտադրությունը կազմակերպելու մարզում: Դրանցից հատկապես արժեքավոր են բարձր կարգի բույսերի համար միկրոօրգանիզմներից աճի ակտիվ խթանիչներ ստանալու գծով տարվող հետազոտությունները, անտիբիոտիկները բուսաբուծության և շերամապահության մեջ օգտագործելու ուղղությամբ ստացված տվյալները: Մեծ մասսայականություն են ձեռք բերել միկրոօրգանիզմների օգտագործմամբ արտադրվող բուժիչ և սննդային կաթնաթթվային մթերքները: Հեռանկարային են վնասատուների դեմ պայքարի՝ ինստիտուտում ստացված բակտերիալ ինսեկտիցիդների ակտիվ պրեպարատները:

Ինստիտուտի առաջ խնդիր է դրված առաջիկա տարիներին միկրոբիոլոգիական ճանապարհով ստանալ սննդի և կերի միջոցներ, մշակել բիոլոգիական ակտիվ միացությունների միկրոբիոլոգիական սինթեզի հեռանկարային բաժիններ և խոր հետազոտություններ ծավալել միկրոօրգանիզմների էքսպերիմենտալ փոփոխականության ուղղությամբ, նպատակ ունենալով ստանալ միկրոօրգանիզմների նոր, արժեքավոր արդյունաբերական ձևեր:

Սակայն ինստիտուտը հնարավորություն չունի ծավալելու և խորացնելու իր գործունեությունը հատկապես այն ճանապարհով, որն ապահովված չէ ժամանակակից տեխնիկական բազայով: Մինչդեռ հայտնի է, որ առանց փորձաարտադրական հարմարանքների միկրոբիոլոգիական սինթեզի աշխատանքների հաջող ավարտումն անհնարին է, քանի որ արտադրական փորձարկումների համար անկարելի է պատրաստել որոշակի քանակությամբ միկրոբային պրեպարատներ: Այս դեպքում հնարավոր չէ մշակել նաև տեխնոլոգիական հարցերը, իսկ առանց դրանց ոչ մի պրեպարատ արդյունաբերության կողմից չի ընդունվի: Դրությունն անհուսալի է դառնում նաև նրանով, որ ռեսպուբլիկայում չկա գործող ոչ մի ֆերմենտացիոն հարմարանք:

Միկրոբիոլոգիական սինթեզի աշխատանքների բնագավառում կարևոր օջախներ են անասնաբուծության և անասնաբուժության գիտահետազոտական ինստիտուտի և Երևանի պետական համալսարանի տեխնիկական բիոքիմիայի լաբորատորիաները, ինչպես նաև այլ գիտահետազոտական հիմնարկների և բարձրագույն ուսումնական հաստատությունների միկրոբիոլոգիայի և բիոքիմիայի մի շարք ամբիոնները և բաժինները:

Արդի կարևորագույն հարցերից է ստեղծագործական կոլեկտիվների ուժերի միավորումը ժողովրդական տնտեսության հրատապ գործնական խնդիրների լուծման նպատակով: Ահա թե ինչու մեր գիտահետազոտական հիմնարկների ուշադրությունը պետք է բևեռել միկրոբիոլոգիական սինթեզի այն հիմնական ուղղությունների և ճյուղերի վրա, որոնք մեր ռեսպուբլիկայի համար բացում են զարգացման լայն հեռանկարներ, նկատի ունենալով տեղական ուրույն պայմանները և հումքի բազայի առկայությունը:

Առանձնահատուկ նշանակություն է ստանում միկրոբիոլոգիայի գծով գիտահետազոտական աշխատանքների կոորդինացումը: Այս ուղղությամբ որոշ գործ կատարված է, սակայն դեռ շատ անելիքներ կան: Բանն այն է, որ այժմ չկա գիտության կամ արդյունաբերության մի բնագավառ, որ այս կամ այն չափով չառնչվի միկրոբիոլոգիայի հետ: Այսպես, միկրոօրգանիզմներից անտիբիոտիկներ ստանալու պրոբլեմը, նոր դեղամիջոցների և բիոխթանիչների հայտնագործումն առաջնակարգ նշանակություն ունեն բժշկության, անասնաբուծության, բուսաբուծության և արդյունաբերության մի շարք ճյուղերի համար: Միկրոբային ֆերմենտները հսկայական դեր են խաղում տեքստիլ, կաշվի և սննդի արդյունաբերության, ինչպես նաև գյուղատնտեսության մեջ: Հասկանալի է, որ միկրոբիոլոգիական սինթեզի բնագավառում տարվող աշխատանքները կարող են իրականացվել միայն գիտահետազոտական աշխատանքների կոորդինացման կոմիտեի միջգերատեսչային գիտական խորհուրդների համագործակցությամբ, որոնք օժտված են ինչպես կազմակերպչական, այնպես էլ ֆինանսական մեծ իրավունքներով: Անհրաժեշտ է վերացնել անօգտակար զուգահեռականությունը, որը բխում է գերատեսչությունների անջատվածությունից, մտցնել պրոֆիլայնություն, ստեղծել գիտական աշխատանքների զուգակցված թեմատիկա՝ հետազոտական որոնումներից մինչև փորձա-արդյունաբերական աշխատանքները և լայն արտադրական փորձարկումները:

Մեզ մոտ զարգացել են միկրոբիոլոգիայի մորֆոլոգիական և էկոլոգիական ուղղությունները, որի հետևանքով առանձին լաբորատորիաներում գերակշռում է աշխատանքների նկարագրական բաժինը, որը բացասաբար է ազդել նաև կադրերի պատրաստման վրա: Անհրաժեշտ է ամենայն կերպ զարկ տալ կադրերի պատրաստմանը քիմիայի հեռանկարային բնագավառների՝ բիոքիմիայի և միկրոօրգանիզմներից բիոլոգիական ակտիվ միացությունների տեխնոլոգիայի մշակման համար: Պետք է հատուկ ուշադրություն դարձնել կադրերի մասնագիտացմանը մեր ռեսպուբլիկայի համար կարևոր արդյունաբերության ճյուղերի գծով: Ժամանակն է ուժեղացնել բարձրագույն ուսումնական հաստատությունների միկրոբիոլոգիայի ամբիոնները և բարձրացնել դասավանդման մակարդակը, գուցե և կազմակերպել քիմիկո-միկրոբիոլոգիական խառը ֆակուլտետներ համալսարանում կամ պոլիտեխնիկական ինստիտուտում:

Կերի, սննդամթերքների ու բիոլոգիական մյուս ակտիվ նյութերի արդյունաբերության կազմակերպումը մեր ռեսպուբլիկայի զարգացման կարևոր խնդիրներից մեկն է, ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման հիմնական ուղիներից մեկը:

## Նշանավոր տարեթվեր

Խ. ԲԱՐՍԵՂՅԱՆ

# ԳԻՏԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԾՐԱԳՐԱՅԻՆ ՄԵԾ ՓԱՍՏԱԹՈՒՂԹԸ

(Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի «Կոմունիստական պարտիայի մանիֆեստի» հայերեն առաջին հրատարակության 60-ամյակի առթիվ)

## 1

*Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի* Կոմունիստական պարտիայի մանիֆեստը *գիտական կոմունիզմի հանճարեղ ստեղծագործությունն է, միջազգային պրոլետարիատի մարտական ծրագիրը։ Այնտեղ առաջին անգամ սեղմ և ամբողջական շարադրված է մարքսիզմը՝ իր երեք բաղկացուցիչ մասերով։* Կոմունիստական մանիֆեստում *«...հանճարեղ պարզությամբ ու ցայտունությամբ ուրվագծված է նոր աշխարհայեցողությունը,— գրել է Վ. Ի. Լենինը,— նաև սոցիալական կյանքի բնագավառն ընդգրկող հետևողական մատերիալիզմը, դիալեկտիկան, որպես ամենաբազմակողմանի ու խոր ուսմունք զարգացման մասին, դասակարգային պայքարի և նոր, կոմունիստական հասարակության ստեղծող պրոլետարիատի համաշխարհային-պատմական ռևոլյուցիոն դերի թեորիան» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 21, էջ 45—46)։*

*Կոմունիստական պարտիայի մանիֆեստի երևան գալը շրջադարձային կետ էր միջազգային պրոլետարիատի ռևոլյուցիոն շարժման և գիտական կոմունիզմի պատմության մեջ։ «Այդ փոքրիկ գրքույկը ամբողջ հատորներ արժե, նրա ոգով է ապրում ու շարժվում մինչև այժմ քաղաքակիրթ աշխարհի ամբողջ կազմակերպված և մարտնչող պրոլետարիատը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 2, էջ 12)։*

*Մանիֆեստի ռևոլյուցիոն գաղափարների, «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» մարքսիստական նշանաբանի, բանվոր դասակարգի ռևոլյուցիոն ումիասնականության ոգով է ընթացել 1864 թվականի սեպտեմբերի 28-ին, Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի 100 տարի առաջ հիմնադրած բանվորների միջազգային ընկերության՝ I ինտերնացիոնալի (1864—1871 թթ.) գործունեությունը։ Ավելի քան մեկ դար է, ինչ Մանիֆեստի վսեմ գաղափարներով տոգորված դասակարգային թեժ գոտեմարտեր է մղում միջազգային պրոլետարիատը։* Մանիֆեստի *գաղափարներով է պայքարել ու հաղթանակել Ռուսաստանի հերոսական բանվոր դասակարգը՝ մերձավոր դաշնակից ունենալով աշխատավոր գյուղացիությանը։ Նրա գաղափարները մարմնացում են գտել և հաղթանակել ՍՍՌՄ-ում, ժողովրդական դեմոկրատիայի երկրներում։ Այժմ դրանք սավառնում են աշխարհի բոլոր մայրցամաքներում, մոբիլիզացնում պրոլետարիատի ուժերը, ամրապնդում խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար մարտնչող աշխատավոր մասսաների հավատը։* Մանիֆեստի *ոգով է ներծծված Սովետական Միության կոմունիստական պարտիայի նոր, լենինյան ծրագիրը՝ մեր դարաշրջանի կոմունիստական մանիֆեստը։*

## 2

*Մարքսիզմի տարածումը, որ ամեն մի ժողովրդի քաղաքական կյանքի և հասարակական մտքի բախտորոշ իրադարձությունն է, յուրաքանչյուր երկրում պատմականորեն ընթացել է առանձին ճանապարհով, տեղի և ժամանակի պայմանների համեմատ։ XIX դարի 40—90-ական թվականներին Ռուսաստանի առաջադեմ միտքը, ցարիզմի անլուր հալածանքների և վայրի կամայականությունների պայմաններում, որոնում էր ռևոլյուցիոն ճիշտ թեորիա։ Նա այդ գտավ «...չարչարանքով, անլուր տանջանքների ու զոհերի, չտեսնված ռևոլյուցիոն հերոսության, անհավատալի եռանդի ու անձնվեր որոնումների, ուսման, պրակտիկայում փորձելու, հիասթափումների, ստուգման, Եվրոպայի փորձի զարգացման կեսդարյա պատմությամբ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 31, էջ 11)։*

*Մարքսիստական, սոցիալ-դեմոկրատական գրականության հայերեն հրատարակության առաջին փորձերը կատարեցին ռուսական կենտրոնական քաղաքներում և Եվրոպայում սովորող հայ ուսանողները։ 1880-ական թվականներից սկսած արտասահմանում սովորող առանձին հայ ուսանողներ անձնական կապեր են հաստատում Գ. Պլեխանովի հետ, ծանոթանում «Աշխատանքի ազատագրություն» խմբի գործունեությանը։ Հին սոցիալ-դեմոկրատներից մեկը Գ. Ղարաջյանն էր, (Ս. Տ. Արկոմեդ), որը 1886 թվականին Ժնևում առանձնապես ծանոթացել էր Գ. Պլեխանովի հետ։*

*1886 թվականից մինչև 1889 թվականի աշնանը Գ. Ղարաջյանը արտասահմանում հաճախ հանդիպում էր Գ. Պլեխանովի և մասամբ էլ՝ Վ. Զասուլիչի հետ։—«Գ. Պլեխանովին և նրա ընկերներին մենք տեսնում էինք այն ժամանակ մտքի և գործի հերոսական դերի մեջ,— պատմում է Գ. Ղարաջյանը,— նրանք հերոսներ էին և՛ բարոյական, և՛ քաղաքական մտքով» (Գ. Ղարաջյան— Հեղափոխականի* հիշատակարանը, *ձեռագիր աշխատություն, մաս 2, էջ 43։ Տե՛ս ՍՄԿՊ ԿԿ-ին կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալի արխիվ, Գ. Ղարաջյանի ֆոնդի նյութերը)։ Հենց այս ժամանակ էլ, Մարքսի մահից 4 տարի անց, Ֆ. Էնգելսի կենդանության օրոք, նախնական քայլեր են արվում* Մանիֆեստը *հայերեն թարգմանելու և հրատարակելու ուղղությամբ։ 1887 թվականին, Գ. Ղարաջյանը ֆրանսերենից՝ ռուսերենի հետ համեմատելով, հայերեն է թարգմանում* Կոմունիստական պարտիայի մանիֆեստը, *իսկ ռուսերենից՝ Դիկշտեյնի* Ո՞վ ինչով է ապրում *գրքույկը։* Մանիֆեստի *թարգմանությունը Գ. Ղարաջյանը մի հոդվածի հետ միասին ուղարկում է Մարսել, Արմե–*

նիա թերթի խմբագիր Մկրտիչ Փորթուգալյանին, թերթում հրատարակելու հա-
մար։ Դա այն ժամանակ էր, երբ Արմենիան մրցանակաբաշխություն էր հայ-
տարարել Արևմտահայաստանի բարենորոգումների կապակցությամբ։ «Հոդվա-
ծում ես մանրամասն քննություն էի անում, թե ինչ ուղղությամբ, միջոցներով
և մեթոդներով պետք է քաղաքական-հեղափոխական գործունեություն կիրառել
Տաճկաստանում տաճկահայ մասսաներում, որպեսզի նրանք կարողանան ինք-
նավարություն նվաճել սուլթանների բռնակալական պետության մեջ» (տե՛ս
«Վերելք» ամսագիր № 4—5, 1924 թ. Թ. Ավդալբեկյանի «Կոմունիստական
մանիֆեստի հայերեն թարգմանությունները, 1887-ից մինչև 1924 թթ.» հոդ-
վածը)։ Նյութի ընդարձակության պատճառով Արմենիան Գ. Ղարաջյանի Մա-
նիֆեստի թարգմանությունը չի հրատարակել (տե՛ս Արմենիա, № 23, 19
դեկտեմբերի, 1888 թ.)։

Մանիֆեստի այդ անդրանիկ թարգմանության պատմությունը մշուշապատ
է։ Փաստն այն է, որ Մանիֆեստի հայերեն թարգմանությանը Ֆ. Էնգելսը
առաջին անգամ անդրադարձել է 1888 թվականի հունվարի 30-ին գրած առա-
ջաբանում։ «Հայերեն թարգմանությունը,— գրել է Ֆ. Էնգելսը,— որ մի քանի
ամիս առաջ պետք է տպագրվեր Կոստանդնուպոլսում, ինչպես ինձ հաղորդել
են, լույս չտեսավ այն պատճառով միայն, որ հրատարակիչը վախեցել է գիրքը
լույս ընծայել Մարքսի անունով, իսկ թարգմանիչը չի համաձայնել Մանիֆես-
տը ներկայացնել որպես իր աշխատությունը» (Կ. Մարքս, և Ֆ. Էնգելս, Կո-
մունիստական պարտիայի մանիֆեստը, Հայպետհրատ, 1960, էջ 14)։ 1890
թվականին Մանիֆեստի գերմաներեն նոր հրատարակության առաջաբանում
Ֆ. Էնգելսը կրկին հիշատակում է այդ գրքի հայերեն առաջին հրատարակու-
թյան մասին։

1890-ական թվականներին Գ. Ղարաջյանը արտասահմանից գալով Կով-
կաս, իր հետ բերում է մարքսիստական գրականություն, այդ թվում՝ Կապի-
տալի առաջին հրատարակությունը (առաջին հատորը լույս է տեսել 1867 թ.),
Կոմունիստական պարտիայի մանիֆեստը, Գ. Պլեխանովի գրքերը, «Աշխա-
տանքի ազատագրություն» խմբի հրատարակություններից[1]։ Սոցիալիստական
գաղափարներով հետաքրքրվում էին ուսանողները, Պետերբուրգի, Մոսկվայի,
Կիևի, Տոմսկի, Բաքվի, Թիֆլիսի և այլ քաղաքների բարձրագույն դպրոցներում
սովորող հայ երիտասարդները։

Հայտնի է, որ 90-ական թվականներին Վ. Ի. Լենինի ծավալած քաղաքա-
կան-տեսական գործունեությունը, համարձակ առաջ քաշած գաղափարները և
կանխատեսումները, մարքսիզմը Ռուսաստանում տարածելն ու ստեղծագործա-
բար կիրառելը, մարքսիստական տեսության աղճատումների փորձերի և օպոր-

1 Հարկավոր է նկատել, որ հետագայում՝ 1910 թ., Գ. Պլեխանովը գրեց Գ. Ղարաջյանի
Բանվորական շարժումը և սոցիալ-դեմոկրատիան Կովկասում գրքի առաջաբանը։ Բարձր գնա-
հատելով այդ աշխատությունը, Գ. Պլեխանովը գրել է, թե այն «...ընթերցողի հիշողության
մեջ վերականգնում է ռուսական սոցիալ-դեմոկրատիայի ամենալավ տրադիցիաները...»։ Նույն
թվականին ՌՍԴԲՊ Կենտկոմի կողմից Վ. Ի. Լենինը նյութական օգնություն ցույց տվեց հեղի-
նակին, տպարանից վերցնելու աշխատության 2000 օրինակը։ Գ. Ղարաջյանի վերոհիշյալ աշ-
խատության հրատարակությունը ողջունել է բոլշևիկյան Սոցիալ-դեմոկրատ թերթը և հանձնա-
րարել ընթերցողներին (տե՛ս Սոցիալ.-դեմոկրատ, № 15—16 12 (30) սեպտեմբեր, 1910 թ.,
էջ 14)։



տունիզմի դեմ մղված հետևողական անհաշտ պայքարը, պարտիական կադրե-
րին, բանվորական մասսաներին պրոլետարական ռևոլյուցիայի ոգով դաստիա-
րակելը, Ռուսաստանի մասսայական բանվորական շարժման նոր փորձի գի-
տական ընդհանրացումը մարքսիզմի զարգացման նոր, լենինյան էտապի սկիզ-
բը դրեցին։ Այդ ժամանակաշրջանից սկսած ավելի են ծավալվում մարքսիստա-
կան աշխատությունների հայերեն հրատարակությունները։

Մուրճ, Տարազ և այլ պարբերականներում 90-ական թվականներից ա-
ռանձին հոդվածներում մեջբերումներ էին արվում Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի
աշխատություններից, ամբողջական պարբերություններ թարգմանաբար օգտա-
գործվում Մանիֆեստից, Կապիտալից և այլ երկերից։ 1895 թվականին, Ֆ.
Էնգելսի մահվան առթիվ Մուրճը հրապարակեց նրա կենսագրությունը, որտեղ
դրվատվում էին Ֆ. Էնգելսի արժանիքները, նրա մտերմությունը Կ. Մարքսի
հետ։

Մարքսիստական աշխատությունների հայերեն առաջին թարգմանություն-
ների գործում երախտիք ունի հայ ազգային նարոդնիկական շարքերից ելած
սոցիալիստ Հովսեփ Աթաբեկյանցը։ Երկու տարի Պետերբուրգի համալսարա-
նում ուսանելուց հետո նա մեկնում է Գերմանիա, սովորում Հոհենհայմի գյու-
ղատնտեսական ակադեմիայում, այն ավարտելուց հետո գնում է Շտուտգարդ։
Այստեղ, գերմանական սոցիալ-դեմոկրատիայի և մարքսիստական գաղափա-
րախոսության օջախներից մեկում, երիտասարդ Աթաբեկյանցը 90-ական թվա-
կաններին մոտիկից հաղորդակից է լինում քաղաքական կյանքին, տարվում
գիտական սոցիալիզմի գաղափարներով։ 1893—1894 թվականներին Շտուտ-
գարդում նա գերմաներենից հայերեն է թարգմանում Կոմունիստական մա-
նիֆեստը և Ֆ. Էնգելսի Սոցիալիզմի զարգացումը ուտոպիայից դեպի գիտու-
թյուն աշխատությունը։ Մանիֆեստի հայերեն թարգմանության հրատարակու-
թյան համար համառոտ առաջաբան ստանալու ակնկալությամբ 1894 թվակա-
նի նոյեմբերի 1-ին Հ. Աթաբեկյանցը նամակով[1] դիմում է Ֆ. Էնգելսին։ Նա-
մակի փաստն ինքնին ուշագրավ է։ Դրանով հեղինակը համառոտակի ծանո-
թացնում է Հայաստանի, հատկապես հայ ազգային-ազատագրական շարժման,
կովկասահայերի առաջադիր խնդրի և այլ հարցերի հետ։ Հ. Աթաբեկյանցը
ճիշտ է նկատում, որ կովկասահայերի «...պատմությունը, ինչպես նաև նրանց
հեղափոխական շարժումը զուգընթաց է Ռուսաստանի պատմությանը։ Կռիվ
միահեծանության դեմ,— ահա այն անկյունաքարը, որին դեմ են առնում Ռու-
սաստանի կայսրության եվրոպական ռեակցիայի հսկայական պահեստադնդի
բոլոր ժողովուրդները» (տե՛ս, Հանդես, № 2—3, էջ 325)։ Բայց նամակում, ինչ-
պես ճիշտ կերպով մեկնաբանել է ակադեմիկոս Ա. Գ. Հովհաննիսյանը, «Աթա-
բեկյանցը բացահայտվում է որպես 80-ական թվականների հայ ազգային նա-
րոդնիկական շարքերից ելած հայ մտավորականության այն բացառիկ ներկա-
յացուցիչներից, որոնք 90-ական թվականների կեսերին տարված էին այն
մտքով, թե հայ ազգային-ազատագրական շարժումը պիտի օգտագործվի Ռու-
սաստանի և Թուրքիայի հայ գյուղական և քաղաքային մասսաների մեջ գիտա-

1 Հ. Աթաբեկյանցի նամակը Ֆ. Էնգելսին առաջին անգամ հրապարակվել է Հայկական ՍՍՌ
ԳԱ պատմաբանասիրական Հանդեսի 1959 թ. № 2—3-ում, ակադեմիկոս Ա. Գ. Հովհաննիսյանի
մեկնաբանություններով։ Տե՛ս Аш. Иоаннисян, Письмо Иосифа Атабекянца Ф. Энгельсу по поводу перевода на армянский язык Коммунистического манифеста, стр. 320—327:

կան սոցիալիզմի գաղափարները պրոպագանդելու համար։ Այս մի ժամանակ
էր, երբ նարոդնիկների քարոզած գյուղական սոցիալիզմն իր գաղափարական
գիրքերը սկսում էր զիջել պրոլետարական սոցիալիզմին» (տե՛ս Հանդես,
№ 2—3, էջ 327)։
Հ. Աթաբեկյանցը հետևողական մարքսիստ չէր։
Ֆ. Էնգելսը 1894 թվականի նոյեմբերի 23-ին Հ. Աթաբեկյանցին պատաս-
խանում է նամակով, շնորհակալություն հայտնում Մանիֆեստի հայերեն
թարգմանության համար և նշում, որ չի կարող առաջաբան գրել, բայց օգտվե-
լով առիթից արտահայտում է իր դրական դիրքը հայ ժողովրդի ազգային-քա-
ղաքական ազատագրության գործում, որը և դարասկզբին ուղենիշ դարձավ
հայ ռևոլյուցիոն մարքսիստների սկզբունքային վարքագծի մշակման համար [1]։
1900—1902 թվականներին Մանիֆեստի հայերեն թարգմանության փոր-
ձեր են կատարվում Թիֆլիսում, Ժնևում և այլ տեղերում։ 1901 թվականին Թիֆ-
լիսում Մանիֆեստը թարգմանվում է հայերեն՝ ռուսերեն երկրորդ հրատարա-
կությունից (Գ. Վ. Պլեխանովի 1882 թ. թարգմանությունից)։ Ժնևում կատար-
վում է Մանիֆեստի նոր թարգմանություն արևմտահայերեն (թարգմանությունը
կատարվել է Պոլ Լաֆարգի ֆրանսերեն թարգմանությունից), սակայն դրանք
լույս չհրապարակվեցին։ Այս ամենը հայ իրականության մեջ մարքսիզմի գաղա-
փարների, ավելի ճիշտ մարքսիստական գրականության տարածման նախ-
նական քայլերն էին։
Հայ հասարակական-քաղաքական կյանքի երևույթներից մեկն այն է, որ
օգտվելով դեմոկրատիայի այն ժամանակվա թուլությունից, նացիոնալիստա-
կան պարտիաներն ու հոսանքները՝ դաշնակցությունը, հնչակյանները փոր-
ձում էին հարմարվել ստեղծված իրադրությանը, մարքսիզմը ծառայեցնել սոսկ
ազգային նախակարգված հարցի լուծմանը, «Թուրքահայ հարցի» լուծմանը։
Սխալ է այն կարծիքը, թե իբր հայ իրականության մեջ մարքսիզմի առա-
ջին տարածողները հնչակյաններն են եղել։ Ճշմարտությունն այն է, որ 1894
թվականին Ժնևում (№ 1-ի հրատարակության վայրը ցույց է տված Աթենքը,
իսկ № 2-ինը՝ Լոնդոնը) հայերեն հրատարակվող հնչակյան պարտիայի եռամսյա
Գաղափար հանդեսի հունիս-սեպտեմբերի համարներում տպագրվել են Կո-
մունիստական պարտիայի մանիֆեստի երկու գլուխները՝ Բուրժուա ու պրոլե-
տարի (տե՛ս Գաղափար, № 1, 1894 թ., էջ 15—32) և Պրոլետարներն ու կոմու-
նիստները (№ 2, էջ 107—117)։ Թարգմանությունը կատարել են Մարո և Ավե-
տիս Նազարբեկյանները [2], Գաղափարի № 2-ի 184-րդ էջում ազդարարվում էր,
թե՝ մամուլի տակ է առանձին գրքույկի ձևով Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի Կոմու-
նական կուսակցության մանիֆեստը։ Բայց այն ո՛չ միայն առանձին բրո-
շյուրով չի հրատարակվել, այլ հաջորդ գլուխները լույս չեն տեսել ոչ Գաղափա-
րում և ոչ էլ հնչակյան մյուս օրգաններում։ Չի կարելի բացառել այն փաստը,
որ հնչակյան առանձին ղեկավար գործիչներ օգտագործում էին մարքսիստա-

1 Ֆ. Էնգելսի Հ. Աթաբեկյանցին գրած նամակը առաջին անգամ տպագրվել է Շտուտգար-
տում հրատարակվող «Dokumentus der sosialismos» («Սոցիալիզմի փաստաթղթեր») ժողովա-
ծուում։ Այնուհետև այդ նամակը թարգմանվեց հայերեն և վրացերեն, տպագրվեց Պրոլետարիատի
կռիվը թերթի 1903 թ. № 2—3-ում (Պրոլետարիատիս Բրձոլայի նույն թվականի № 5—6-ում)։
2 Գաղափարում Մանիֆեստի վերնագիրը թարգմանվել է Կոմունական կուսակցության
մանիֆեստը։ Թարգմանություն Տ-ին Մ (տիկին Մ—Մարո)։ Ուսումնասիրությունները հիմք են
տալիս եզրակացնելու, որ թարգմանությունը կատարել են Մարո և Ավետիս Նազարբեկյանները։



կան ֆրազոլոգիան աշխատավորական միջավայրում մանրբուրժուական պրո-
պագանդա մղելու համար։
Հայաստանում և հայ իրականության մեջ ռևոլյուցիոն մարքսիզմի, գիտա-
կան կոմունիզմի գաղափարների առաջին և հետևողական տարածողները, ան-
շուշտ, եղել են լենինյանները։ Դա հայ մարքսիստների ռևոլյուցիոն գործունեու-
թյան անբաժան մասն է։ Կոմունիստական պարտիայի մանիֆեստի հայերեն
առաջին հրատարակությունը եղել է մարքսիզմի զարգացման լենինյան էտա-
պում։

3

Հայաստանում և հայ իրականության մեջ ռևոլյուցիոն մարքսիզմի գա-
ղափարների տարածումը, Կոմունիստական մանիֆեստի և սոցիալիստական
գրականության մյուս երկերի հրատարակությունը սերտորեն կապված է
Վ. Ի. Լենինի հավատարիմ աշակերտներ Ստ. Շահումյանի, Ս. Սպանդարյանի
և ապա Ա. Մյասնիկյանի, Ս. Կասյանի, Ա. Մռավյանի, Ա. Միկոյանի, Վ. Ավա-
նեսովի, Վ. Տերյանի և քաղաքական այլ գործիչների անվան հետ։ Առանձնա-
պես մեծ է Ստ. Շահումյանի երախտիքը, որն իր զինակիցների հետ միասին
դարասկզբին ընդհատակի ծանր պայմաններում հիմք է դրել մարքսիզմ-լենին-
իզմի կլասիկների աշխատությունների հայերեն գիտական հրատարակու-
թյանը։
Անցյալ դարի 90-ական թվականներին Անդրկովկասում հանդես են գալիս
մարքսիստական առաջին խմբերն ու խմբակները, որոնք ունեին ինտերնացիո-
նալ կազմ։ Երկրամասում բանվորական ռևոլյուցիոն և ագրարային շարժում-
ներն աճում էին ամենից առաջ այնտեղ, ուր բանվորների կոմպակտ մասսա
կար։
Հայ իրականության մեջ մարքսիզմի տարածման գործում դարասկզբին
կարևոր դեր է խաղացել Հայ սոցիալ-դեմոկրատների միությունը, որը ձևա-
վորվել է 1902 թ. ամռանը՝ Ստ. Շահումյանի, Բ. Կնունյանցի և Ա. Զուրաբյա-
նի նախաձեռնությամբ։ Միության ղեկավար կազմում էին նշանավոր ռևոլյու-
ցիոներներ՝ Մ. Մելիքյանը, Ա. Խումարյանը, Ս. Խանոյանը, Ռ. Դաշտոյանը,
Դ. Շահվերդյանը, Ա. Երզնկյանը և ուրիշներ։ Լինելով ՌՍԴԲՊ անդամներ,
նրանք պատմական այդ բախտորոշ ժամանակաշրջանում միանգամայն ճիշտ
ըմբռնելով իրենց խնդիրը, հայ պրոլետարիատի շարքերում մայրենի լեզվով
տարածում էին մարքսիստական գրականություն, լուսավորում աշխատավոր-
ների ազատագրական պայքարի ուղին։
Կովկասում լենինյան գաղափարների տարածմանը, բոլշևիկյան կազմա-
կերպությունների ձևավորմանն ու գործունեությանը խոշոր չափով օգնեց
Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ, ՌՍԴԲՊ II համագումարից հետո, 1904
թվականի փետրվարին, ՌՍԴԲՊ Կենտկոմի հրատարակչությանը կից ստեղծված
վրացերեն և հայերեն լեզուներով սոցիալ-դեմոկրատական գրականության
ժնևյան հանձնաժողովը։ Մարքսիստական գրականության պահանջը ռևոլյու-
ցիոն Կովկասում օրավուր աճում էր։ Երկրամասի բոլշևիկները Վ. Ի. Լենինին
և ՌՍԴԲՊ Կենտկոմին գրած նամակներում թախանձագին խնդրում էին՝ որ-
քան կարելի է արտասահմանից ավելի շատ հայերեն և վրացերեն գրականու-
թյուն ուղարկել։ ՌՍԴԲՊ կովկասյան միութենական կոմիտեին 1903 թվականի

հոկտեմբերի 20-ին ուղարկած նամակում Վ. Ի. Լենինը և Գ. Վ. Պլեխանովը գրել են. «Մենք այժմ եռանդուն մտածում ենք այստեղ վրացական և հայկական գրականության հրատարակության կազմակերպման մասին։ Այդ գործին ձեռնամուխ են եղել ձեռնհաս ընկերներ, փող հույս ունենք ճարել։ Հարկավոր է օգնություն և՛ գրականությամբ, և՛ միջոցներով» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 34, էջ 199)։

1904 թվականի փետրվարի 22-ին ՌՍԴԲՊ Կենտկոմը հաստատում է վրացերեն և հայերեն սոցիալ-դեմոկրատական գրականության հրատարակման հանձնաժողովի կազմը, իսկ 24-ից, Կենտկոմի կողմից հաստատված կանոնադրության համաձայն, ձեռնամուխ են լինում հրատարակչական աշխատանքներին։ Վ. Ի. Լենինի հանձնարարությամբ հանձնաժողովի աշխատանքները գլխավորում էր Ստ. Շահումյանը։ Ժնևյան հանձնաժողովը նյութական ու բարոյական օգնություն ստանալու նպատակով Բեռլինում, Բեռնում, Ժնևում և այլ քաղաքներում ստեղծում է առանձին խմբեր, իր շուրջն է համախմբում Եվրոպայի հայ ուսանողների միության որոշ անդամների։

ՌՍԴԲՊ Կենտկոմի Ժնևի պարտիական տպարանը ձեռք է բերում հայկական տառեր և ձեռնամուխ է լինում մարքսիստական թռուցիկների, կոչերի, բրոշյուրների և գրքերի հրատարակությանը։ Միայն 1904 թվականի մարտին Ժնևի պարտիական տպարանում լույս են տեսել ՌՍԴԲՊ կանոնադրությունը՝ 700 օրինակ, ռուս-ճապոնական պատերազմի առթիվ ՌՍԴԲՊ Կենտկոմի՝ Ռուս պրոլետարիատին պրոկլամացիան՝ 7000 օրինակ, Ծրագիր ռուս. սոց. դեմ. բան. կուսակցության (ընդունված երկրորդ հերթական համագումարում) 7000 օրինակ, Ծանուցում Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցության երկրորդ հերթական համագումարի մասին՝ 2300 օրինակ, ՌՍԴԲՊ II համագումարի բանաձևերը՝ 2300 օրինակ։ Հրատարակվեցին Վ. Ի. Լենինի գրած ՌՍԴԲՊ Կենտկոմի մի քանի թռուցիկներ, այդ թվում՝ Մայիսի մեկը, տպագրության պատրաստվեց Վ. Ի. Լենինի Գյուղական չքավորությանը բրոշյուրը։ Բոգդան Կնունյանցը, որ այդ ժամանակ վերադարձել էր ՌՍԴԲՊ II համագումարից և գլխավորում էր Բաքվի ռևոլյուցիոն շարժումը, պարտիական կազմակերպություններին զինում էր լենինյան գաղափարներով, ժնևյան հանձնաժողովից անընդհատ մարքսիստական գրականություն էր պահանջում։ Ստ. Շահումյանը ձեռնարկում է մարքսիստական մի շարք նշանավոր երկերի, այդ թվում՝ Կ. Մարքսի Վարձու աշխատանք և կապիտալ, Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի Կոմունիստական պարտիայի մանիֆեստը և այլ գործերի թարգմանությանն ու հրատարակությանը։ Ժնևյան հայկական հրատարակչական գործին օգնելու նպատակով Ստ. Շահումյանը Բեռլինից Ժնև է հրավիրում իր դասընկերներից Մ. Մանուչարյանին (Զար)։ Նա ձեռնարկում է բոլոր միջոցները Մանիֆեստի հրատարակությունն արագացնելու համար։ Իր ձեռքի տակ ունենալով Մանիֆեստի մինչև այդ կատարված ևս երկու ձեռագիր թարգմանություններ, Մ. Մանուչարյանի օգնությամբ Շահումյանը կարճ ժամանակամիջոցում ավարտում է Կոմունիստական պարտիայի մանիֆեստի հայերեն թարգմանությունը և հանձնում տպագրության։ Իր թարգմանությունը Շահումյանը կատարել էր գերմաներենից։ Չնայած առողջական ծանր վիճակին, նա օր ու գիշեր աշխատում էր, թարգմանության տեքստը նորից ու նորից համեմատում գերմաներեն և այլ լեզուներով հրապարակի վրա եղած հրատարակությունների հետ։



Շահումյանը հետևում էր Մանիֆեստի տպագրությանը, խմբագրում շարվածքը։ «Հենց այժմ իմ աչքի առաջ, ինչպես կենդանի,— 1922 թվականին գրել է Մ. Մանուչարյանը,— տեսնում եմ գրաշարների կողքին, տառարկղների վրա գլուխը կախած Ստեփանին, մի փոքրիկ տպարանում, որտեղ տպագրվում էին Իսկրան և մեր գրքույկները» (Զար. «Ստեփանն արտասահմանում», Բակինսկի ռաբոչի, № 241, 1922 թ.)։

Վ. Ի. Լենինն օգնում էր Մանիֆեստի հայերեն հրատարակությանը։ Թե որքան ուշադիր և հոգատար էր ժնևյան հրատարակչական հանձնաժողովի նկատմամբ Իլյիչը, ցույց է տալիս նաև այն փաստը, որ հայերեն ու վրացերեն լույս տեսած գրքերի վերջին էջերում ամեն անգամ տրվում է հետևյալ հասցեն՝ V. Oulianov 3 gic di la Coline Pres pant Neùt, Ceneve Suisse, для Комиссии։ Դա Վ. Ի. Լենինի ժնևյան հասցեն էր։

Այսպիսով, հայ իրականության մեջ 1904 թվականի ամռանը, Վ. Ի. Լենինի օգնությամբ, Ստ. Շահումյանի թարգմանությամբ և խմբագրությամբ, ՌՍԴԲՊ Կենտկոմի Ժնևի տպարանում առաջին անգամ լույս է տեսնում «Կոմունիստական պարտիայի մանիֆեստը», Մարքսի և Էնգելսի երեք առաջաբաններով (1872, 1883 և 1890 թվականների գերմաներեն հրատարակությունների)։ Ի տարբերություն Մանիֆեստը թարգմանելու և հրատարակելու բոլոր նախորդ փորձերին, առաջին անգամ, շնորհիվ Ժնևի բոլշևիկյան հրատարակության, գիտական կոմունիզմի ծրագրային այդ մեծ փաստաթուղթը մատչելի է դառնում հայ պրոլետարիատին և աշխատավորական մասսաներին, տարածվում նրանց շրջաններում։ Մանիֆեստի ժնևյան հրատարակությունն իր քաղաքական նշանակությունից բացի կարևոր դեր խաղաց նաև մարքսիստական գրականության հետագա թարգմանությունների գործում։ Ստ. Շահումյանը ստեղծագործական մոտեցում ցուցաբերելով Մանիֆեստի թարգմանությանը, հարազատ է մնացել տեքստին, հաղթահարելով բազմաթիվ դժվարություններ, ստեղծել և հայոց լեզվի ու գիտական շրջանառության մեջ է մտցրել մի շարք տերմիններ, որոնք մեծապես օգնեցին մայրենի լեզվի մարքսիստական, հասարակական-քաղաքական տերմինոլոգիայի մշակմանը՝ ռևոլյուցիոն գրականության հայերեն թարգմանությունների ընթացքում։ Թողնելով մի այլ առիթի Կոմունիստական պարտիայի մանիֆեստի հայերեն հրատարակությունների թարգմանությունների իմաստային և լեզվա-ոճական վերլուծությունը, նշենք, որ ժնևյան հրատարակությունում լավ են պահպանված բնագրի ուժն ու ոճը։ Վերցնենք, թեկուզ, մի այսպիսի օրինակ։ Մանիֆեստի գերմաներեն հրատարակության մեջ ասված է. «Alte Evroppe...», ռուսերեն 1954 թվականի հրատարակության մեջ ասված է. «Все силы старой Европы»։ Ստ. Շահումյանն այս արտահայտությունը թարգմանել է «Ալևոր (զառամյալ) Եվրոպայի բոլոր զորությունները...»։ Մանիֆեստի հետագա հրատարակություններում այդ միտքը թարգմանված է «Հին Եվրոպայի բոլոր ուժերը...»։ Մեր կարծիքով Մանիֆեստում խոսքը ոչ թե Եվրոպայի հին լինելու մասին է, այլ Եվրոպայի ծերացածության մասին, այն մասին, որ բուրժուական-կապիտալիստական Եվրոպան արդեն իր դարն ապրել է։

Հետագայում, սովետական իշխանության տարիներին, ձեռնարկելով Մանիֆեստի նոր թարգմանությանը, Ս. Կասյանը ճիշտ է նկատել, թե Մանիֆեստը «...կլասիկ ստեղծագործություն է. թարգմանությունն էլ պետք է կարելույն չափ նմանեցնել դրան։ Պետք է այն ոչ թե բառացի թարգմանել՝ առանց ըմբռ-

ների, առանց խորապես պատկերացնելու այդ անմահ գործի հանճարեղ մտքերի հակիրճ ձևակերպումները, միաժամանակ ոտնակոխ անելով թարգմանության լեզվի հատկությունները, այլ տալ անսխալ կերպով այդ ձևակերպումները, պահել այդ աշխատության շեշտի ու տոնի հսկայական ուժը, ոճի ուրույնությունը, ընթերցման սահունությունը, բոլոր դեպքերում էլ պահպանելով դյուրըմբռնելիությունն ու հայոց լեզվի օրենքները»[1]:

Ստ. Շահումյանը եռանդուն կերպով աշխատում էր ընդարձակել մարքսիստական հայերեն հրատարակությունները, աշխատավորության մեջ լայնորեն պրոպագանդել գիտական կոմունիզմի գաղափարները: Գտնվելով արտասահմանում, նա մեծ ջանք թափեց Եվրոպայի հայ ուսանողների միությունը դաշնակցության ազդեցությունից ազատելու ուղղությամբ: 1902—1905 թվականներին Բեռլինի սոցիալ-դեմոկրատական կոմիտեի գործունյա և անհաշտ անդամներից մեկն էր նա: 1905 թվականի ապրիլին Վ. Ի. Լենինի հանձնարարությամբ ու օգնությամբ նա մասնակցում է «Եվրոպայի հայ ուսանողների միության» 6-րդ կոնգրեսին: Համագումար գնալուց առաջ Շահումյանը Իլյիչին հայտնում է, թե «Միությունը» մինչև վերջերս գտնվում էր դաշնակցության ազդեցության տակ, որը մենաշնորհ կերպով օգտագործում էր Եվրոպայի գրեթե ամբողջ հայ ուսանողությանը, որ սոցիալ-դեմոկրատական աշխատանքի շնորհիվ նրան հաջողվել է ուսանողության զգալի մասը թեքել բոլշևիկների կողմը: Այնուհետև նա պատմում է, որ կոնգրեսում հետամուտ է լինելու, «որ միությունը ցրվի և հայ ուսանողության բոլոր սոցիալ-դեմոկրատ տարրերը համախմբվեն սոցիալ-դեմոկրատիայի ղեկավարության ներքո»[2]: Կոնգրեսում իր շուրջը համախմբելով ռևոլյուցիոն պատգամավորներին, Շահումյանը տրոհում է միությունը: Ապրիլի 8-ին կոնգրեսում հրապարակվում է Շահումյանի կազմած մանիֆեստը՝ ուղղված Եվրոպայում սովորող հայ ուսանողներին, որտեղ հանգամանորեն վերլուծում է ստեղծված իրադրությունը, քննադատում դաշնակցության գաղափարախոսությունը: Ապրիլի 30 (17)-ին Մանիֆեստը հրատարակվեց բոլշևիկյան Վպերյոդ թերթում:

Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի «Կոմունիստական պարտիայի մանիֆեստի» հայերեն առաջին հրատարակությունը նշանավոր իրադարձություն էր հայ հասարակական մտքի զարգացման, Հայաստանում մարքսիզմի տարածման և բոլշևիկյան կազմակերպությունների պատմության մեջ:

## 4

Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի Կոմունիստական պարտիայի մանիֆեստը նախառևոլյուցիոն շրջանում հայերեն լեզվով վերահրատարակվեց 1906 թվականին՝ Բաքվում: Մանիֆեստը բազմիցս հայերեն հրատարակվեց ու տարածվեց

[1] Տե՛ս Ս. Կասյան, Մանիֆեստի հայերեն թարգմանությունների առթիվ. Կոմունիստական մանիֆեստ, գերմաներենից թարգմանեց Ս. Կասյան, Երևան, 1927, էջ IV: Դժբախտաբար Ս. Կասյանը, ինչպես երևում է Մանիֆեստի հայերեն հրատարակությունների առթիվ նրա գրած համառոտ առաջաբանից, ծանոթ չի եղել Շահումյանի 1904 թվականի թարգմանությանը:

[2] Տե՛ս ՍՄԿՊ Կենտկոմին կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի կենտրոնական պարտարխիվ, ֆ. 18, ցուց. 34, գ. 36934: Վպերյոդ, № 16, 30 (17) ապրիլի 1905, Պրոլետարի, № 4, 17(3), հուլիսի, 1905 թ., Ապագա (Փարիզ), № 6, 15(2) հուլիսի, 1905 թ.:



Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի հաղթանակից հետո 1918 թվականին Մոսկվայում Պ. Մակինցյանի թարգմանությամբ լույս է տեսնում Մանիֆեստի նոր հրատարակությունը: Մինչև այժմ Մանիֆեստը հայերեն լեզվով հրատարակվել է 25 անգամ, ավելի քան 150 հազար օրինակ տպաքանակով: Այն հայերեն հրատարակվել է նաև արտասահմանում՝ Ամերիկայում, Բուլղարիայում, Հունաստանում և այլուր: 1933 թվականին Ֆրանսիայի կոմունիստական պարտիայի հայկական սեկցիան Աթենքում Ժակ Դյուկլոյի առաջաբանով, Կ. Մարքսի մահվան 50-ամյակի առթիվ հրատարակել է Մանիֆեստը[1]:

Մարքսիզմի կլասիկների երկերի, մասնավորապես Մանիֆեստի հայերեն հրատարակության գործում մեծ եռանդ է նվիրաբերել նշանավոր ռևոլյուցիոներ Ս. Կասյանը (Տեր-Գասպարյան):

Կոմունիստական պարտիայի մանիֆեստը աշխարհում ամենատարածված գիրքն է: Միայն ՍՍՌՄ-ում 1917—1963 թվականներին այն հրատարակվել է մոտ 80 լեզվով: Մանիֆեստի գաղափարները խոր զարգացում են գտել Վ. Ի. Լենինի աշխատություններում, կոմունիստական պարտիայի մեծ գործերում, ՍՄԿՊ XX և XXII համագումարների որոշումներում, ՍՄԿՊ նոր ծրագրում:

Սովետական Միության կոմունիստական պարտիան հաղթել և հաղթում է՝ իր ամբողջ գործունեության մեջ ղեկավարվելով մարքսիզմ-լենինիզմով: Այժմ, երբ չինական կոմպարտիայի ղեկավարները բռնել են միջազգային կոմունիստական շարժումը պառակտելու, մարքսիզմի կարևորագույն դրույթները ռևիզիայի ենթարկելու և մարքս-լենինյան ուսմունքի սկզբունքներն ամենակոպիտ կերպով աղճատելու ավանտյուրիստական ուղին, հսկայական նշանակություն ունի Պեկինի վայ տեսաբանների՝ չինական ուրացողների հակալենինյան դիրքերի հետևողական մերկացումը:

XX դարը մարքսիստական-լենինյան գաղափարների իրականացման դարն է: Այժմ, քան երբեք աշխարհում ավելի բարձր է հնչում Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի Կոմունիստական պարտիայի մանիֆեստի մարտական կոչը՝ ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք:

[1] Տե՛ս «Մանիֆեստ կոմունիստ կուսակցության», հրատ. ֆրանս. կոմ. կուսի, Աթենք, տպարան Սեան, 1933 թ.:



## Գիտությունը և կյանքը

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՖԻԶԻՈԼՈԳՆԵՐԻ ՖՈՐՈՒՄԸ ԵՐԵՎԱՆՈՒՄ

Ս. Կ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

Հայաստանի ֆիզիոլոգիական ընկերության նախագահ, համագումարի կազմկոմիտեի նախագահի տեղակալ

*Սովետական Միության ամենախոշոր գիտական ընկերություններից մեկը ֆիզիոլոգների համամիութենական ընկերությունն է, որը կազմակերպվել է դեռ 1917 թվականին և կրում է հայրենական ֆիզիոլոգիայի ամենակարկառուն դեմքերից մեկի՝ Ի. Պ. Պավլովի անունը։ Տասնամյակների ընթացքում հիանալի տրադիցիա է ստեղծվել. յուրաքանչյուր չորս տարին մեկ հրավիրվում է ընկերության համագումար, որտեղ քննության են առնվում գիտության այդ բնագավառում ձեռք բերված նվաճումները և նշվում հետազոտությունների նոր հեռանկարներ։ 1959 թվականին Մինսկում տեղի ունեցավ ֆիզիոլոգների ընկերության IX համագումարը, որը որոշում ընդունեց հերթական X համագումարը հրավիրել 1964 թվականին, Երևանում (կազմկոմիտեի որոշմամբ համագումարը տեղի կունենա հոկտեմբերի 22-ից 28-ը)։*

*Այդ մեծ պատիվ էր Հայաստանի ֆիզիոլոգների համար և, միաժամանակ, լուրջ պատասխանատվություն է դնում ընկերության հայկական բաժանմունքի, գիտահետազոտական ինստիտուտների և բուհերի ֆիզիոլոգիայի ամբիոնների աշխատողների վրա։ Բավական է ասել, որ համագումարի աշխատանքներին մասնակցելու են մոտ 1000 դելեգատներ, զեկուցողներ և հյուրեր։ Մեր խնդիրը ո՛չ միայն համագումարի նորմալ աշխատանքների համար անհրաժեշտ պայմաններ ստեղծելն է, այլ, որ ամենից գլխավորն է, այնպես անել, որ Հայաստանի ֆիզիոլոգները ակտիվ կերպով մասնակցեն համագումարի աշխատանքներին, հանդես գան գիտական զեկուցումներով և ելույթներով։*

*Հայաստանի ֆիզիոլոգների ընկերությունը մոտ մեկ տարի է, ինչ այդ նպատակով նախապատրաստական աշխատանքներ է կատարում, ընտրելով գիտական լուրջ արժեք ներկայացնող զեկուցումներ, որոնք պետք է ցույց տան մեր գիտահետազոտական ինստիտուտների, լաբորատորիաների և բուհերի ամբիոնների գործունեության հիմնական արդյունքները։*

*Սովետական Միությունը ամենապրոգրեսիվ ֆիզիոլոգիական գաղափարների հայրենիքն է։ ՍՄԿՊ ծրագրի դրույթն այն մասին, որ մաթեմատիկայի,*



*ֆիզիկայի, քիմիայի, բիոլոգիայի զարգացման բարձր աստիճանը—տեխնիկական, բժշկական, գյուղատնտեսական և այլ գիտությունների վերելքի և արդյունավետության անհրաժեշտ պայմանն է,— սովետական գիտնականների և, մասնավորապես, ֆիզիոլոգների առաջ նոր խնդիրներ դրեց, որոնք կապված են երկրի ժողովրդական տնտեսության և կուլտուրայի զարգացման համար առավել ակտուալ և կարևոր նշանակություն ունեցող պրոբլեմների խոր տեսական մշակման հետ։*

*ՍՄԿՊ Կենտկոմը և ՍՍՌՄ Մինիստրների սովետը 1963 թվականի հունիսի 9-ին ծավալուն որոշում ընդունեցին* «Բիոլոգիական գիտության հետագա զարգացման և պրակտիկայի հետ նրա կապի ամրապնդման միջոցառումների մասին»: *Որոշման մեջ նշվում է, որ աչքի ընկնող նվաճումներ են ձեռք բերվել նաև բժշկական և գյուղատնտեսական գիտությունների բնագավառում։ Այստեղ մեծ դեր խաղաց Ի. Պ. Պավլովի ուսմունքի լայն օգտագործումը պրակտիկ բժշկության և գյուղատնտեսական կենդանիների մթերատվության բարձրացման մի շարք հարցերի տեսական հիմունքները մշակելու իմաստով։ Սովետական ֆիզիոլոգների հետազոտությունները կարևոր դեր խաղացին մարդու կողմից առաջին տիեզերական թռիչքներն իրագործելիս։ Այս նվաճումների հետ միասին միանգամայն տեղին նշվում է, որ մի շարք դեպքերում կենսաբանության բնագավառում հետազոտությունները տարվում են ցածր մակարդակով, տեսականորեն անպտուղ են, չունեն պրակտիկ նշանակություն։ Անբավարար են ուսումնասիրվում, մասնավորապես, բջջի քիմիան ու ֆիզիկան։*

*Պարտիայի Կենտկոմի և Մինիստրների սովետի այդ որոշումը մեծ ազդակ հանդիսացավ ֆիզիոլոգիական գիտության հետագա զարգացման համար։ Վերջին տարիներս Միության մասշտաբով լուրջ աշխատանք է կատարվել ֆիզիոլոգիական հետազոտությունների կոորդինացման ուղղությամբ։ Հետազոտությունները կատարվում են միասնական կոմպլեքսային պլանով, որը հնարավորություն է տալիս խուսափելու ավելորդ զուգահեռականությունից և գիտնականների ուժերն ու նյութատեխնիկական հնարավորությունները կենտրոնացնելու առավել ակտուալ և կարևորագույն պրոբլեմների լուծման վրա։ Շնորհիվ այդ միջոցառումների, և հետազոտությունների խորացման, սովետական ֆիզիոլոգիական գիտությունը նկատելի նվաճումներ ձեռք բերեց կենդանի օրգանիզմի կենսագործունեության նրբագույն մեխանիզմների և օրինաչափությունների բացահայտման բնագավառում։*

*Վերջին տարիների հետազոտություններն առանձնապես բեղմնավոր էին նեյրոֆիզիոլոգիայի և մարդու ու կենդանիների բարձրագույն ներվային գործունեության ուսումնասիրության բնագավառում։ ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի բարձրագույն ներվային գործունեության և նեյրոֆիզիոլոգիայի ինստիտուտում, որը գլխավորում է ՍՍՌՄ ԳԱ թղթակից անդամ Եզրաս Հասրաթյանը, էլեկտրահաշվիչ տեխնիկայի օգտագործումը էնցեֆալոգրաֆիկ գրանցումների վերլուծության մեջ հնարավորություն տվեց պարզելու, որ պայմանական գրգռիչը առաջացնում է գլխուղեղի կեղևի և ենթակեղևային բաժինների էլեկտրական ակտիվության նմանության որոշակի ավելացում (պրոֆ. Մ. Ն. Լիվանովի հետազոտությունները). պրոֆ. Ե. Հասրաթյանի լաբորատորիայում շատ արժեքավոր էքսպերիմենտալ տվյալներ են ստացվել մարդու և կենդանիների մոտ պայմանական ռեֆլեքսների առաջացման և փոխազդեցության վերաբերյալ։ Մեծ արժեք են ներկայացնում այդ բնագավառում կա-*

տարած հետազոտությունների արդյունքները Լենինգրադի Ի. Պ. Պավլովի անվան ֆիզիոլոգիայի ինստիտուտում, Ուկրաինական ԳԱ Ա. Ա. Բոգոմոլեցի անվան ֆիզիոլոգիայի ինստիտուտում, Մոսկվայի և Ռոստովի պետական համալսարանների ֆիզիոլոգիայի ամբիոններում և մի շարք այլ լաբորատորիաներում ու ամբիոններում։ Բեղմնավոր արդյունքներ են ստացվել նաև մարդու և կենդանիների ֆունկցիաների էվոլյուցիայի ֆիզիոլոգիական, բիոքիմիական և ստրուկտուրային հիմունքների ուսումնասիրության, զգայարանների ֆիզիոլոգիայի, բիոքիմիայի, մորֆոլոգիայի և բիոֆիզիկայի, օրգանիզմի կենսագործունեության նեյրո-հումորալ կարգավորման, կորտիկո-վիսցերալ փոխհարաբերությունների, ներվային սիստեմի ֆունկցիոնալ բիոքիմիայի, գյուղատնտեսական կենդանիների ֆիզիոլոգիայի, էկոլոգիական ֆիզիոլոգիայի, կոսմիկական ֆիզիոլոգիայի և ֆիզիոլոգիական գիտության մի շարք այլ բնագավառներում։

Ձեռք բերված նվաճումներն անվիճելի են և պատիվ են բերում սովետական ֆիզիոլոգներին, որոնք մեծ լումա են ներդրել ո՛չ միայն սովետական, այլև համաշխարհային ֆիզիոլոգիական գիտության զարգացման գործում։

Բայց ճիշտ չէր լինի գերագնահատել այդ նվաճումները և հանգստանալ ձեռք բերածով։ Վերջին տասնամյակի բացառիկ նվաճումները ֆիզիկայի, քիմիայի, տեխնիկայի և մաթեմատիկայի բնագավառում նոր հորիզոններ են բացում կենսաբանական գիտության, այդ թվում և ֆիզիոլոգիայի զարգացման համար։ Այդ հնարավորությունները պետք է օգտագործել մաքսիմալ չափով։ Դուցե և քիչ հիմքեր կան ֆիզիոլոգիայի բնագավառում սպասելու նոր սենսացիոն հայտնագործությունների, որոնց ժամանակը, ըստ երևույթին, անցել է, բայց անվիճելի է, որ ֆիզիոլոգիական հետազոտությունների մայրուղին հետայսու պետք է լինի պրոբլեմների համատեղ-կոմպլեքսային մշակումը՝ սերտ համագործակցած սահմանակից գիտությունների հետ, լայնորեն կիրառելով ֆիզիկական, քիմիական և մաթեմատիկական ժամանակակից մեթոդները, միաժամանակ նրանց օգնությամբ կատարելագործելով հետազոտությունների կլասիկ եղանակները և, առաջին հերթին, պայմանական ռեֆլեքսների մեթոդը։ Սովետական ֆիզիոլոգներն իրենց համագումարին են գալիս «առատ բերքով» և լի են պատրաստակամությամբ՝ ամենաբարձր տեսական մակարդակի վրա քննարկելու ձեռք բերած նվաճումների ռեալ արժեքը և նշելու առաջիկա հետազոտությունների նոր բնագծեր։ Բնորոշ է, որ ֆիզիոլոգների ներկա համագումարում առաջին անգամ զգալի տեղ են գրավում այն հետազոտությունները, որոնք կատարվել են ժամանակակից ֆիզիկո-մաթեմատիկական գիտությունների վերջին նվաճումների հիման վրա։

Համագումարում լսվելու և քննարկվելու են մոտ 540 գիտական զեկուցումներ, հիմնականում սիմպոզիալ և սեկցիոն նիստերում։ Այդ նպատակով կազմակերպված են 22 սիմպոզիումներ (որտեղ լսվելու են 119 զեկուցումներ) և 17 սեկցիաներ (որտեղ կլսվեն 412 զեկուցումներ)։ Բացի այդ, 5 զեկուցումներ կլսվեն երկու պլենար նիստերում։ Սիմպոզիումները նվիրված են առավել կոնկրետ պրոբլեմների, նպատակ ունենալով տվյալ բնագավառի մասնագետների ակտիվ մասնակցությամբ բազմակողմանի քննության առնել այդ պրոբլեմների տարբեր ասպեկտները։ Քննարկումների գիտական բարձր մակարդակն ապահովելու նպատակով համագումարի կազմկոմիտեն սիմպոզիումների և



սեկցիաների ղեկավարներ է նշանակել յուրաքանչյուր բնագավառի հեղինակավոր մասնագետների։ Այսպես, առաջին սիմպոզիումում լսվելու և քննարկվելու է. «Ներվային բջջի և սինապտիկ հաղորդման ֆիզիոլոգիան»։ Սիմպոզիումի ղեկավարներն են՝ պրոֆեսորներ Դ. Ս. Վորոնցովը և Պ. Գ. Կոստյուկը։

Երկրորդ սիմպոզիումում քննարկվելու է «էլեկտրա-էնցեֆալոգրաֆիկ տվյալների մաթեմատիկական անալիզը» թեման։ Սիմպոզիումի ղեկավարներն են՝ պրոֆեսորներ Մ. Ն. Լիվանովը և Վ. Ս. Ռուսինովը։ Չորրորդ սիմպոզիումում զեկուցումներ կլսվեն պայմանական և անպայման ռեֆլեքսների ֆունկցիոնալ-կառուցվածքային հիմունքների մասին (ղեկավարներ պրոֆեսորներ՝ Պ. Ս. Կուպալով, Պ. Կ. Անոխին և Ե. Հ. Հասրաթյան), յոթերորդ սիմպոզիումում զեկուցումների թեման է՝ «Ներվային գործունեության մոդելացումը» (ղեկավարներն են՝ պրոֆեսորներ Ա. Բ. Կոգանը և Ե. Ն. Սոկոլովը)։ Իններորդ սիմպոզիումում կլսվեն զեկուցումներ «Խոլիներգիկ միջոցների ֆարմակոլոգիան» պրոբլեմի մասին (ղեկավարներ Հայկական ՍՍՌ ԳԱ ակադեմիկոս Ա. Լ. Մնջոյան և նույն ակադեմիայի թղթակից-անդամ Ս. Հ. Միրզոյան)։ Տասնչորսերորդ սիմպոզիումում զեկուցման թեման է՝ «Ներքին անալիզատորների ֆիզիոլոգիայի պրոբլեմը» (ղեկավարներ ակադեմիկոս Վ. Ն. Չեռնիգովսկի և պրոֆ. Է. Ճ. Հայրապետյանց)։ Քսաներկուերորդ սիմպոզիումի քննարկմանն է դրված «Գյուղատնտեսական կենդանիների վերարտադրական ֆունկցիայի նեյրո-հումորալ կարգավորման պրոբլեմը» (ղեկավարներ Ի. Ա. Բարիշնիկով և ուրիշներ)։

Սիմպոզիալ նիստերի առանձնահատկություններից մեկն էլ այն է, որ այդ նիստերում լսվող զեկուցումների թիվը 5—6-ից չի անցնում, որը հնարավորություն կտա գլխավոր ուշադրությունը դարձնել զեկուցումների բազմակողմանի քննարկման վրա։

Մի փոքր այլ սկզբունքով են կազմակերպված համագումարի սեկցիոն նիստերը։ Այստեղ քննարկվող պրոբլեմներն ավելի լայն առում ունեն, և լսվող զեկուցումների թիվը անհամեմատ ավելի մեծ է։ Օրինակ, առաջին սեկցիայում, որը նվիրված է բարձրագույն ներվային գործունեության ֆիզիոլոգիայի պրոբլեմին, կլսվեն 40 զեկուցումներ, իսկ կենտրոնական ներվային համակարգության սեկցիայում (երրորդ) կլսվեն մոտ 60 զեկուցումներ։

Մեծ հետաքրքրություն են ներկայացնում համագումարի պլենար նիստերում կարդացվելիք ընդհանրացնող զեկուցումները, որոնցով հանդես կգան մեր երկրի մի շարք ճանաչված ֆիզիոլոգներ։ «Կոմսիկական և ավիացիոն ֆիզիոլոգիայի զարգացման արդյունքները և հեռանկարները» թեմայով հանդես կգան ակադեմիկոս Վ. Ն. Չեռնիգովսկին, բժշկական գիտությունների ակադեմիայի ակադեմիկոս Վ. Վ. Պարինը և պրոֆեսորներ Օ. Գ. Գոզենկոն և Վ. Ն. Յազդովսկին։ Հայկական ՍՍՌ ԳԱ ակադեմիկոս և ՍՍՌՄ ԳԱ թղթակից-անդամ Ե. Լ. Հասրաթյանի զեկուցման թեման է՝ «Կեղևային արգելակման ծագումը և լոկալիզացիան»։ Ակադեմիկոս Ի. Ս. Բերիտաշվիլին կզեկուցի «Կենդանիների հիշողության, նրա բնութագրման և ծագման» մասին։ ՍՍՌՄ ԳԱ թղթակից անդամ պրոֆ. Մ. Ե. Սևերինը հանդես կգա «ֆիզիոլոգիական ֆունկցիաների էներգետիկ ապահովումը» թեմայով։ ՍՍՌՄ ԳԱ թղթակից-անդամ, պրոֆ. Գ. Վ. Գերշունիի զեկուցման թեման է՝ «Արտաքին ազդանշանի տարբերման պրոցեսի նեյրոֆիզիոլոգիական մեխանիզմների ուսումնասիրությունը»։

Ինչո՞վ են դիմավորում X համագումարը Հայաստանի ֆիզիոլոգները։

Ամենից առաջ նշենք, որ Հայաստանում կենսաբանական գիտությունների, այդ թվում և ֆիզիոլոգիայի բնագավառում հետազոտություններն սկսվել են սովետական կարգերի հաստատումից հետո միայն։ Ֆիզիոլոգիական հետազոտությունների առաջին օջախն է եղել Երևանի պետական համալսարանը։ 1928 թվականին կազմակերպվեց նաև Երևանի անասնաբուժական-անասնաբուժական ինստիտուտի գյուղատնտեսական կենդանիների ֆիզիոլոգիայի ամբիոնը։ Հիմնականում այս երկու օջախներում էին տարվում գիտական հետազոտությունները ֆիզիոլոգիայի բնագավառում, այստեղ աճեցին հայ ֆիզիոլոգների առաջին երիտասարդ կադրերը։ Երևանի պետական համալսարանի սաներից են այսօր ամբողջ աշխարհում ճանաչված, անվանի ֆիզիոլոգ Եզրաս Հասրաթյանը, հանգուցյալ պրոֆեսոր Արարատ Ալեքսանյանը և շատ ուրիշներ։ Առաջին ինքնուրույն ֆիզիոլոգիական գիտահետազոտական ինստիտուտը Հայաստանում կազմակերպվեց միայն 1943 թվականին, Հայկական գիտությունների ակադեմիայի կազմակերպման հետ միասին, որը և մտավ նրա կազմի մեջ։ Պետք է խոստովանել, որ երկար տարիներ այդ ինստիտուտը գտնվում էր ծանր պայմաններում, չուներ հարմարավետ շենք և լաբորատորիաներ, կադրերի մեծ մասը սկսնակ էր և կարիք էր զգում մշտական գիտական ղեկավարության, լաբորատորիաները վատ էին կահավորված և զուրկ էին ժամանակակից սարքավորումներից, երկար ժամանակ ինստիտուտը չուներ մշտական գիտական ղեկավար։ Այս բոլորի հետևանքով շատ թույլ էին զարգանում ֆիզիոլոգիական հետազոտությունները, դրա հետ միասին դանդաղ էին աճում նաև կադրերը։ Այդ դրությունը շարունակվեց ընդհուպ մինչև 1958 թվականը, երբ Հայկական ՍՍՌ ԳԱ նախագահությունը մի շարք միջոցառումների դիմեց ֆիզիոլոգիայի ինստիտուտի վիճակը արմատապես բարելավելու նպատակով։ Ամենից առաջ ինստիտուտն ամրապնդվեց ղեկավար գիտական կադրերով և նյութատեխնիկական բազայով։ Այսօր արդեն հանրահռչակ ֆիզիոլոգ Լևոն Աբգարի Օրբելու անունը կրող Հայկական ՍՍՌ ԳԱ ֆիզիոլոգիայի ինստիտուտը դարձել է առաջավոր գիտահետազոտական հիմնարկներից մեկը ո՛չ միայն ռեսպուբլիկայում, այլև Միության մեջ։ Անցած 5—6 տարիների ընթացքում ինստիտուտում աճեց, հասակ առավ երիտասարդ, շնորհալի ֆիզիոլոգների մի ստվար կոլեկտիվ։ Ինստիտուտը ներկայումս ունի չորս ինքնուրույն լաբորատորիաներ, որոնք կահավորված են ժամանակակից սարքերով և կատարում են բազմնավոր հետազոտություններ ամենաակտուալ պրոբլեմների բնագավառում։ Բավական է ասել, որ ինստիտուտում կատարվող 13 թեմաներից վեցը մտնում են միութենական կառավարության կողմից հաստատված կարևորագույն պրոբլեմների ցանկի մեջ։

Վերջին երկու տարվա ընթացքում ռեսպուբլիկայում կազմակերպվեցին երեք նոր ինքնուրույն ֆիզիոլոգիական գիտահետազոտական հիմնարկներ— բիոֆիզիկայի լաբորատորիա (որը ձևավորվել էր ֆիզիոլոգիայի ինստիտուտի ընդերքում), նեյրոքիմիկայի լաբորատորիա, աշխատանքի ու սպորտի ֆիզիոլոգիայի պրոբլեմային լաբորատորիա՝ ֆիզկուլտուրայի ինստիտուտի կազմում։ Թվարկածներից բացի, ֆիզիոլոգիական հետազոտություններ են կատարվում նաև մի շարք այլ գիտահետազոտական ինստիտուտներում (անասնաբուժական-անասնաբուժական գիտահետազոտական ինստիտուտ—պրոֆ. Ս. Ճ. Սաքանյան, կենդանաբանության, արյան փոխներարկման ինստիտուտ և այլն)։



Վերջին շրջանում լուրջ տեղաշարժեր կատարվեցին նաև բարձրորակ գիտական կադրերի պատրաստման ուղղությամբ։ Ներկայումս ռեսպուբլիկայում աշխատող ֆիզիոլոգների կազմում արդեն կան 10 գիտության դոկտոր, որոնցից հինգը դիսերտացիա են պաշտպանել վերջին 3—4 տարիների ընթացքում։ Գիտության թեկնածուների թիվը հասնում է մոտ 50-ի։ Լաբորատորիաներում, ամբիոններում և ասպիրանտուրայում (ինչպես ռեսպուբլիկայում, այնպես էլ կենտրոնական քաղաքներում) ֆիզիոլոգիայի ամենաակտուալ ուղղությունների գծով պատրաստվում են մեծ թվով նոր երիտասարդ կադրեր։ Երիտասարդ, բայց արդեն հասուն ֆիզիոլոգների մի ստվար խումբ հաջողությամբ աշխատում է դոկտորական դիսերտացիաների վրա, որոնք պաշտպանության կներկայացվեն առաջիկա մեկ-երկու տարում։ Միայն Լ. Ա. Օրբելու անվան ֆիզիոլոգիայի ինստիտուտում դոկտորական դիսերտացիաները ավարտել, կամ ավարտելու վրա են 6 ավագ գիտաշխատողներ, լաբորատորիաների ղեկավարներ։

Հայաստանի ֆիզիոլոգները X համագումարին ներկայացրել են 57 զեկուցում։ Բոլոր զեկուցումներն ընդունված են և կհրատարակվեն համագումարի նյութերի ժողովածուներում, այդ թվում 4 զեկուցում կարդացվելու է սիմպոզիումներում։

Հայաստանի ֆիզիոլոգների՝ համամիութենական X համագումարին ներկայացրած զեկուցումներն արտացոլում են վերջին տարիների հետազոտությունների այն արդյունքները, որոնք բնորոշում են յուրաքանչյուր լաբորատորիայի կամ ամբիոնի գիտական գործունեության հիմնական ուղղությունը։

Ֆիզիոլոգիայի ինստիտուտի վեգետատիվ սիստեմի զարգացման լաբորատորիան, որի ղեկավարն է գիտությունների թեկնածու Հ. Գ. Բակլավաջյանը, նեյրոֆիզիոլոգիական հետազոտությունները կատարում է նուրբ էլեկտրոնային սարքերի օգնությամբ, որը հնարավորություն է տալիս դատելու նույնիսկ առանձին ներվային բջիջների կենսագործունեության մասին։ Լաբորատորիայում առանձնահատուկ ուշադրություն է նվիրվում հիպոթալամուսի, ուղեղի կեղևի, որոշ ենթակեղևային գոյացությունների և ողնուղեղի ֆունկցիոնալ փոխհարաբերության ուսումնասիրությանը։ Այդ հետազոտությունները մեծ նշանակություն ունեն պրակտիկ բժշկության համար։

Արժեքավոր աշխատանքներ են կատարվում նաև օրգանիզմի խանգարված ֆունկցիաների վերականգնման ուղղությամբ, որոնք նույնպես ունեն կարևոր պրակտիկ նշանակություն (գիտ. թեկնածուներ՝ Լ. Ա. Մատինյան, Տ. Գ. Ուրղանջյան, Գ. Ե. Գրիգորյան)։ Այս աշխատանքների արդյունքների մասին համագումարին են ներկայացվել 12 զեկուցում։ Կենտրոնական ներվային սիստեմի զարգացման լաբորատորիան (վարիչ՝ բժշկական գիտությունների թեկնածու Վ. Վ. Ֆանարջյան) էլեկտրաֆիզիոլոգիական մեթոդը համակցելով պայմանական ռեֆլեքսների մեթոդի հետ, ուսումնասիրում է ուղեղիկի ֆիզիոլոգիան և ենթակեղևային գոյացությունների դերը պայմանական ռեֆլեկտոր գործունեության մեջ։ Այս կարևոր հետազոտությունները զարգացնում և խորացնում են ակադեմիկոս Լ. Ա. Օրբելու ուսմունքը ուղեղիկի ադապտացիոն-տրոֆիկ ֆունկցիայի մասին։ Հետազոտությունները պարզել են, թե ինչպես է ուղեղիկը ազդում գանգուղեղի կեղևի վրա և որոնք են նրա ներգործության ֆիզիոլոգիական մեխանիզմները։ Այս պրոբլեմի շուրջ համագումարին 7 զեկուցում է ներկայացված։

Գիտական մեծ արժեք են ներկայացնում ինստիտուտի հիստոքիմիայի և նեյրոմորֆոլոգիայի լաբորատորիայում կատարվող հետազոտությունները (լաբորատորիայի վարիչ, բիոլոգիական գիտությունների թեկնածու Հ. Հ. Չիլինգարյան)։ Ներվային սիստեմի բջջային բարդ կառուցվածքը հնարավոր դարձավ բազմակողմանիորեն ուսումնասիրել միայն մեր դարի սկզբներում, երբ այդ նպատակի համար մշակվեցին հատուկ նեյրոհիստոլոգիական մեթոդներ։ Բայց այդ մեթոդներն այսօր արդեն չեն բավարարում նոր խնդիրներին, քանի որ ներվային բջիջների ստրուկտուրային ուսումնասիրությունից հետո առաջանում են նոր հարցեր, կապված նեյրոնի ֆիզիկո-քիմիական կառուցվածքի և ֆունկցիոնալ բնույթի հետ։ Այս ամենը պահանջում է նոր, առավել կատարելագործված հիստոքիմիական մեթոդների ստեղծում։ Այդ պրոբլեմի լուծման վրա էլ հենց աշխատում է լաբորատորիան։ Արդեն մշակվել և կիրառվում են մի քանի նոր ուրույն մեթոդներ, որոնք բարձր գնահատական են ստացել ինչպես հայրենական, այնպես էլ արտասահմանյան խոշոր մասնագետների կողմից։ Լաբորատորիայի կողմից մշակված մեթոդները կարող են զգալի դեր խաղալ նաև ենթաբջջային գոյացությունների ստրուկտուրայի և բիոքիմիական հետազոտությունների մեջ։ Այս հետազոտությունների արդյունքների մասին կզեկուցվի համագումարում։

Ֆիզիոլոգիայի ինստիտուտի՝ կենդանիների բազմացման ֆիզիոլոգիայի և մթերատվության խթանման լաբորատորիան ուսումնասիրում է կենդանիների վերարտադրական ֆունկցիայի նեյրո-հումորալ կարգավորման պրոբլեմը, որն ունի ո՛չ միայն տեսական, այլ նաև կարևոր գործնական նշանակություն, քանի որ այդ հետազոտությունները հնարավորություն են տալիս մշակելու գյուղատնտեսական կենդանիների մթերատվության և կենսունակության բարձրացման ֆիզիոլոգիական հիմունքները։ Կատարած աշխատանքների արդյունքների մասին համագումարին ներկայացվել են 6 զեկուցում։ Հետաքրքրական ուսումնասիրություններ են կատարված Հայկական ՍՍՌ ԳԱ բիոֆիզիկայի լաբորատորիայում, պրոֆ. Հ. Գ. Դեմիրչօղլյանի ղեկավարությամբ։ Հետազոտությունների հիմնական ուղղությունը անալիզատորների բիոֆիզիկայի ուսումնասիրությունն է։ Բիոֆիզիկական, էլեկտրաֆիզիկական և հիստոքիմիական մեթոդներով ուսումնասիրվում են այն սկզբնային պրոցեսները, որոնք գտնվում են դեպի տեսողական, լսողական և շոշափելիք անալիզատորները փոխանցվող էներգիայի հիմքում։ Այս պրոբլեմի մասին համագումարին ներկայացվելու են երեք զեկուցումներ։

Ակադեմիայի սիստեմում վերջերս կազմակերպված նեյրոբիոնիկայի լաբորատորիան պրոֆ. Լ. Ս. Ղամբարյանի ղեկավարությամբ աշխատում է կարևոր մի պրոբլեմի վրա՝ «Ուղեղի ֆունկցիայի հուսալիության սկզբունքները և այդ սկզբունքների օգտագործման ուղիները էլեկտրոնային-տեխնիկական սարքերի հուսալիության բարձրացման համար»։ Լաբորատորիայի ուսումնասիրությունները պարզել են, որ ուղեղի հուսալիության կարևոր սկզբունքներից մեկը՝ կապերի սիստեմների կրկնումը—երկրորդումն է (ընդօրինակումը) կենտրոնական ներվային սիստեմում։ Երկրորդ կարևոր սկզբունքը ուղեղի բազմանալիզատորային գործունեության սկզբունքն է, որն ապահովում է ուղեղի ֆունկցիայի բարձրագույն հուսալիությունը։ Այս վերջին սկզբունքի մասին զեկուցում կլսվի համագումարում։ Բժշկական ինստիտուտի՝ մարդու նորմալ ֆիզիոլոգիայի ամբիոնը (ամբիոնի վարիչ դոցենտ Գ. Պ. Մուշեղյան) ուսումնասիրում է վեգետատիվ ներվային սիստեմի և որոշ հորմոնների ազդեցությունը հյուսվածքային նյութափոխանակության վրա, որը շարունակում և զարգացնում է Լ. Ա. Օրբելու ուսմունքի բնագավառներից մեկը։ Այդ պրոբլեմին նվիրված զեկուցմամբ համագումարում հանդես կգան ամբիոնի չորս դասախոսներ։



Գյուղատնտեսական կենդանիների ֆիզիոլոգիայի բնագավառում հետաքրքրական հետազոտություններ են կատարվում Երևանի անասնաբուժական-անասնաբուժական ինստիտուտի կենդանիների ֆիզիոլոգիայի ամբիոնում, պրոֆ. Հ. Գ. Ստեփանյանի ղեկավարությամբ։ Արժեքավոր արդյունքներ են ստացվել, մասնավորապես, բնական ստամոքսային հյութի ուսումնասիրության ուղղությամբ, մի կողմից՝ որպես մի շարք հիվանդությունների բուժիչ նյութի, մյուս կողմից՝ որպես գյուղատնտեսական կենդանիների աճի ու մթերատվության խթանիչի։ Այս արդյունքների մասին նույնպես զեկուցում է ներկայացված համագումարին։ Պետական համալսարանի ֆիզիոլոգիայի ամբիոնը, պրոֆ. Ս. Ա. Հակոբյանի ղեկավարությամբ, կատարում է հետաքրքրական ուսումնասիրություններ ռադիոբիոլոգիայի ասպարեզում։ Համագումարի համապատասխան սեկցիայում այս մասին զեկուցումով հանդես կգա պրոֆ. Ս. Հակոբյանը։

Որոշակի հետաքրքրություն են ներկայացնում ակադեմիայի կենդանաբանության ինստիտուտի լաբորատորիաներից մեկում կատարվող հետազոտությունները, որոնք կապված են հիբրիդների զարգացման բիոլոգիայի հետ։ Մասնավորապես պարզված է, որ հիբրիդների (թռչուններ) բջիջների կորիզի մեջ ավելանում է դեզօկսիռիբոնուկլեինային թթուն, որին հեղինակները վերագրում են այն բիոլոգիական տեղաշարժումները, որոնք առաջանում են հիբրիդային օրգանիզմում։ Այս աշխատանքների մասին կզեկուցեն Ա. Հ. Չիլինգարյանը, Ե. Ֆ. Պավլովը և Յու. Ա. Մաղաքյանը։

Ֆիզկուլտուրայի ինստիտուտի ֆիզիոլոգիայի ամբիոնի աշխատողները՝ ամբիոնի վարիչ, դոցենտ Հ. Կ. Ստեփանյանի ղեկավարությամբ, մշակել են սպորտի ֆիզիոլոգիայի մի քանի կարևոր հարցեր և համագումարին ներկայացրել երկու զեկուցում։

Սպորտի և աշխատանքի ֆիզիոլոգիայի պրոբլեմային լաբորատորիան, որ ամենից երիտասարդ ֆիզիոլոգիական հիմնարկն է ռեսպուբլիկայում, արդեն որոշ հետաքրքրական արդյունքներ է ստացել։ Համագումարին զեկուցում է ներկայացրել լաբորատորիայի վարիչ, գիտության թեկնածու Ա. Հ. Կոստանյանը։

Մեկ հոդվածում հնարավոր չէ, իհարկե, անդրադառնալ ռեսպուբլիկայում կատարվող ֆիզիոլոգիական բոլոր հետազոտություններին, բայց բերած օրինակներն էլ բավական են համոզվելու, որ Հայաստանի ֆիզիոլոգները, որոնք կազմում են սովետական ֆիզիոլոգների հզոր բանակի ամենաերիտասարդ ջոկատներից մեկը, ամենաակտիվ կերպով մասնակցելու են համագումարի աշխատանքներին, նպատակ ունենալով իրենց համեստ լուման մուծել ֆիզիոլոգիական գիտության զարգացման բնագավառը։ Մենք համոզված ենք, որ ֆիզիոլոգների համամիութենական համագումարի հրավիրումը Հայաստանում նոր խթան կհանդիսանա մեր ռեսպուբլիկայում գիտության այդ ճյուղի հետագա զարգացման համար։

սուլթանական Թուրքիայում ազգային որևէ հատկանիշից զուրկ չէին, բայց առաջադիմելու շատ քիչ հնարավորություններ ունեին։ Բացի այդ, որպեսզի ազգերը զարգանան, պահանջվում է, որ նրանց հիմնական հատկանիշները փոփոխության ենթարկվեն, հարստանան, նոր որակ կազմեն, հակառակ պարագային ազգերն ինչպես եղել են, այնպես էլ կմնան։ Եթե, օրինակ, հայերի տնտեսական հանրությունը չփոխվեր՝ ֆեոդալականից չվերածվեր բուրժուականի, այս վերջինն էլ՝ սոցիալիստականի, եթե Նարեկացու և այնուհետև Թումանյանի շրջանի հայ կուլտուրան որակական լուրջ փոփոխության չենթարկվեր, եթե գրաբարը չփոխարինվեր աշխարհաբարով, իսկ այս վերջինն էլ սոցիալիզմի շրջանում չհարստանար նրա պահանջները բավարարելու համար, ապա հայ ազգի ծաղկման մասին խոսք լինել չէր կարող։ Ա. Եղիազարյանն ազգերի ծաղկման կողմնակից է, բայց դրա պայմանը համարում է ազգերի գլխավոր հատկանիշների «միատեղ առկայության» փաստը, որը սխալ է։

Իհարկե, ասել, որ Ա. Եղիազարյանը ոչ մի փոփոխության չի ընդունում, ճիշտ չի լինի, որովհետև նա ազգերի տերիտորիայի, տնտեսական հանրության և կուլտուրայի փոփոխման հարցը դնում է։ Բայց դա, նախ, հակասում է իր վերոհիշյալ հիմնական դրույթներին և, երկրորդ, նրա ընդունած փոփոխություններն այնպիսիք են, որ որոշակիորեն ցույց չեն տալիս բուրժուական ազգերը սոցիալիստականի վերածվելու որակական պրոցեսը, դրանց անհամատեղելի տարբերությունը և սոցիալիստական ազգերի զարգացման տենդենցը, նրանց ապագան։ Ա. Եղիազարյանը հավատացնում է, որ «յուրաքանչյուր ազգ այդ (սոցիալիստական) հասարակարգում իրենից ներկայացնում է նախկին բուրժուական ազգերի վերափոխված և կազմավորված սոցիալիստական ազգ» (Լենինյան ուղիով, № 7, 1964, էջ 98, ընդգծ. բնագրում)։ Այլ կերպ ասած, մեր հեղինակը սոցիալիստական ազգը ոչ թե բոլորովին նոր երևույթ է համարում, այլ հնի սոսկ վերափոխումը։ Ա. Եղիազարյանը հարկ չի համարում գոնե ասելու, որ այդ վերափոխումն արմատական է, հնի հիմքերի ոչնչացում։

Ճիշտ առարկելով Ստալինին, որ չի կարելի ասել թե սոցիալիստական ազգը բարձրանում է «բուրժուական ազգի փլատակների վրա», Մ. Մելիքյանը «վերափոխում» տերմինի բովանդակությունը տեսնում է այն բանի մեջ, որ սոցիալիստական ռևոլյուցիայից հետո «Ռուսները, ուկրաինացիները, վրացիները, հայերը և մյուս ազգերը չվերացան, չփոխարինվեցին այլ ազգերով, այլ, պահպանելով ու զարգացնելով իրենց բնական-պատմական ընդհանրությունները, դարձան ավելի միաձույլ, ավելի բարձր զարգացած ազգեր» (Լենինյան ուղիով, № 8, 1964, էջ 20)։ Անկասկած ճիշտ է, որ Հայաստանի սովետականացումից հետո հայերը չվերացան, մնացին՝ ազատվելով ֆիզիկական ոչնչացումից, բայց ճիշտ է նաև այն, որ հայ բուրժուական ազգը վերացավ, հայերը կազմեցին մի նոր սոցիալիստական ազգ։ Այդ նշանակում է, որ նրանց մինչ այդ եղած «պատմական ընդհանրությունը» ոչ թե «պահպանվեց», այլ արմատական փոփոխության ենթարկվեց։ Եթե մինչև սոցիալիզմի հաղթանակն այդ ընդհանրությունը կառուցված էր կապիտալիզմի, ապա 1920 թ. նոյեմբերի 29-ից հետո արդեն՝ սոցիալիզմի հիմունքների վրա։ Անտեսել այս ամենը, սոցիալիստական և բուրժուական ազգերի տարբերությունը հանգեցնել նրանց «միաձուլության» ու «զարգացման» աստիճանների տարբերությանը, նշանակում է կանգնել սխալ ճանապարհի վրա։ Սուբյեկտիվորեն ընկ. Մելիքյանն այդ չի ցանկանում, որովհետև ուրիշ տեղերում նա ճիշտ է դնում հարցը, բայց վերոհիշյալ ձևակերպման օբյեկտիվ հետևանքն ընդունելի չէ։

Ա. Եղիազարյանի ընդդիմախոս Հ. Աղաջանյանը մեկ այլ ծայրահեղության մեջ է ընկնում խոսելով սոցիալիստական ազգերի մասին։ Նա գտնում է, որ այս վերջիններիս տնտեսական, տերիտորիալ և կուլտուրական հանրությունն այսօր արդեն այնքան է փոխվել, որ մեկ ազգը մյուսից կարելի է տարբերել միմիայն լեզվով։ Ո՛չ, ասում է Ա. Եղիազարյանը, սոցիալիստական ազգերի ձուլման կամ ասիմիլյացիայի և ոչ մի երևույթ տեղի չունի, դա սոցիալիզմի հետ անհամատեղելի է։ Ներկայումս սոցիալիստական ազգերը միայն ծաղկում են։ Իհարկե, «ծաղկումն էլ որոշ պայմաններում կարող է (ընդգծումը մերն է— Հ. Գ.) վերածվել մարման։ Սակայն անտեսել ժամանակի և տարածության գործոնները և ջնջել ծաղկման ու մարման միջև առկա տարբերությունը միայն այն հիման վրա, որ ծաղկումը ինչ-որ հեռավոր ապագայում (ընդգծումը մերն է.— Հ. Գ.) պետք է վերածվի մարման, դա կնշանակի դիալեկտիկան վերածել սոփեստության» (Լենինյան ուղիով, № 7, 1964, էջ 101)։ Եվ սոփեստությունից խուսափելու նպատակով մեր հեղինակը դիմում է մետաֆիզիկային, կարծելով, որ ազգերի ներկա ծաղկումը իբր բացառում է ձուլման որևէ երևույթ կամ, որ դրանք ներկա շրջանում չեն կարող միասնաբար հանդես գալ առաջինի առաջնությամբ, որ դա ինչ-որ շատ հեռավոր ապագայի հարց է և այլն։

Նախ, ի՞նչ դեր են կատարում տերիտորիալ ու



տնտեսական հանրություններն ազգերի կյանքում։ Ի. Ստալինն ասել է, թե դրանք ազգերի հիմնական հատկանիշներից են։ Նույնը կրկնում է Ա. Եղիազարյանը[1]։ Մեր կարծիքով դա ճիշտ չէ։ Տերիտորիան ու տնտեսական միասնությունն ազգերի առաջացման ու գոյության հիմնական նախապայմաններն են, այն կռվանները, առանց որոնց և ոչ մի ազգ կազմավորվել, գոյություն ունենալ ու զարգանալ չի կարող։ Բայց դրանք ազգերի հատկանիշները չեն։ Միևնույն տերիտորիայի վրա ապրել և ապրում են բազմաթիվ ազգերի ներկայացուցիչներ, օրինակ, Հայաստանում՝ հայեր, քրդեր, ադրբեջանցիներ, ռուսներ և այլն, սակայն դրանով նրանք մի ազգ չեն կազմում։ Տերիտորիան այսօր ազգի հիմնական հատկանիշ են համարում բուրժուա-նացիոնալիստական որոշ պետությունները։ Օրինակ, Թուրքիայում բոլոր ապրողներին թուրքական պետությունը թուրքեր է համարում, որոնք տարբերվում են միմիայն իրենց կրոնական հավատալիքներով։ Այդ միջոց է փոքր ժողովուրդներին բռնի ասիմիլյացնելու և ցույց է տալիս, թե ինչ անհեթեթության կարելի է հասնել տերիտորիան ազգի հատկանիշ համարելով։ Տերիտորիան որպես ազգի գոյության նախապայման, որպես հայրենիք, վճռական դեր է կատարում ժողովրդի կյանքում, ազդում է նրա կուլտուրայի և հոգեբանության վրա, մտնում է նրա կենցաղի մեջ, դառնում հայրենասիրության օբյեկտ, մարդկանց մղում է սխրագործությունների և այլն, բայց այն ազգի հատկանիշ չէ, որովհետև, օրինակ, Տիգրանին ու Հասոյին մենք իրարից տարբերում ենք ոչ թե իրենց ապրած տերիտորիայով, այլ կուլտուրայով, լեզվով ու նման այլ հատկանիշներով։ Մի ժամանակ Հյուսիսային Ամերիկայում ապրում էին հնդիկներ, այսօր՝ անգլերեն խոսող բոլորովին մի նոր ազգ։ Եթե տերիտորիան ազգի հատկանիշ լիներ, ապա նա պետք է որ հնդիկների անհետացման հետ անհետանար, որովհետև ժողովրդի կամ ազգի մահացումը հենց նրա հատկանիշների մահացումն է։ Բայց Ամերիկայի Միացյալ Նահանգները մնում են որպես նոր ժողովրդի հայրենիք, որպես մի նոր ազգի գոյության հիմնական նախապայման։

Տնտեսական ընդհանրությունը շատ բաներով տարբերվում է տերիտորիալ ընդհանրությունից, բայց սա ևս ազգի առաջացման ու գոյության նախապայման է և ոչ թե հատկանիշ։ Իր հիմնական գծերով կապիտալիզմն Անգլիայում կամ Ֆրանսիայում, Գերմանիայում կամ Իտալիայում նույնն է եղել, որը և, քանդելով ֆեոդալական հարաբերությունները, ձևավորել է այդ երկրների ժամանակակից բուրժուական ազգերը։ Ուստի, ոչ թե տնտեսական հանրությունն է ազգի հատկանիշը, այլ դրա հետևանքը՝ ժողովուրդների միավորումը մի լեզվական ընդհանրության մեջ, հոգևոր կուլտուրան և այլն։

Ա. Եղիազարյանը գտնում է, որ «ազգի տնտեսական կյանքի ընդհանրությունը— դա զարգացող կամ տիրապետող արտադրական հարաբերությունների հիման վրա ազգի տարբեր հատվածների տնտեսական միավորումն է, այդ հատվածների մեջ տնտեսական կապերի ստեղծումն է, նրանց զարգացումը, կապեր, որոնց հիմքում ընկած է աշխատանքի բաժանումը» (Լենինյան ուղիով, № 9, 1963, էջ 79)։ Անշուշտ ճիշտ է, որ ազգի տնտեսական կյանքի ընդհանրությունն ազգի անդամների տնտեսական կապերի ստեղծում է, բայց ճիշտ չէ, որ դրա «հիմքը աշխատանքի տերիտորիալ բաժանումն է», որովհետև այդ բաժանումն, ի վերջո, պայմանավորված է արտադրության եղանակով և մարդկանց տարբեր ազգերի մեջ միավորելու նախապայման լինել չի կարող։ Այդպիսի նախապայման հանդիսանում է արտադրության եղանակը։

Հ. Աղաջանյանը ճիշտ է նկատել Ա. Եղիազարյանի ձգտումը՝ կտրելու ազգի տնտեսական կյանքի ընդհանրությունը հասարակական բազիսի բնույթից, բայց նա սխալվում է, երբ այդ ընդհանրությունը հանգեցնում է արտադրական հարաբերությունների ամբողջությանը։ Որպես մարդկանց փոխկապակցության մի ձև արտադրական հարաբերությունները միշտ էլ գոյություն են ունեցել, իսկ ազգերը՝ ոչ, անգամ այն ժամանակ, երբ մասնավոր սեփականության առաջացման հետևանքով առաջիններն ընդունել են անտագոնիստական բնույթ։ Հ. Աղաջանյանը ճիշտ կլիներ, եթե ազգերի փոխարեն խոսեր դասակարգերի առաջացման մասին։ Ազգերն առաջացել են դասակարգերի առաջացումից շատ հետո, արտադրության եղանակից բխող մարդկանց տնտեսական որոշ բնույթ ունեցող կապերի հետևանքով։ Տնտեսական ամեն մի կապ ազգի առաջացման հիմք լինել չի կարող։ Այդ պատճառով էլ չի կարելի այդ կապը կտրել իր բովանդակությունից՝ արտադրության եղանակից։

Չնայած վերոհիշյալին, Ա. Եղիազարյանը գրում է. «Սոցիալիստական ազգերի տնտեսական կյանքի ընդհանրությունը խարսխվում է ազգի տարբեր հատվածների ներգրավմամբ մի տնտեսական միասնության մեջ, որի հիմքն է կազմում աշխատանքի տերիտորիալ պլանային բաժանումը» (Նույն տեղը, էջ 80)։ Ամենից առաջ, սոցիալիստական ազգերի տնտեսական կյանքի ընդհանրությունը և նրանց «տարբեր հատված-

---

[1] Այդ սխալը ժամանակին կատարել եմ և ես. Հ. Գ.։

ների ներգրավումը մի տնտեսական միասնության մեջ» միևնույն բանն է նշանակում, այդ պատճառով էլ առաջինը երկրորդի համար խարիսխ դառնալ չի կարող։ Այդ խարիսխը սոցիալիստական արտադրաեղանակն է, որը կապիտալիզմի համեմատությամբ, որակական նոր բովանդակություն է տալիս այդ կապերին և առհասարակ սոցիալիստական ազգերի գոյության հիմքն է։

Երկրորդ, ազգերի տնտեսական կյանքի ընդհանրության հիմքը փնտրել աշխատանքի տերիտորիալ բաժանման մեջ, նշանակում է ազգերի գոյության հիմքը հանգեցնել աշխատանքի տերիտորիալ բաժանմանը։ Այդ կերպ վարվելով, Ա. Եղիազարյանը որոշակի նպատակ է հետապնդում՝ հիմնավորել իր թեզը այն մասին, թե սոցիալիստական ազգերի ասիմիլյացիայի վերաբերյալ եղած ամեն մի դատողություն «մտացածին կոնցեպցիա է», և սոցիալիստական տնտեսության զարգացումը որևէ չափով սոցիալիստական ազգերի ապագա ձուլման համար նախադրյալներ չի ստեղծում, այլ միայն նպաստում է նրանց բարգավաճմանը։

Մ. Մելիքյանն աշխատանքի տերիտորիալ բաժանման մասին չի խոսում, բայց նա կարծում է, որ սոցիալիզմը շարունակում է ամրացնել կապիտալիզմի ժամանակ ստեղծված տնտեսական կապերը։ Զարացած իր հակառակորդների վրա, նա հարցնում է. «Իսկ սոցիալիզմի, այսինքն՝ արտադրողական ուժերի զարգացման տեսակետից ավելի բարձր հասարակարգի պայմաններում այդ կապը թուլանու՞մ է, թե զարգանում, ամրանում» (Լենինյան ուղիով, № 8, 1964, էջ 23)։ «Այդ կապը», այսինքն՝ սոցիալիզմից առաջ եղած տնտեսական կապը, ոչ թուլանում է, ոչ էլ ամրանում, այլ պարզապես վերանում է։ Սոցիալիզմը ստեղծում է իր բնույթով տնտեսական միանգամայն նոր կապ։ Բացի այդ, եթե ազգերի պահպանման հիմքը մարդկանց տնտեսական կապերի ամրացումը լիներ, այդ դեպքում ազգերի ասիմիլյացիա երբեք տեղի ունենալ չի կարող, որովհետև գնալով այդ կապերը պետք է ավելի ամրանան։

Առաջնորդվելով նրանով, որ ազգերի տնտեսական կյանքի ընդհանրության հիմքը արտադրության եղանակն է, մեր պարտիայի ծրագիրն ուսուցանում է. «Դասակարգերի միջև եղած սահմանների ջնջվելը և կոմունիստական հասարակական հարաբերությունների զարգացումը ուժեղացնում են ազգերի սոցիալական միասեռությունը, նպաստում են կուլտուրայի, բարոյականության ու կենցաղի կոմունիստական ընդհանուր գծերի զարգացմանը, նրանց փոխադարձ վստահության և բարեկամության հետագա ամրապնդմանը» (ՍՄԿԿ XXII համագումարի նյութերը, էջ 536)։ Այլ կերպ ասած, սոցիալիստական արտադրահարաբերությունների նորանոր կատարելագործումները տնտեսապես հասունացնում են ազգերի հատկանիշների հետագա մահացումը, երբ կոմունիզմն ամենուրեք կենցաղ դառնա, նրանց կուլտուրաների ու կենցաղի ընդհանուր կոմունիստական գծերի զարգացումը որպես ազգերի սոցիալական միասեռության ստեղծման բնականոն հետևանք։

Ա. Եղիազարյանն ասում է, թե սխալ է պնդել, որ սոցիալիստական ազգերն արդեն կորցրել կամ կորցնում են իրենց տերիտորիալ ընդհանրությունը։ Նա իրավացի է և չի կարելի համաձայնել Հ. Աղաջանյանի հետ, թե իբր Սովետական Միության մեջ այսօր արդեն տերիտորիան «չի բաժանվում ըստ ազգությունների» (Լենինյան ուղիով, № 3, 1964, էջ 109)։ Անկասկած, Սովետական Միությունը մի ամբողջական տերիտորիա է, որը հավասարապես պատկանում է այդ երկրի բոլոր քաղաքացիներին, անկախ նրանց ազգային պատկանելությունից։ Բայց այդ հանգամանքը չի հակասում այն փաստին, որ ամեն մի ռեսպուբլիկա ունի իր որոշակի տերիտորիան և շփոթել, օրինակ, Հայաստանն Ուկրաինայի հետ, չի կարելի։ Եթե մենք ժխտենք սովետական ազգային ռեսպուբլիկաների տերիտորիաների գոյությունը, ապա այդ ռեսպուբլիկաները կվերածվեն սոսկ կուլտուր-բարոյական հասկացությունների։ Մինչդեռ Լենինը պահանջում էր ազգերի ինքնուրույնությունը հասցնել մինչև պետական սահմանների, այսինքն՝ ազգի տերիտորիայի որոշման։ Այդ պահանջն այսօր լիովին կատարված է։

Ա. Եղիազարյանը, ճիշտ արձանագրելով վերոհիշյալ փաստերը, դրանցից եզրակացնում է, թե սոցիալիստական ազգերի տերիտորիալ ընդհանրությունն, իբր, չի փոխվել և չի կարող փոխվել, որովհետև այդ ազգերից ոչ մեկը չի «չվել այլ տերիտորիա», որովհետև սոցիալիստական երկրներում գործազրկություն չկա, որն առաջացնում է ուժեղ էմիգրացիա» (Լենինյան ուղիով, № 9, 1963, էջ 81—82)։ Անշուշտ, ճիշտ է, որ Սովետական Միության մեջ ոչ ազգերի «չվում» է տեղի ունենում և ոչ էլ մասսայական էմիգրացիա։ Դրանք մասնավոր սեփականության վրա հիմնված հասարակությունների հատկանիշներ են, ուստի դրանց լինելու կամ չլինելու հիման վրա դատել սոցիալիստական ազգերի տերիտորիալ ընդհանրությունների փոփոխման մասին, չի կարելի։

Հայտնի է, որ սոցիալիզմը կապիտալիզմից ժառանգեց տնտեսապես անհամաչափ զարգացած տերիտորիաներ։ Ցարիզմի տիրապետության օրոք ողջ արդյունաբերությունը, ուստի և ազգաբնակչության հիմնական մասը, կենտրոնացված



էին երկրի մի քանի քաղաքներում ու շրջաններում։ Սիբիրի, ինչպես նաև Ղազախստանի և միջինասիական երկրների հսկայական տարածությունները անմարդաբնակ էին և եղած հարստությունները չէին շահագործվում։

Լենինն իր ժամանակին նկատել էր, որ ազգաբնակչության հսկայական զանգվածների կուտակումը որոշ վայրերում, ի հաշիվ մյուսների, կապիտալիզմի մեծագույն չարիքներից մեկն է, որը սոցիալիզմը պետք է վերացնի։ Հոկտեմբերից հետո Լենինի նշած չարիքի վերացման ուղղությամբ հսկայական աշխատանք է կատարվել։ Ա. Եղիազարյանը չի ժխտում, որ 1926 թվականի համեմատությամբ, 1959 թվականին Ղազախստանում ապրող ղազախների տոկոսը 57-ից իջել է 30-ի, Ուզբեկստանում ուզբեկներինը՝ 74,2-ից 62,2-ի Կիրգիզիայում կիրգիզներինը՝ 66,6-ից 40,5-ի, Տաջիկստանում տաջիկներինը՝ 74,6-ից 52,1-ի, Թուրքմենիայում թուրքմեններինը՝ 70,2-ից 60,9 տոկոսի և այլն։ Ընդունելով այս փաստերը, մեր հեղինակը դրանց այլ բացատրություն է տալիս։ Նա ասում է. քանի որ այդ ամենը տեղի է ունեցել ոչ «չվելու» միջոցով, ապա, ուրեմն, չի կարելի դրանք դիտել որպես սոցիալիստական ազգերի տերիտորիալ ընդհանրության որևէ փոփոխություն։ Տարօրինա՜կ տրամաբանություն։ Ի՞նչ անուն տալ այն փաստին, որ 33 տարում Ղազախստանի ազգաբնակչությունն այնքան է փոխվել, որ դրա 70 տոկոսն արդեն ղազախներ չեն, այսինքն՝ ղազախական տերիտորիայի վրա ապրելու են եկել նաև ուրիշ ազգեր։ Իհարկե, դա ղազախների ազգային տերիտորիայի ընդհանրության վերացում չէ, բայց, միաժամանակ, չի կարելի ասել, որ այդ ընդհանրությունը որևէ փոփոխման չի ենթարկվել։ Ո՛չ, այն ենթարկվել է, այն դարձել է նաև եկվորների հայրենիք, որովհետև եկվորները ժամանակավոր հյուրեր չեն, այլ մշտական ապրողներ։

«Սոցիալիզմի առավելությունը կապիտալիզմի համեմատությամբ նաև այն է, որ սոցիալիզմն ապահովում է ազգաբնակչության զբաղվածությունն ամեն մի ազգային ռեսպուբլիկայում», գրում է Ա. Եղիազարյանը (Նույն տեղը, էջ 82)։ Իսկ ի՞նչ է հետևում դրանից։ Մեր հեղինակը բավականաչափ հետևողական է։ Փաստորեն ազգերի գոյության հիմքը հանգեցնելով աշխատանքի տերիտորիալ բաշխմանը, նա ամուր կառչել է տերիտորիայից և ընթերցողներին համոզում է, որ նրանք չխալվեն հեռանալ իրենց տերիտորիայից, որովհետև ռեսպուբլիկան կարող է իրենց ապահովել աշխատանքով։

Ոչ մի կասկած այն մասին, որ ամեն մի սովետական ռեսպուբլիկա կարող է իր ազգաբնակչության զբաղվածությունը լիովին ապահովել։ Բայց չէ որ դրա հետ միասին կա ու գործում է նաև արտադրողական ուժերի սոցիալիստական բաշխման օրենքը, որը տարածվում է ո՛չ միայն գործարանների ու դրանց մեքենաների, այլև մարդկանց վրա, որովհետև նրանք ևս արտադրողական ուժեր են։ Ինչպե՞ս մենք կյուրացնեինք խոպան հողերը, եթե առաջնորդվեինք Ա. Եղիազարյանի դրույթով, թե ամեն մի ռեսպուբլիկա կարող է ապահովել իր ազգաբնակչության զբաղվածությունը։ Ո՛չ, կյանքը և արտադրողական ուժերի սոցիալիստական բաշխման օրենքը հարկադրում են խախտել Ա. Եղիազարյանի առաջադրած սկզբունքը։ Իսկ դա անխուսափելիորեն տանում է դեպի ազգային տերիտորիաների ընդհանրության փոփոխում։

Մեր պարտիայի ծրագրում ասված է. «ՍՍՌՄ շրջանակներում միութենական ռեսպուբլիկաների միջև սահմաններն ավելի և ավելի են կորցնում իրենց երբեմնի նշանակությունը»։ Ցիտելով այս տողերը՝ Ա. Եղիազարյանը հավատացնում է, որ դրանից բխում է. «Եթե 25—30 տարի առաջ Սովետական Միության ռեսպուբլիկաների միջև եղած սահմաններն արտահայտում էին այդ ռեսպուբլիկաների միջև գոյություն ունեցող տնտեսական և կուլտուրական զարգացման մակարդակների տարբերությունը, ապա քանի գնաց, այնքան սահմանները կորցրին այդ նշանակությունը» (Նույն տեղը, էջ 82)։ Կասկած չկա, որ հիշյալ տողերը նաև այդ նշանակությունն ունեն, սակայն դրանք միաժամանակ արձանագրում են այն փաստը, որ սովետական աշխարհում վերջ է տրվել ազգամիջյան կռիվներին, տերիտորիալ վեճերին, որ սովետական ռեսպուբլիկաների սահմանների վրա սահմանապահներ չկան, որ հայը կարող է Ադրբեջան գնալ, ադրբեջանցին՝ Հայաստան, որ մի ազգի անդամ կարող է մեկ այլ ռեսպուբլիկայի մեջ մշտական բնակություն հաստատել առանց որևէ արգելքի, մի խոսքով, որ սովետական ժողովուրդը ձեռք է բերել իրական տնտեսական ու քաղաքական ազատություն և բոլորը միասին մի անբաժան ընտանիք են կազմում։ Ինչո՞ւ է ընկ. Եղիազարյանն այս փաստերը մոռանում։ Չէ որ դրանք ցույց են տալիս, որ սոցիալիստական ազգերն այլևս նախկին ինքնապարփակ ազգերը չեն, որ լիակատար ազատության պայմաններում շփվելով իրար հետ, ազդելով մեկը մյուսի վրա, նրանք հարստացնում են իրենց կուլտուրան, իրենց լեզուն, կատարելագործում են իրենց կենցաղը, կարճ՝ ընթանում են այն ճանապարհով, որը տանում է դեպի նրանց ոչ միայն նյութական, այլև հոգևոր-գաղափարական միասնության զարգացումն ու ամրացումը։

Հ. Աղաջանյանը գտնում է, որ արդեն «Սոցիալիստական ազգերի հոգեկան կերտվածքի համար

բնորոշ են ոչ թե տարբերությունները, այլ այն, ինչ որ ընդհանուր է նրանց համար» (Լենինյան ուղիով, № 3, 1964, էջ 110)։

Եթե խոսքը վերաբերում է հոգևոր կուլտուրայի բովանդակությանը, այդ դեպքում Հ. Աղաջանյանը ճիշտ է, որովհետև բոլոր ժողովուրդների մոտ էլ դա սոցիալիստական բնույթ ունի և կառուցված է առաջնորդ սկզբունք ունենալով մարքսիզմ-լենինիզմը։ Իսկ եթե նկատի ունենանք այդ կուլտուրաների ձևը, ապա պետք է ասենք, որ Հ. Աղաջանյանն արդեն ճիշտ չէ։ Եթե, օրինակ, հայ ու վրացական գեղարվեստական գրականության բովանդակության տեսակետից բնորոշն ընդհանրությունն է, որովհետև երկու ժողովուրդների մոտ էլ դա սոցիալիստական է, ապա ձևի տեսակետից արդեն այդ բանն ասել չի կարելի, հայ գեղարվեստական գործերը գրվել են հայերեն, որը վրաց լայն մասսաներին մատչելի չէ։ Նույնը պետք է ասել վրացերեն գործերի մասին։

Կարելի՞ է արդյոք հիշյալ փաստը «ազգի հոգեկան կերտվածքի գլխավոր և որոշիչ կողմը» համարել։ Հ. Աղաջանյանն այդ հարցին բացասական պատասխան է տալիս։ Եվ դա ճիշտ է. եթե սոցիալիստական ազգային կուլտուրան հանդեպ վի ազգային ձևին։ Բայց կարելի՞ է արդյոք խոսել ազգային կուլտուրայի, օրինակ, Չարենցի գործերի մասին, ազգային ձևը «գլխավոր և որոշիչ» կողմերից մեկը չհամարելով։ Հ. Աղաջանյանն իր հարցադրումը հիմնավորում է, ելնելով մարքսիստական այն դրույթից, թե ձևի և բովանդակության հարաբերության ժամանակ որոշիչը բովանդակությունն է։ Սակայն նա մոռանում է Լենինի դիտողությունն այն մասին, որ մատերիայի առաջնությունը նշանակություն ունի միայն փիլիսոփայության ընդհանուր հարցի որոշման ժամանակ, մնացած դեպքերում կարող է որևէ երևույթի զարգացումն այնպես ընթանալ, որ հոգին, ներկա դեպքում ձևը, իր բովանդակության նկատմամբ մինչև իսկ առաջնություն ձեռք բերի։ Ազգային ձևը դա ազգային կուլտուրայի արտաքին կեղևը չէ, այլ դրա կառուցման օրենքը։ Ուստի, երբ խոսքը վերաբերում է սոցիալիստական ազգային կուլտուրաներին, «գլխավոր և որոշիչ կողմը» պետք է համարել ո՛չ միայն բովանդակությունը, այլ նաև ձևը։ Դրանք միասնական են և անբաժան, որը բնավ չի բացասում բովանդակության որոշիչ դերն այդ միասնության մեջ։

Իսկ փոխվո՞ւմ են արդյոք սոցիալիստական ազգերի կուլտուրաների ձևն ու բովանդակությունը, կամ այդ ազգերի հոգեկան կառուցվածքը որպես առանձին հատկանիշ։ Ա. Եղիազարյանը գտնում է, որ «Կոմունիստական հասարակության ծավալուն կառուցման ժամանակաշրջանում» սոցիալիստական ազգերի «հոգեկան կառուցվածքի ընդհանրության հատկանիշը լինելով հանդերձ փոփոխական մեծություն», պահպանում է «իր նշանակությունը որպես սոցիալիստական ազգի բնորոշ հատկանիշ» (Լենինյան ուղիով, № 9, 1963, էջ 85)։ Դա միանգամայն ճիշտ է։ Բայց Ա. Եղիազարյանն իր ամբողջ ուշադրությունը կենտրոնացնելով հիշյալ հարցադրման ապացուցման վրա, մոռանում է այդ հատկանիշի զարգացումն ու փոփոխումը, որը գնում է ազգային «կուլտուրաների կոմունիստական ընդհանուր գծերի զարգացման» ուղղությամբ, ինչպես ասված է մեր պարտիայի ծրագրում։ Նա չի ժխտում, իհարկե, որ «1959 թվականի մարդահամարը հայտնաբերեց մասնակի ասիմիլյացիայի պրոցես սոցիալիստական ազգերի»։ Բայց նա գտնում է, որ դա տեղի է ունենում «գերազանցապես էքստերիտորիալ համախմբերի նկատմամբ», իսկ միութենական 15 ռեսպուբլիկաների ազգերը ոչ մի փոփոխության չեն ենթարկվում և չեն էլ կարող ենթարկվել, քանի որ մեր պարտիան կուրս է վերցրել ազգերի հետագա զարգացման վրա (Լենինյան ուղիով, № 7, 1964, էջ 100—101)։ Սակայն այդ նույն մարդահամարի տվյալներով հիշյալ ազգերից էլ 4,541,091 ուկրաինացիներ և 1,212,269 բելոռուսներ իրենց մայրենի լեզուն համարել են ռուսերենը, իսկ 177 հազար ռուսներ հայտարարել են, որ իրենց մայրենի լեզուն ուկրաիներենն է, հայերենը, վրացերենը և այլն։ Այլ կերպ ասած, ազգերի, անկասկած մասնակի, բայց և այնպես միաձուլման երևույթը փաստ է։

Ա. Եղիազարյանն ասում է, որ սա նոր երևույթ չէ. անցյալում էլ եղել է նման պրոցես, այն տարբերությամբ միայն, որ մեր հասարակարգում դա ներկայացնում է կամովին, բնականոն պրոցես» (նույն տեղը, էջ 100)։ Բայց մի՞թե այդ հանգամանքը որևէ չափով կարող է նվաստացնել փաստի արժեքը։ Ա. Եղիազարյանի դիտողությունն այդ նպատակն է հետապնդում։ Նա անտեսում է ազգերի ասիմիլյացիայի լենինյան թեորիան։ Նա գրում է. «Միայն դոգմատիզմով տառապողները կարող են Լենինի 1913 թ. ասածները կամ դրույթները կապիտալիստական աշխարհի մասին, տարածել սոցիալիստական աշխարհի վրա, կամ թե պրոլետարիատի անելիքը բուրժուական հասարակության շրջանակներում տարածել սոցիալիստական հասարակության վրա» (նույն տեղը, էջ 98)։

Տեսնենք թե ինչ է ասել Լենինը 1913 թ., որը Ա. Եղիազարյանն այսօրվա համար միանգամայն անընդունելի է համարում։

Ազգային հարցի մասին 1913 թ. Լենինի գրած աշխատությունների և առանձին հոդվածների հիմնական թեման եղել է «կուլտուր-ազգային ավտոնոմիայի» տեսության ռեակցիոն բնույթի մերկացումը, հակադրելով դրան ազգերի լիակատար անկախության և ինտերնացիոնալ կուլտուրայի ստեղծման ու զարգացման պահանջը, «...արդեն կապիտալիզմի ժամանակ մարդկության ողջ տնտեսական, քաղաքական ու հոգևոր կյանքն ավելի շատ ինտերնացիոնալիստականանում է։ Սոցիալիզմն ամբողջությամբ ինտերնացիոնալականացնելու է այն» (հ. 19, էջ 216), գրում է Լենինը, ապացուցելով, որ բանվոր դասակարգը չի կարող համաձայնել նեղ ազգայնական կուլտուրայի կառուցման հետ, որովհետև դա վնասում է իր ինտերնացիոնալ գործին։ Կարելի՞ է արդյոք ասել, որ Լենինի այս հարցադրումը հնացել է։ Ո՛չ, չի կարելի, նախ՝ այն պատճառով, որ նացիոնալիզմի դեմ մեր պայքարը դեռ չի ավարտվել. դրա անհրաժեշտությունն ընդգծված է մեր պարտիայի նոր ծրագրում, երկրորդ, այն պատճառով, որ Լենինը ցույց է տալիս սոցիալիզմի, այսինքն՝ մեր ապրած ժամանակաշրջանի հասարակական կյանքի զարգացման ընթացքը, որը մենք պարտավոր ենք հաշվի առնել ամեն քայլափոխին։

Քննադատելով բունդական Լիբմանին, Լենինը գալիս է այն եզրակացության, որ եթե դեն նետենք ամեն տեսակի հարկադրանք, այդ դեպքում «կմնա ազգային պատնեշների փշրման, ազգային առանձնահատկությունների վերացման, ազգերի ասիմիլյացիայի կապիտալիզմի համաշխարհային-պատմական այն տենդենցը, որն ամեն մի տասնամյակում ավելի հզոր է արտահայտվում, որը կապիտալիզմը սոցիալիզմի վերածող մեծագույն շարժիչներից մեկն է» (հ. 20, էջ 12)։ Կարո՞ղ է արդյոք բանվոր դասակարգն այսօր ևս ճիշտ ազգային քաղաքականություն մշակել, անտեսելով Լենինի այս սկզբունքային հարցադրումը։ Դա վերաբերում է ո՛չ միայն կապիտալիստական, այլև սոցիալիստական երկրների բանվոր դասակարգին, որովհետև Լենինը ազգերի կամավոր ասիմիլյացիան համարելով կապիտալիզմը սոցիալիզմի վերածող մեծագույն շարժիչներից մեկը, դրանով արդեն որոշում է նաև սոցիալիստական ազգերի զարգացման ուղին և այն գիծը, որը պետք է տարվի սոցիալիստական երկրի ղեկավար դասակարգի ու պարտիայի կողմից։ Հետևաբար, Ա. Եղիազարյանի դիտողությունն այն մասին թե ազգային հարցի վերաբերյալ 1913 թ. Լենինի ասածները կիրառելի են միայն բուրժուական աշխարհում, ճիշտ չէ։

Լենինն ասում է, թե «Ամեն կարգի նացիոնալիզմի փոխարեն մարքսիզմը առաջ է քաշում ինտերնացիոնալիզմ, բոլոր ազգերի միաձուլումը մի բարձր միասնության մեջ...» (նույն տեղը, էջ 17)։ Ի՞նչ կասի ընկ. Եղիազարյանը, մի՞թե այս հարցադրումն էլ նկատի ունի միայն կապիտալիստական աշխարհը և սոցիալիստական աշխարհի նկատմամբ կիրառելի չէ։ Միակ փաստարկը հօգուտ այդ կարգի դիտողության այն է, որ Լենինի հիշյալ խոսքերն ասվել են նախքան սոցիալիստական ռևոլյուցիան։ Բայց այդ կերպ դատելով մենք կհանգենք մարքսիզմի, որպես գիտական աշխարհայեցողության ժխտմանը, որովհետև, եթե այն, ուսումնասիրելով բուրժուական հասարակությունը, չի կարողացել կանխատեսել սոցիալիստական հասարակության զարգացման ընդհանուր տենդենցը, այդ դեպքում այն գիտական թեորիա չէ։ Առանց գիտական կանխատեսման չկա գիտական թեորիա։

Բարեբախտաբար մեկ ուրիշ տեղ Լենինն ուղղակի խոսում է սոցիալիզմի նպատակի մասին։ Նա գրում է. «Սոցիալիզմի նպատակը ոչ միայն մարդկության մանր պետությունների բաժանման և ազգերի ամեն տեսակի առանձնացման ոչնչացում է, ոչ միայն ազգերի մերձեցում, այլև նրանց միաձուլումը» (հ. 22, էջ 135)։ Ճիշտ է, Լենինն այս գրել է ոչ թե 1913, այլ 1916 թ., բայց ընկ. Եղիազարյանը մեզ վրա չարանալու հիմք չունի, որովհետև 1916 թ. ևս դեռ սոցիալիզմը և ոչ մի երկրում չէր հաղթանակել։ Չնայած դրան, Լենինը շատ հստակ կերպով որոշում է սոցիալիզմի նպատակը ազգային հարցում։ Նա այդ նպատակը չի սահմանափակում ազգերի մերձեցմամբ, դնում է նաև ազգերի միաձուլման հարցը։ Ա. Եղիազարյանը գտնում է, որ սոցիալիզմը ազգերի միայն մերձեցման հարցն է լուծում, նրանց ձուլման հարցը նրա նպատակի մեջ չի մտնում։ Ինչպես տեսնում է ընթերցողը, այս հարցադրումը հակասում է Լենինի հարցադրմանը, դրա համար էլ Ա. Եղիազարյանը չարանում է այն մարդկանց վրա, որոնք փորձում են առարկել իրեն, դիմելով նաև Լենինի 1913 թ. գործերի օգնությանը։

Ընկ. Մելիքյանը գտնում է, որ Լենինը, խոսելով ազգերի ասիմիլյացիայի մասին կապիտալիզմի օրոք, նկատի ունի միայն այն «հատվածների ձուլումը», որոնք գտնվում են «իրենց մայր երկրից դուրս,... կորցնում են տնտեսական, տերիտորիալ, կուլտուրական և այլ կապերը մայր ազգի հետ», իսկ ինչ վերաբերում է «մայր երկրներում» եղած ազգերին, ապա դրանք ասիմիլյացիայի չեն ենթարկվում։ «Մի՞թե կարելի է պնդել, թե կապիտալիզմի ժամանակ եվրոպական ազգերը... ասիմիլացվում են մյուս ազգերի մեջ, վերանում են որպես ինքնուրույն ազգեր», իր թեզը հիմնավորելու համար հարցնում է Մ. Մելիքյանը (Լենինյան ուղիով, № 8, 1964, էջ 22)։ Ամենից առաջ ճիշտ չէ, որ Լենինը, խոսելով ազգերի ասիմիլյացիայի մա-

այնպիսի հափշտակությամբ, ինչպես պատանին՝ առաջին սիրո մասին:

Ահա հենց այդպիսին է հերթափոխի ինժեներ Երվանդ Հայրապետյանը:

Կիրակի է, վաղ առավոտ: Ամբողջ Երևանն է հանգստանում այսօր: Սակայն ջերմաէլեկտրակենտրոնում, ուր ծնվում է գոլորշին և գոլորշուց էլ էլեկտրականությունը, դղրդում են ագրեգատները: Համեմատաբար անաղմուկ ու հանգիստ է միայն կենտրոնական և խմբային ղեկավարման վահանների մոտ, ուր օրվա հերթապահներն ակնդետ հետևում են հարյուրավոր սլաքների ու այլական սարքերի աշխատանքին: Եվ այդ անդորրության մեջ հանկարծ պոռթկում է կանգի ղողանջը: Ցուցանակի վրա վառվում է օտար աչքի համար մինչև այդ անտես ու աննշմար մի լամպ: Լեոնիդ Տերեշկին, ջահել, լրջդեմ մի տղա, իսկույն հեռախոսափողն է վերցնում: Հարկ չկա նրան ասելու, թե ինչ է պահանջում կանգը. նա արդեն գիտե: Նա գիտե, որ ջրածնային սառեցման սիստեմում ինչ-որ թերություն կա: Հեռախոսափողի մեջ նա երկու բառ է շշնջում միայն, իսկ մի քանի վայրկյան անց թերությունը վերացվում է: Այդ էլ արդեն հերթապահ ստուգող Վոլոդյա Հովակիմյանի գործն է:

Հերթապահ ինժեները զոհունակ ժպտում է: Գրեթե կարճահասակ, ամրակուռ մի տղամարդ է հերթապահը՝ Երվանդ Հայրապետյանը: Եթե հատկապես չծանոթացնեն, կթվա, որ շարքային բանվորներից մեկն է, այն հարյուրներից մեկը, որոնց ջանքերով կառուցվել է այս հսկան: Հագնված է հասարակ, դեմքին ու շարժումների մեջ արտակարգ ոչինչ չկա: Խոսում է ցածրաձայն, հրամայական ոչ մի շեշտ խոսքի մեջ: Բայց հենց որ երևում է որևէ բաժանմունքում, մարդիկ, որ առանց այն էլ աչալուրջ էին, կգաստանում են:

Իր գործին սիրահարված մարդու պես է խոսում նա: Պատմում է հափշտակությամբ: Ով գիտե՝ քանի անգամ է ստիպված եղել թղթակիցներին ու այցելուներին պատմել այն բոլոր պրոցեսների մասին, որ կատարվում են կայանում: Բայց դարձյալ ու դարձյալ պատմում է, ավելի շուտ արտասանում, ինչպես սիրած բանաստեղծություն, որը կարող ես հազար անգամ կրկնել ու չձանձրանալ:

Ջերմաէլեկտրակայանը հիդրոկայանից միանգամայն տարբեր սկզբունքներով է աշխատում: Ճիշտ է, հիմնական աղբյուրը ջուրն է, բայց...

Հսկայական ջրամբարները շարված են կողք-կողքի: Փակ են, ոչ ոք չի կարող տեսնել, թե ինչ է կատարվում դրանց ներսում: Մինչդեռ աչքի համար անտեսանելի այդ փակ ամբարներում սովորական ջուրը պտվում է, անցնում քիմիական մաքրման բարդ մի պրոցես:

Սովորական գետերում սառը ջուրը ոչ մի ազդեցություն չի գործում տուրբինների ու գեներատորների վրա: Իսկ երբ ջուրը դառնում է գոլորշի, կարող է քայքայել մետաղը: Ահա թե ինչու ջերմակայանում ջուրը պետք է լինի մաքուր ու անխառն, զերծ ամեն տեսակ քիմիական միացություններից: Ուստի և այն այստեղ անցնում է քիմիական մաքրման կայանի միջով: Սակայն այս կայանն էլ լիովին չի կարող պտել ջուրը: Եվ ահա ջուրը այստեղից մղվում է դեպի այն հարմարանքը, որտեղ դրված են կատյոնիտային մաքրիչները՝ ֆիլտրերը: Զտման երկրորդ պրոցեսն անցնելով, ջուրը մղվում է անյոնիտային ֆիլտրերի միջով, որտեղից հզոր պոմպերն այն 1,2 մթնոլորտային ճնշմամբ մղում են դեաէրատորների մեջ: Այստեղ ջուրն ու գոլորշին միախառնվում են, տաքանում մինչև 103—104 աստիճան: Եռացման այս աստիճանում ջրից անջատվում է թթվածինը: Այնուհետև հզոր պոմպերը եռման ջուրը մղում են վեց մթնոլորտային ճնշման դեաէրատորի մեջ, ուր ջերմաստիճանը բարձրանում է մինչև 158-ի: Ջուրը եռում է, գոլորշին մոլեգնում, բայց մարդու ձեռքը սանձում է այն, ստիպում անցնել ևս մի քանի պրոցես և տաքանալ մինչև 560 աստիճան: Եվ ահա գոլորշու անսանձ հոսանքը մղվում է տուրբինների մեջ, պտտում հզոր գեներատորները, որտեղ և սառը մետաղից ծնվում է լույսը:

Երվանդ Հարությունյանը ժպտում է. պարզ ու հասարակ ժպիտ, որի մեջ այնքա՜ն իմաստ կա:

— Այս ամենը կատարվում է փակ սարքերի մեջ, ոչինչ հնարավոր չէ ցույց տալ: Ափսոսում եմ, բայց ինչ արած: Պետք է ընկալել հոգու և մտքի աչքերով, այլապես խոսքը չի կարող պարզաբանել այն ամբողջ բարդ գործողությունը, որի շնորհիվ ջուրը դառնում է ուժ ու հզորություն: Եվ ահա այս ամենը կառուցել, պատրաստել են մեր մարդիկ: Հիշում եմ...

Ո՛չ, բարեկամ, բավական է որքան քեզ կբաղեցրինք, կտրեցինք աշխատանքից: Եթե հարկ է արդ հիշել մարդկանց ու նրանց գործերը, ապա կթերթենք այս մեծ կառույցի շինարարության գրված ու չգրված պատմության էջերը, և մեր առջև կհառնեն դեմքեր ու դեպքեր, որ մի օր պիտի դառնան չքնաղ մի վեպի ատաղձը:

Այդ մարդիկ են, որ մի օր ասին.

— Եվ թող լույս լինի...

Եվ լույսը եղավ, լույսը ծնվեց հզոր ձեռքերի սեղմումից, մարդկանց քրտինքի կաթիլներից, ծնվեց կառույցի հերոսական տարեգրությունից:

Ուրեմն թերթենք այդ տարեգրության էջերը, և ծանոթանանք մարդկանց հերոսական գործերի դրվագներին:



ԷԼԵԿՏՐԱՇԻՆԱՐԱՐՆԵՐԻ ՆՈՐ ՀԱՂԹԱՆԱԿԸ

Այս տարեմուտին գործարկվեցին կայանի երրորդ տուրբոգեներատորն ու երկրորդ կաթսան:

Այս նվաճումը ձեռք բերվեց շինարարների ու մոնտաժողների անձնվեր աշխատանքով: Կառուցողների ինտերնացիոնալ կոլեկտիվը պատվով կատարեց ստանձնած պարտավորությունը. 1963 թվականին կյանքի ուղեգիր ստացան երեք տուրբոգեներատորներ ու երկու կաթսա: Այժմ արդեն կայանի կարողությունը հասնում է 150 հազար կիլովատի: Շինարարների ու մոնտաժողների բարեկամությունն ավելի ամուր է, քան բետոնապատվող այն հիմքերը, որոնց վրա ամրացվում են սարքավորումները:

Ջերմային կայանի կառուցմանը մասնակցում են մի շարք կազմակերպություններ: Պետք է ասել, որ նրանք բոլորն էլ հաջողությամբ են կատարում իրենց առաջադրանքները: Առանձնապես պետք է նշել Ավագ Գալուստովի ղեկավարած՝ «Յուժտեպլոէներգոմոնտաժ»-ի Երևանի տեղամասի կոլեկտիվի աշխատանքը:

ՏՈՒՐԲՈԳԵՆԵՐԱՏՈՐԻ ՏԵՂԱՄԱՍՈՒՄ

Այստեղ գործարկման հետ կապված վերջին աշխատանքները կատարեց վարպետ մոնտաժող Վլադիմիր Եֆրեմովի ղեկավարած բրիգադան: Մոնտաժողները հմտորեն տեղադրեցին տուրբինի կարգավորման սարքը:

Անձնվիրաբար աշխատեցին Ֆյոդր Բելուխայի ղեկավարած բրիգադայի անդամները: Նախագործարկման օրերին, խնայված ժամանակի հաշվին նրանք տեղադրեցին երկու նախապաշտպանիչ կափարիչները: Ետ չմնացին նաև Անդրեյ Գեդեյկոյի ղեկավարած բրիգադայի անդամները: Նրանք ժամանակից շուտ ավարտեցին էլեկտրահաղորդման գծի անցկացումը, ինչպես նաև շարժիչի նորոգումը: Նախագործարկման վերջին օրերին հիանալի էին աշխատում բոլորը: Դրա համար էլ տուրբոգեներատորը փորձարկման պատրաստվեց նախատեսված ժամկետից երկու օր շուտ:

ՆԱ ԱՐԺԱՆԻ Է

Էդվարդ Շաքուրյանը ոչ կաթսա է մոնտաժում, ոչ էլ տուրբոգեներատոր: Սակայն առանց նրա մասնակցության ոչ մի սարքավորում չի տեղադրվում գլխավոր կորպուսում:

Կաթսայի և տուրբոգեներատորի վրա կախվում էին կռունկների կճիթները: Ռելսերի վրայով սահում էր կամրջակային ամբարձիչը: Որպեսզի այդ կռունկներն անխափան աշխատեն, գիշեր ու ցերեկ գլխավոր տեղամասերում էր լինում անվանի մեխանիկատորը: Նա աչալուրջ հետևում էր մեխանիզմների աշխատանքին, հարկ եղած դեպքում անմիջապես վերացնում խափանումը:

Երիտասարդ մեխանիկատորին շատերն են ճանաչում ու հարգում շինմասում: Բոլորը գոհ են նրա աշխատանքից: Մի քանի ամիս առաջ «Յուժտեպլոէներգոմոնտաժ»-ի Երևանի տեղամասի սկզբնական պարտիական կազմակերպությունը նրան ընդունեց կոմունիստական պարտիայի շարքերը:

ՈՐ ՎԱՌ ՄՆԱՆ ԼՈՒՅՍԵՐԸ

Ով գեթ մեկ անգամ գիշերը եղել է ջերմաէլեկտրակենտրոնի շինարարությունում, անշուշտ տեսել է հազարավոր լամպերն ու լուսարձակները: Որպեսզի այդ լամպերն ու լուսարձակները լուսավորեն մարդկանց ճանապարհը, քրտնաջան են աշխատել էլեկտրիկները, աշխատել են, որ առատ լինի լույսը, որ լույսով ողողվեն շինարարական բոլոր հրապարակները, կորպուսները, տեղամասերը... Էլեկտրիկները պատվով կատարեցին իրենց խնդիրը՝ ամբողջ շինարարությունն ապահովեցին լույսով: Ոչ միայն լույսով, քանի՛, քանի մեխանիզմներ են աշխատում էլեկտրականությամբ: Անհրաժեշտ է ապահովել դրանց անխափան աշխատանքը: Էլեկտրիկներ Ժորա և Արշավիր Բաղդասարյաններն անմիջապես վերացնում էին գծերի վնասվածքներն ու վթարները, նորմալ պայմաններ ստեղծում մեխանիզմների, ինչպես նաև մոնտաժողների, կողողների համար:

Նախագործարկման եռուն օրերին էլեկտրիկները լարել էին ուժերը, գործում էին առավել հմտությամբ: Նրանց անձնվեր աշխատանքը զուր չանցավ: Այն տվեց հիանալի արդյունք: Էլեկտրիկների վառած լամպերի ու լուսարձակների լույսի տակ գիշեր ու ցերեկ աշխատեցին էներգաշինարարները, աշխատեցին, որպեսզի վառվեն ու վառ մնան միլիոնավոր նոր լամպեր, որպեսզի հոսանք ստանան ռեսպուբլիկայի արդյունաբերությունը, քաղաքները, գյուղերը:

ԴԻՐԻԺՈՐԸ

Տուրբոգեներատորի փորձարկման ժամ է: Տուրբինի արտադրամասի պետ Մայիս Դիլանյանը տարերքի մեջ է: Ցուցումներ է տալիս:

— Միացրե՛ք գոլորշին:

— Փականներն ամրացրե՛ք:

— Բացե՛ք փականները:

Այդ պահին նա ոգեշնչված է ինչպես դիրիժորը:

Այո՛, Մայիս Դիլանյանը դիրիժորի էր նը-

ժան: Պակասում էր միայն դիրիժորական փայտիկը: Այդ հանգամանքը չխանգարեց, որ տուրբոգեներատորի բոլոր մասերը ներդաշնակորեն սկսեն իրենց «համերգը»:

Նոր տարվա առաջին իսկ օրից էներգաշինարարները նոր եռանդով ձեռնամուխ եղան չորրորդ և վեցերորդ տուրբոգեներատորների շինարարության ու տեղադրման աշխատանքներին: Նրանք ամեն ինչ կանեն այս ագրեգատները ևս ժամկետից շուտ շահագործման հանձնելու համար:



Նրանք ամեն ինչ կանեն... Սովորական, թղթակիցների կողմից հազար-հազար անգամ կրկնված խոսք: Այնքան սովորական, որ հաճախ կարդալիս ուշադրության չենք առնում: Բայց այժմ, երբ թերթում ես կառույցի մարդկանց աշխատանքային սխրանքների տարեգրության էջերը, հանդիպում ես այդ խոսքերին և մեկնում շինարարություն, նոր ես միայն կգում, թե որքան իմաստ կա դրանց մեջ և ինչպիսի մեծ ճշմարտություն են արտահայտում:

Ընթերցո՛ղ, մի՛ կարմանա, որ ես քեզ մատուցեցի լրագրողի օրագրի էջերը հունվարյան օրերից: Այդ օրերը, թվում է, պատմության գիրկն են անցել և դարձել հուշ: Բայց չէ՞ որ հերոսների կատարած գործերը հուշ չեն դառնում, այլ հուշարձան՝ հավերժ ի տես սերունդներին: Եվ, եթե արդ վերհիշում ենք նրանց գործերը, ապա միայն այն բանի համար, որ նրանց աշխատանքային սխրանքներն օրինակ դառնան բոլորի համար, որ նրանց անունները հավերժ ապրեն:

Դուք ծանոթացաք հունվարյան օրերի պատմությանը միայն: Հապա գարո՞ւնը: Ուրեմն, լսեցե՛ք...

## ՀՍԿԱՆ ԹԱՓ Է ԱՌՆՈՒՄ

Կառույցն ընդարձակվում է, թևերն ավելի լայնորեն է փռում տասնյակ հեկտարների վրա: Ծնվում են նոր օբյեկտներ, կազմակերպվում մոնտաժային նոր հրապարակներ:

Դեռ տարեմուտին, երրորդ տուրբոգեներատորի ու երկրորդ կաթսայի գործարկումից անմիջապես հետո, էներգաշինարարները ձեռնամուխ եղան չորրորդ տուրբոգեներատորի և երկրորդ կաթսայի գործարկման աշխատանքներին: Հունվարի վերջին շինարարներն արդեն ավարտել էին այն բոլոր հիմնական գործերը, որոնք կապված են ագրեգատի մոնտաժման հետ: «Յուժտեպլոէներգոմոնտաժ»-ի Ա. Գալուստովի ղեկավարած կոլեկտիվը պատրաստվում էր տուրբինի և կաթսայի մոնտաժմանը: Վլադիմիր Եֆրեմովի, Օլեգ Տեխմիստրենկոյի, Պյոտր Կոշկոյի բրիգադները մոնտաժային հրապարակում սարքավորումներն են պատրաստում:

Եվ, ահա, Վլադիմիր Եֆրեմովի ղեկավարած բրիգադան սկսեց տուրբինի կոնդենսատորի տեղադրումը:

Չորրորդ տուրբոգեներատորի մոնտաժման համար նախատեսված ժամկետն ավելի կարճ է, քան մյուս ագրեգատներինն էր: Եվ այդ բնական է: Նախորդների փորձն օգնում է մոնտաժողներին: Դրա համար էլ բոլորը համոզված են, որ ագրեգատը կսկսի հոսանք տալ ոչ թե ընթացիկ տարվա երրորդ եռամսյակի վերջին, այլ սկզբին:

Որպեսզի չորրորդ տուրբոգեներատորը էներգիա տա, պետք է գործարկվի նաև երրորդ կաթսան:

Նախորդների համեմատությամբ չորրորդ կաթսայի մոնտաժման ժամկետը խիստ սուղ է: Բայց այդ չի ընկճում մոնտաժողներին: Կասկած չկա, որ Ռաֆիկ Հովսեփյանի ղեկավարած կոլեկտիվը կաթսայի մոնտաժումը կավարտի պարտավորությամբ ստանձնած ժամկետում և ընթացիկ տարում ռեսպուբլիկայի արդյունաբերությունը կստանա 50 հազար կիլովատ լրացուցիչ էներգիա և ժամում 420 տոննա գոլորշի:

Բայց դրանով չի սահմանափակվում ջերմային կայանը կառուցողների աշխատանքը:

Կոլեկտիվը միաժամանակ աշխատում է վեցերորդ ագրեգատի տեղամասում: Մինչև ընթացիկ տարվա վերջը այստեղ պետք է ավարտվեն շինարարական բոլոր աշխատանքները, որպեսզի մոնտաժողներն սկսեն տեղադրել մեքենայական մասերն ու էլեկտրական սարքավորումները:

Չորրորդից հետո նախատեսված է գործարկել ոչ թե հինգերորդ ագրեգատը, այլ վեցերորդը, որը կունենա մինչև հիմա շարք մտած երեք ագրեգատների հզորությունը, այսինքն՝ 150 հազար կիլովատ: Դրա հզորությունն էլ նկատի ունենալով է, որ այն կառուցվում է արտահերթ:

...Էներգետիկ հսկան նոր թափ է առել, հզոր թափ: Հաստատության օրեր է ապրում կառույցը: Ամռանը կլինի մեծ «բերքահավաքը»՝ չորրորդ ագրեգատի լուսավոր «հունձը»:

## ՀՐԱՇԱԳՈՐԾ ՁԵՌՔԵՐ

Իսկ կառույցը դեռ թևերն է փռում: Ագրեգատների տեղադրմանը կուգընթաց, այս ու այնտեղ վեր են խոյանում նորանոր շինություններ, որոնց նպատակը անծանոթի համար անհասանելի է:

Ահա բուն էլեկտրակայանից անդին վեր է խոյացել հսկա մի բուրգ: Ամբողջովին երկաթբետոնից է: Քանի մոտենում ես, այնքան խոշորանում, այնքան հզոր է թվում: Եվ տարօրինակն այն է, որ այդ վիթխարի բուրգը ոչ թե նստած է գետնին, այլ խաչաձև հեծանների վրա: Երկաթե ոլորապտույտ մի աստիճանաշար գետնից բարձրանում է բուրգի պատն ի վեր, մինչև կատարը ու այնտեղ կորչում, կարծես ձուլվում է երկնի կապույտին:

Շուրջդ շռինդ է, մեքենաների հզոր աղմուկ, մետաղի հռնդոց:

Երիտասարդ մի շինարար աջ ու ձախ հրահանգներ է տալիս, ապա մոտենում.

— Կորյուն Գրիգորյան, շինվարչության առաջին շինտեղամասի աշխղեկ:

Ժպտում է նա: Հավանաբար կարմանում է. այս թղթակիցներն ինչ են կիրակնօրյա այս վաղ առավոտին քաղաքից թռել-հասել այստեղ:

Այդ պահին նրան է մոտենում բարձրահասակ, ըմբիշի կազմվածքով մի երիտասարդ:

— Ծանոթացեք, խնդրեմ, կոմունիստական աշխատանքի բրիգադայի ղեկավար Ռաֆիկ Մելքոնյան:

— Ո՞րն է ձեր բրիգադայի հիմնական աշխատանքը:

— Հիմնակա՞նը,—Ռաֆիկ Մելքոնյանը ժպտում է,—դժվար է հիմնականը երկրորդականից ջոկել: Մեզ մոտ երկրորդական գործեր չըկան: Սառնարաններ ենք կառուցում, բնակելի տներ,—ձեռքի լայն ափով մի աղեղ է գծում օդում, ու երբ հետևում ես այդ աղեղին, հայացքդ միանգամից չի կարողանում ընդգրկել տարածությունը:

Հայացքս չեմ կարողանում կտրել բուրգից: Հավանաբար կռահելով, որ դրա դերն ու նշանակությունը չեմ հասկանում, աշխղեկը միջամտում է:

— Սառնարանը հենց սա է, որ կա:— Եվ, այլևս չսպասելով լրացուցիչ հարցերի, շարունակում է բացատրել.—Դուք գիտեք, որ մեր կայանը ջերմային է: Այդ ամբողջ բարդ ապարատուրան, աշխատելով բարձր ջերմության գոլորշու ճնշման տակ, բնականաբար տաքանում է: Սառեցման համար կանգնեցնել չի կարելի, ուրեմն պետք է այդ անել աշխատանքին զուգընթաց: Իսկ դրա համար սառը ջուր է հարկավոր: Սառեցնող ջրի շրջապտույտ սիստեմ ստեղծելու համար մենք պետք է ունենանք սառնարաններ: Երբ ջրի մի որոշակի քանակություն սառեցնում է շիկացող տուրբիններն ու գեներատորները, բնականաբար տաքանում է: Ահա այդ տաք ջուրը պոմպակայանը մղում է սառնարան, սառեցվում և նորից մղվում է իր հիմնական նպատակին:

Այս բուրգն էլ հենց սառնարանն է և ունի պարզ կառուցվածք: Ոչ մի ապարատ, ոչ մի մեքենա չկա այստեղ: Սա պարզապես երկաթ-բետոնե մի հսկա խողովակ է, հիմքում 48, իսկ վերևում՝ 27 մետր տրամագծով: Ունի 1520 քառ. մետր սառեցման մակերես:

Հիրավի, պարզ կառուցվածք ունի սառնարանը: Տաք ջուրը, մղվելով այստեղ, ճյուղավորվում է ջրատար առուների ցանցի մեջ ու այնտեղից էլ լցվում մի քանի շերտով շեղակի դըրված տախտակյա ցանցի վրա, վերածվում է անձրևափոշու և թափվում ավազանի մեջ: Եվ, որովհետև սառնարանի հիմքը դրված է հեծանների վրա և բաց է, ուստի նրա ներսում առաջանում է օդափոխանակության հզոր հոսանք, որը և սառեցնում է այդ տաք անձրևը: Լցվելով ավազանի մեջ, արդեն հովացած ջուրը ավտոմատ կերպով նորից գնում է սառեցնելու գեներատորներն ու մյուս սարքերը:

— Մենք այսպիսի հինգ սառնարան ենք կառուցելու,— ասում է աշխղեկը:

Աշխղեկի ձայնը հաճախ խլանում է էքսկավատորների, բուլդոզերների հուժկու աղմուկի մեջ: Աշխատանքը շարունակվում է այնպիսի թափով, որ կարմանում ես: Րոպե առ րոպե շրջապատը փոխում է տեսքը, երրորդ սառնարանի հիմքի փոսորակը խորանում է այնքան, որ արդեն հազիվ է նկատվում էքսկավատորի կընճիթը:

— Լավ, համերաշխ կոլեկտիվ է, իսկական կոմունիստական:

Նայում եմ Ռաֆիկ Մելքոնյանի ջահել, ժըպտուն դեմքին և չեմ ուզում հավատալ, որ նա շինարարական աշխատանքների այդպիսի փորձ ունի: Ավարտել է Շիրվանզադեի անվան դըպրոցը, աշխատել Արկնիգէսի շինարարությունում, մեկնել սովետական բանակ և երեք տարի ապնըվորեն ծառայել, ապա կառուցել է Երևանգէսը, աշխատել Թբիլիսի խճուղու վրա կառուցվող բնակելի շենքի վրա, այնտեղ էլ բնակարան է ստացել, իսկ հիմա կառուցում է ջերմակենտրոնը: Եվ կարողացել է վարպետանալ մի քանի մասնագիտությունների մեջ ու, ահա, ղեկավարում է կոմպլեքսային այն բրիգադան, որն առաջինն այստեղ նվաճեց կոմունիստականի կոչումը:

— Խաչիկ, պատմիր քո տղաների մասին,— խնդրում եմ ես:

— Դե, ի՞նչ պատմեմ, սովորական մարդիկ են էլի,— լռջանում է նա,— սովորական, մի քիչ էլ անսովոր: Աշխատում են առանց հրահանգի, ամեն մեկն իր գործը գիտե: Ե՛վ բետոնի գործը գիտեն, և՛ հյուսնի, և՛ երկաթից են գլուխ հանում: Դրա համար էլ «կոմպլեքսային» ենք: Նեղ մասնագիտացված օղակներ չունենք: Քառասուներկու հոգի ենք և ամեն ինչ մենք ենք ա-

ման: Պակասում էր միայն դիրիժորական փայտիկը: Այդ հանգամանքը չխանգարեց, որ տուրբոգեներատորի բոլոր մասերը ներդաշնակորեն սկսեն իրենց «համերգը»:

Նոր տարվա առաջին իսկ օրից էներգաշինարարները նոր եռանդով ձեռնամուխ եղան չորրորդ և վեցերորդ տուրբոգեներատորների շինարարության ու տեղադրման աշխատանքներին: Նրանք ամեն ինչ կանեն այս ագրեգատները ևս ժամկետից շուտ շահագործման հանձնելու համար:



Նրանք ամեն ինչ կանեն... Սովորական, թղթակիցների կողմից հազար-հազար անգամ կրկնված խոսք: Այնքան սովորական, որ հաճախ կարդալիս ուշադրության չենք առնում: Բայց այժմ, երբ թերթում ես կառույցի մարդկանց աշխատանքային սխրանքների տարեգրության էջերը, հանդիպում ես այդ խոսքերին և մեկնում շինարարություն, նոր ես միայն զգում, թե որքան իմաստ կա դրանց մեջ և ինչպիսի մեծ ճշմարտություն են արտահայտում:

Ընթերցո՛ղ, մի՛ կարմանա, որ ես քեզ մատուցեցի լրագրողի օրագրի էջերը հունվարյան օրերից: Այդ օրերը, թվում է, պատմության գիրկն են անցել և դարձել հուշ: Բայց չէ՞ որ հերոսների կատարած գործերը հուշ չեն դառնում, այլ հուշարձան՝ հավերժ ի տես սերունդներին: Եվ, եթե արդ վերհիշում ենք նրանց գործերը, ապա միայն այն բանի համար, որ նրանց աշխատանքային սխրանքներն օրինակ դառնան բոլորի համար, որ նրանց անունները հավերժ ապրեն:

Դուք ծանոթացաք հունվարյան օրերի պատմությանը միայն: Հապա գարո՞ւնը: Ուրեմն, լսեցե՛ք...

## ՀՍԿԱՆ ԹԱՓ Է ԱՌՆՈՒՄ

Կառույցն ընդարձակվում է, թևերն ավելի լայնորեն է փռում տասնյակ հեկտարների վրա: Ծնվում են նոր օբյեկտներ, կազմակերպվում մոնտաժային նոր հրապարակներ:

Դեռ տարեմուտին, երրորդ տուրբոգեներատորի ու երկրորդ կաթսայի գործարկումից անմիջապես հետո, էներգաշինարարները ձեռնամուխ եղան չորրորդ տուրբոգեներատորի և երկրորդ կաթսայի գործարկման աշխատանքներին: Հունվարի վերջին շինարարներն արդեն ավարտել էին այն բոլոր հիմնական գործերը, որոնք կապված են ագրեգատի մոնտաժման հետ: «Յուժտեպլոէներգոմոնտաժ»-ի Ա. Գալուստովի ղեկավարած կոլեկտիվը պատրաստվում էր տուրբինի և կաթսայի մոնտաժմանը: Վլադիմիր Եֆրեմովի, Օլեգ Տեխմիստրենկոյի, Պյոտր Կոշևոյի բրիգադները մոնտաժային հրապարակում սարքավորումներն են պատրաստում:

Եվ, ահա, Վլադիմիր Եֆրեմովի ղեկավարած բրիգադան սկսեց տուրբինի կոնդենսատորի տեղադրումը:

Չորրորդ տուրբոգեներատորի մոնտաժման համար նախատեսված ժամկետն ավելի կարճ է, քան մյուս ագրեգատներինն էր: Եվ այդ բնական է: Նախորդների փորձն օգնում է մոնտաժողներին: Դրա համար էլ բոլորը համոզված են, որ ագրեգատը կսկսի հոսանք տալ ոչ թե ընթացիկ տարվա երրորդ եռամսյակի վերջին, այլ սկզբին:

Որպեսզի չորրորդ տուրբոգեներատորը էներգիա տա, պետք է գործարկվի նաև երրորդ կաթսան:

Նախորդների համեմատությամբ չորրորդ կաթսայի մոնտաժման ժամկետը խիստ սուղ է: Բայց այդ չի ընկճում մոնտաժողներին: Կասկած չկա, որ Ռաֆիկ Հովսեփյանի ղեկավարած կոլեկտիվը կաթսայի մոնտաժումը կավարտի պարտավորությամբ ստանձնած ժամկետում և ընթացիկ տարում ռեսպուբլիկայի արդյունաբերությունը կստանա 50 հազար կիլովատ լրացուցիչ էներգիա և ժամում 420 տոննա գոլորշի:

Բայց դրանով չի սահմանափակվում ջերմային կայանը կառուցողների աշխատանքը:

Կոլեկտիվը միաժամանակ աշխատում է վեցերորդ ագրեգատի տեղամասում: Մինչև ընթացիկ տարվա վերջը այստեղ պետք է ավարտվեն շինարարական բոլոր աշխատանքները, որպեսզի մոնտաժողներն սկսեն տեղադրել մեքենայական մասերն ու էլեկտրական սարքավորումները:

Չորրորդից հետո նախատեսված է գործարկել ոչ թե հինգերորդ ագրեգատը, այլ վեցերորդը, որը կունենա մինչև հիմա շարք մտած երեք ագրեգատների հզորությունը, այսինքն՝ 150 հազար կիլովատ: Դրա հզորությունն էլ նկատի ունենալով է, որ այն կառուցվում է արտահերթ:

...Էներգետիկ հսկան նոր թափ է առել, հզոր թափ: Հասունության օրեր է ապրում կառույցը: Ամռանը կլինի մեծ «բերքահավաքը»՝ չորրորդ ագրեգատի լուսավոր «հունձը»:

## ՀՐԱՇԱԳՈՐԾ ՁԵՌՔԵՐ

Իսկ կառույցը դեռ թևերն է փռում: Ագրեգատների տեղադրմանը զուգընթաց, այս ու այնտեղ վեր են խոյանում նորանոր շինություններ, որոնց նպատակը անծանոթի համար անհասանելի է:

Ահա բուն էլեկտրակայանից անդին վեր է խոյացել հսկա մի բուրգ: Ամբողջովին երկաթբետոնից է: Քանի մոտենում ես, այնքան խոշորանում, այնքան հզոր է թվում: Եվ տարօրինակն այն է, որ այդ վիթխարի բուրգը ոչ թե նստած է գետնին, այլ խաչաձև հեծանների վրա: Երկաթե ոլորապտույտ մի աստիճանաշար գետնից բարձրանում է բուրգի պատն ի վեր, մինչև կատարը ու այնտեղ կորչում, կարծես ձուլվում է երկնի կապույտին:

Շուրջդ ջռինդ է, մեքենաների հզոր աղմուկ, մետաղի հռնդոց:

Երիտասարդ մի շինարար աջ ու ձախ հրահանգներ է տալիս, ապա մոտենում.

— Կորյուն Գրիգորյան, շինվարչության առաջին շինտեղամասի աշխղեկ:

Ժպտում է նա: Հավանաբար կարմանում է. այս թղթակիցներն ինչ են կիրակնօրյա այս վաղ առավոտին քաղաքից թռել-հասել այստեղ:

Այդ պահին նրան է մոտենում բարձրահասակ, ըմբիշի կազմվածքով մի երիտասարդ:

— Ծանոթացեք, խնդրեմ, կոմունիստական աշխատանքի բրիգադայի ղեկավար Ռաֆիկ Մելքոնյան:

— Ո՞րն է ձեր բրիգադայի հիմնական աշխատանքը:

— Հիմնակա՞նը,—Ռաֆիկ Մելքոնյանը ժըպտում է,— դժվար է հիմնականը երկրորդականից ջոկել: Մեկ մոտ երկրորդական գործեր չըկան: Սառնարաններ ենք կառուցում, բնակելի տներ,— ձեռքի լայն ափով մի աղեղ է գծում օդում, ու երբ հետևում ես այդ աղեղին, հայացքդ միանգամից չի կարողանում ընդգրկել տարածությունը:

Հայացքս չեմ կարողանում կտրել բուրգից: Հավանաբար կռահելով, որ դրա դերն ու նշանակությունը չեմ հասկանում, աշխղեկը միջամտում է:

— Սառնարանը հենց սա է, որ կա:— Եվ, այլևս չսպասելով լրացուցիչ հարցերի, շարունակում է բացատրել.—Դուք գիտեք, որ մեր կայանը ջերմային է: Այդ ամբողջ բարդ ապարատուրան, աշխատելով բարձր ջերմության գոլորշու ճնշման տակ, բնականաբար տաքանում է: Սառեցման համար կանգնեցնել չի կարելի, ուրեմն պետք է այդ անել աշխատանքին զուգընթաց: Իսկ դրա համար սառը ջուր է հարկավոր: Սառեցնող ջրի շրջապտույտ սիստեմ ստեղծելու համար մենք պետք է ունենանք սառնարաններ: Երբ ջրի մի որոշակի քանակություն սառեցնում է շիկացող տուրբիններն ու գեներատորները, բնականաբար տաքանում է: Ահա այդ տաք ջուրը պոմպակայանը մղում է սառնարան, սառեցվում և նորից մղվում է իր հիմնական նըպատակին:

Այս բուրգն էլ հենց սառնարանն է և ունի պարզ կառուցվածք: Ոչ մի ապարատ, ոչ մի մեքենա չկա այստեղ: Սա պարզապես երկաթ-բետոնե մի հսկա խողովակ է, հիմքում 48, իսկ վերևում՝ 27 մետր տրամագծով: Ունի 1520 քառ. մետր սառեցման մակերես:

Հիրավի, պարզ կառուցվածք ունի սառնարանը: Տաք ջուրը, մղվելով այստեղ, ճյուղավորվում է ջրատար առուների ցանցի մեջ ու այնտեղից էլ լցվում մի քանի շերտով շեղակի դըրված տախտակյա ցանցի վրա, վերածվում է անձրևափոշու և թափվում ավազանի մեջ: Եվ, որովհետև սառնարանի հիմքը դրված է հեծանների վրա և բաց է, ուստի նրա ներսում առաջանում է օդափոխանակության հզոր հոսանք, որը և սառեցնում է այդ տաք անձրևը: Լցվելով ավազանի մեջ, արդեն հովացած ջուրը ավտոմատ կերպով նորից գնում է սառեցնելու գեներատորներն ու մյուս սարքերը:

— Մենք այսպիսի հինգ սառնարան ենք կառուցելու,— ասում է աշխղեկը:

Աշխղեկի ձայնը հաճախ խլանում է էքսկավատորների, բուլդոզերների հուժկու աղմուկի մեջ: Աշխատանքը շարունակվում է այնպիսի թափով, որ կարմանում ես: Րոպե առ րոպե շըրջապատը փոխում է տեսքը, երրորդ սառնարանի հիմքի փոսորակը խորանում է այնքան, որ արդեն հազիվ է նկատվում էքսկավատորի կընճիթը:

— Լավ, համերաշխ կոլեկտիվ է, իսկական կոմունիստական:

Նայում եմ Ռաֆիկ Մելքոնյանի ջահել, ժըպտուն դեմքին և չեմ ուզում հավատալ, որ նա շինարարական աշխատանքների այդպիսի փորձ ունի: Ավարտել է Շիրվանզադեի անվան դըպրոցը, աշխատել Արզնիգէսի շինարարությունում, մեկնել սովետական բանակ և երեք տարի ազնըվորեն ծառայել, ապա կառուցել է Երևանգէսը, աշխատել Թբիլիսի խճուղու վրա կառուցվող բնակելի շենքի վրա, այնտեղ էլ բնակարան է ստացել, իսկ հիմա կառուցում է ջերմակենտրոնը: Եվ կարողացել է վարպետանալ մի քանի մասնագիտությունների մեջ ու, ահա, ղեկավարում է կոմպլեքսային այն բրիգադան, որն առաջինն այստեղ նվաճեց կոմունիստականի կոչումը:

— Խաչիկ, պատմիր քո տղաների մասին,— խնդրում եմ ես:

— Դե, ի՞նչ պատմեմ, սովորական մարդիկ են էլի,— լռշանում է նա,— սովորական, մի քիչ էլ անսովոր: Աշխատում են առանց հրահանգի, ամեն մեկն իր գործը գիտե: Ե՛վ բետոնի գործը գիտեն, և՛ հյուսնի, և՛ երկաթից են գլուխ հանում: Դրա համար էլ «կոմպլեքսային» ենք: Նեղ մասնագիտացված օղակներ չունենք: Քառասուներկու հոգի ենք և ամեն ինչ մենք ենք ա-

նում: Աշխատանքային որոշակի ժամ չունենք՝ մեր կամքով: Մեր ժամացույցն արևն է: Բայց ուրախանալու, հանգստանալու, սովորելու ժամանակ էլ ենք գտնում: Այ, մեր մյուս Ռաֆիկը՝ Հարությունյանը, պոլիտեխնիկական ինստիտուտի երեկոյան բաժնի ուսանող է, Ժորա Պետրոսյանը՝ հաշվիչ մեքենաների տեխնիկումի երրորդ կուրսում է սովորում...

— Օգնո՞ւմ եք իրար...

— Ի՞նչ խոսք, բայց դե դժվար է ասել, թե ով ում և ինչով է օգնել:— Մելքոնյանը ճակատն է շփում ինչ-որ բան հիշելու համար,— չէ, դժվարանում եմ ասել: Ի՞նչն է հետաքրքրում ձեզ...

— Դե, լավ, պատմիր, թե ո՛նց ամուսնացրիք Վարդգես Եսայանին,— օգնության է հասնում աշխղեկը:

— Դա հետաքրքրական պատմություն է և երկար, կարիք կա՞,— մտմտում է Ռաֆիկը:

— Պատմի՛ր, պատմի՛ր,— խնդրում են տղաները, թեև իրենք էլ այդ ամուսնության «մեղսակիցներից» են:

— Ի՞նչ պատմեմ: Սովորական ամուսնություն էր, միայն թե հարսնախոսը ոչ թե մեկն էր, այլ՝ բոլորս: Աղջկա մայրը, ճիշտն ասած, համառում էր, կառչում ինչ-որ հին օրենքներից, իսկ մենք այդ օրենքները չգիտեինք, չէինք ուսումնասիրել և պարզապես ասացինք, որ եթե գործը խաղաղությամբ չավարտեն, ապա աղջիկն ինքը կգա: Մայրը, վերջապես, տվեց իր «օրհնանքը», և մենք էլ կոմունիստական հարսանիք կազմակերպեցինք: Այս քանի օրն էլ բնակարան կտանք... Ես, ախր, բնակարանային հանձնաժողովի անդամ եմ և հաճախ «կողմնապահություն» եմ անում, աշխատում եմ, որ մեր տղաները շատ և լավն ստանան:

Մեր տղաները... Ռաֆիկ Մելքոնյանն այնպիսի սիրով է արտասանում այս երկու բառը, որ ուղղակի զարմանում ես: Որքա՜ն սեր ու հարգանք կա նրա խոսքերում իր աշխատանքային ընկերների նկատմամբ: Այդքան մոտ ու հարազատ՝ եղբայրներն են լինում միայն:

Ահա այդ տղաները՝ Եվգենի Չիրկովը, Վարդգես Եսայանը, Դմիտրի Գարգալաշևը, Մելս Վանյանը, Բենիկ Կիրակոսյանը և ուրիշներ:

Ամեն մի մեծ կառույցի կոլեկտիվ մի մեծ ընտանիքի է նման: Եվ այն ստեղծվում է ոչ միանգամից: Հենց որ սկսվում են աշխատանքները, երկրի տարբեր ծայրերից գալիս են հարյուրավոր մասնագետներ: Նրանցից ամեն մեկն իր բնավորությունն է բերում, իր արհեստն ու մասնագիտությունը, իր նախասիրությունները: Առաջին պահի դժվարանում ես հավատալ, որ նրանք կհամակերպվեն նոր պայմաններին, կհաշտվեն միմյանց հետ, կձուլվեն ու կդառնան միասնական մի կամք ու ցանկություն: Բայց ահա անցնում են օրերը, և այդ մեծ կոլեկտիվը դառնում է համերաշխ մի ընտանիք:

Երևանի ջերմաէլեկտրակայանի շինարարությունը կարելի է համարել եղբայրական կառույց: Կառուցողների բազմամարդ կոլեկտիվը բաղկացած է մեր մեծ Միության տարբեր ազգությունների ներկայացուցիչներից:

Իրար հետ միասին են աշխատում Պյոտր Ստարոդոմսկու, Իվան Լևինի, Քաջիկ Շաբանյանի, Միխայիլ Սենինի, Վլադիմիր Եֆրեմովի, Հրաչիկ Հովսեփյանի, Փայլակ Մելքոնյանի, Սերգեյ Կուչոյանի ղեկավարած բրիգադները:

Ստարոդոմսկու բրիգադայում են աշխատում ռուս Վլադիմիր Կոլեսնիկովը, հայ Ռոբերտ Գալստյանը, ուկրաինացի՝ Պյոտր Սիվաշենկոն և ուրիշներ: Ի. Լևինի բրիգադայում են աշխատում փականագործ Հ. Մարտիրոսյանը, կտրող Ա. Իսենկոն, էլեկտրաեռակցող Պ. Ռոժկոն, փականագործ Պ. Ղազարյանը: Քուրդ բուլդոզերավար Ռզա Հաջոյանին շատերն են ճանաչում ջերմային կայանի կառույցներում: Նա մասնակցել է Սևան-Հրազդան կասկադի գէսերի շինարարությանը: Առհասարակ, կառույցում աշխատող մարդկանցից քչերն են, որ Երևանի ջերմային կայանի շինարարությունում են մկրտվել որպես էներգաշինարարներ: Նրանք բոլորն էլ հզոր տուրբոգեներատորներ ու կաթսաներ են մոնտաժել Ռուսաստանում, Ուկրաինայում, Ադրբեջանում և Վրաստանում:

Շինարարներն ու մոնտաժողները համատեղ աշխատանքում ավելի են մտերմանում ու հարազատանում: Նրանք միասին աշխատում են միևնույն օբյեկտում, իրենց տարբեր գործերով ծառայելով միևնույն նպատակին՝ էներգետիկ հսկայի կերտմանը:

Օրինակ, Վիկտոր Ստարոդոմսկու, Քաջիկ Շաբանյանի, Միխայիլ Սենինի, Սերգեյ Կուչոյանի ղեկավարած բրիգադներն այժմ մոնտաժում են երրորդ կաթսան: Նրանց և կոլեկտիվի մյուս անդամների ջանքերով են մարմին առել առաջին և երկրորդ կաթսաները, որոնք այժմ գոլորշի են մատակարարում 50 հազարական կիլովատ կարողությամբ երեք տուրբոգեներատորների:

Այդ բրիգադների անդամները մոնտաժային հրապարակներում հավաքել են կաթսայի եկրային ու կողային էկրանները, բլոկները: Այժմ այդ կիսահավաքած մասերը մոնտաժում են կաթսայի տեղամասում: Մարմին են առնում ծխակուլներն ու գազակուլները, ձգվում են ջրատար, սնման ու շոգետար խողովակները:

Վլադիմիր Եֆրեմովի ինտերնացիոնալ բրիգադան մոնտաժում է 50 հազար կիլովատ հզորությամբ 4-րդ տուրբոգեներատորը: Այստեղ



արդեն տեղակայվում են ստատորն ու ռոտորը: Իսկ տուրբինի հիմքերը վաղուց են ամրացվել: Ընկերական փոխօգնությունը բոլոր բրիգադների աշխատանքային բնավորության գիծ է դարձել: Օրինակ, երրորդ ագրեգատն ու երկրորդ կաթսան գործարկելու օրերին Սերգեյ Կուչոյանի մոնտաժողների բրիգադն ժամանակից մոտ 10 օր շուտ կատարեց իր առաջադրանքը և օգնության հասավ Սենինի բրիգադային:

Վլադիմիր Մելնիկովը Ռուսաստանից է եկել Երևանի ջերմաէլեկտրակայանի շինարարություն, իսկ Քաջիկ Շաբանյանը՝ Բռնակոթ գյուղից: Այստեղ նրանք ծանոթացան ու մտերմացան: Մելնիկովը բրիգադավար էր, մի անպիսի փորձված հիդրոշինարար, որը մոնտաժային աշխատանք է կատարել տասնյակ հզոր էլեկտրակայաններում: Նրա օգնությամբ Ք. Շաբանյանը սովորեց մոնտաժողի դժվարին գործը և հիմա փոխարինում է նրան՝ դարձել է բրիգադավար: Այդ օրինակը եզակի չէ: Առաջին ագրեգատը գործարկելիս շատ քիչ էին հայ մասնագետները: Եվ այդ բնական էր: Չէ՞ որ առաջին անգամ էր Հայաստանում կառուցվում ջերմաէլեկտրակայան: Ռուս, ուկրաինացի և մյուս ազգությունների մասնագետների եղբայրական օգնությամբ շատ հայ երիտասարդներ հմտացան մոնտաժողի մասնագիտության մեջ և այժմ ինքնուրույն կատարում են մոնտաժային գործի ամենաբարդ պրոցեսները: Հիմա ջերմային կայանի կառույցն ունի իր կադրային հիմնական կորիզը: Եվ զուր չէ, որ նրանց այստեղ անվանում են բարեկամության ջահակիրներ:

## ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ՇԱՀԵՐԸ

Երազե՞նք... Մեր կյանքն այնպիսի թափով է առաջադիմում, որ մինչև երազանքդ ավարտում ես, այն արդեն իրականանում է: Ահա նորագույն օրինակը. մինչև ես ուսումնասիրեցի ջերմաէլեկտրակենտրոնի մարդկանց առօրյան, մինչև գրեցի նրանց աշխատանքային սխրանքների մասին, այնքա՜ն նոր իրադարձություններ եղան այնտեղ, որ, թերևս, հարկ կլիներ նորից գնալ ուսումնասիրության և նորից նստել գրասեղանի առջև՝ այդ ամենը թղթին հանձնելու համար:

Ահա արդեն գործարկվեց նաև չորրորդ ագրեգատը: Ընթացիկ տարում դա շինարարների և մոնտաժողների երկրորդ հաղթանակն է: Այժմ արդեն կարելի է ասել, որ կայանի առաջին հերթի շինարարությունն ավարտված է: Գործարկված չորս ագրեգատների հզորությունը հասնում է 200 հազար կիլովատի: Սկսվել են նաև վեցերորդ և յոթերորդ բլոկների հիմնադրման աշխատանքները: Ջերմաէլեկտրակենտրոնի շինարարությունն ընթանում է ամբողջ ճակատով:

Վերջին երկու բլոկների տեղադրմանը կոլեկտիվը ձեռնամուխ եղավ արդեն հասուն, կյանքի փորձությունները ճաշակած, իր ուժերի ծաղկման գագաթնակետին հասած: Եվ այն գիտակցությունը, որ այս երկու ագրեգատները միասին կտան ավելի շատ էլեկտրաէներգիա ու գոլորշի, քան բոլոր մյուսները միասին վերցրած, ավելի է ոգևորում շինարարներին:

Սակայն շատ չհրապուրվենք: Ես ուզում եմ ընթերցողին հիշեցնել, որ Երևանի ջերմաէլեկտրակենտրոնը կունենա յոթ ագրեգատ և նույնքան շոգեբլոկ՝ 650 հազար կիլովատ էլեկտրաէներգիայի արտադրողական հզորությամբ: Պատկերացնո՞ւմ եք, դա զգալի չափով ավելի է, քան Սևան-Հրազդան կասկադի բոլոր հիդրոկայանների հզորությունը միասին վերցրած:

Ջերմաէլեկտրակենտրոնի լրիվ գործարկումից հետո, իսկ դա այնքան էլ հեռու չէ՝ 1966 թվականին, մեծ փոփոխություն կմտնի Հայաստանի էներգասիստեմի ընդհանուր հաշվեկշռի մեջ: Երևանի գործող, նոր կառուցվող, շրջակայքում գործող և կառուցվող արտադրական կարողությունները, գյուղատնտեսության օջախները լիովին կապահովվեն էներգիայով: Այդ լայն հնարավորություններ կընձեռի զգալիորեն բեռնաթափելու Սևան—Հրազդան կասկադի կարողությունները և դրանց էներգիայի մի մասը ուղելու Հայաստանի մոտ և հեռու շրջանները:

Ջերմաէլեկտրակենտրոնն արտադրելու է վիթխարի քանակությամբ գերտաք գոլորշի, որը հատուկ ցանցով կուղարկվի գործարանները, ֆաբրիկաներն ու բնակելի շենքերը: Արդեն այսօր «Պոլիվինիլացետատ» գործարանը հրաժարվել է իր սեփական շոգեկաթսաներից և սնվում է ջերմաէլեկտրակենտրոնից: Շուտով այդ գոլորշին կստանարկվի Ս. Մ. Կիրովի անվան գործարանին և այլ ձեռնարկությունների:

Հեռու չէ այն օրը, երբ Արտաշատ տանող ճանապարհի երկու կողմում փռված տարածությունները կծածկվեն ապակեպատ ջերմատներով: Կոլտնտեսականներն այնտեղ կաճեցնեն վարունգ, պոմիդոր, այլևայլ բանջարեղեն: Երևանցին ձմռան ամիսներին կօգտվի այդ բարիքներից: Թե է՛լ ինչպիսի բարիքների աղբյուր կարող է դառնալ ջերմաէլեկտրակենտրոնը, այսօր դժվար է ասել: Բայց մի բան հաստատ է. այս կայանը խոշոր դեր կխաղա Հայաստանի էներգասիստեմի, մայրաքաղաքի արդյունաբերության, մոտակա շրջանների քաղաքամերձ տնտեսությունների կյանքում:

Ահա համառոտակի այն մասին, թե ինչ է իրենից ներկայացնում Երևանի ջերմաէլեկտրակենտրոնը՝ լույսի և ուժի այդ հզորագույն աղբյուրը:

# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

## ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՆ

(Հայկական ՍՍՌ–ի շինարարության մինիստրության Կիրովականի համաշինարարական տրեստի պարտիական կոմիտեի աշխատանքի փորձից)

Կիրովականը ռեսպուբլիկայի արագ զարգացող արդյունաբերական խոշոր կենտրոններից մեկն է։ Այստեղ վեր են խոյացել վարդագույն տուֆից բազմահարկ տներ, գործարաններ, դպրոցներ. դեպի անտառապատ լեռներն են ձգվել նոր, լայնարձակ պողոտաներ ու փողոցներ։ Քաղաքն օրավուր ընդարձակվում, բարգավաճում ու գեղեցկանում է։ Եվ այդ ամենը շինարարի ստեղծագործ, հերոսական աշխատանքով։ Չկա մի անկյուն, որտեղ չզնգա շինարարի մուրճը, վեր չբարձրանա շինարարական կռունկը։ Քաղաքի տարբեր մասերում, նախկին ամայի տարածություններում ստեղծվել են նոր, բարեկարգ, հարմարավետ թաղամասեր։

Կիրովականի արդյունաբերության զարգացման զուգընթաց լայն թափ է ստանում նաև Կիրովականի շինարարությունը։ Եթե Հայկական ՍՍՌ-ի շինարարության մինիստրության Կիրովականի համաշինարարական տրեստի շինարարական-մոնտաժային աշխատանքների ծավալը 1959 թվականին կազմում էր 8.063 հազար ռուբլի, ապա ընթացիկ տարում այն կազմում է շուրջ 14 միլիոն ռուբլի։ Շինարարական աշխատանքների ծավալի մեծացման հետ զուգընթաց տրեստը մշտապես հարստացել է նոր տեխնիկայով, մեխանիզմներով ու սարքավորումներով. շինարարներն օրավուր հմտանում են իրենց գործում, կիրառում նոր մեթոդներ ու ձևեր, հարստացնում աշխատանքի փորձը։ Այս բոլորի կողքին, սակայն, Կիրովականի համաշինարարական տրեստը տարիներ շարունակ ետ էր մնում, չէր ապահովում պետական առաջադրանքների կատարումը, վատ ցուցանիշներով էր փակում տնտեսական տարին։ Պատճառը, թերևս, կադրերի ոչ ճիշտ ընտրությունն ու տեղաբաշխումն էր։

Տրեստի պարտիական կոմիտեն և պարտիայի Կիրովականի քաղաքային կոմիտեն դեռևս անցյալ տարի վերանայեցին տրեստի մի շարք ղեկավար աշխատողների կազմը, այն ամրապնդեցին թարմ, ավելի գործիմաց ու կազմակերպական ձիրք ունեցող աշխատողներով։ Լուրջ տեղաշարժեր կատարվեցին և նրա պարտիական կազմակերպության գործունեության մեջ, վերանայվեցին ու փոխվեցին պարտիական աշխատանքի որոշ ձևեր ու մեթոդներ։

Պարտիական կոմիտեն ցեխային սկզբնական պարտիական կազմակերպությունների հետ որոշ չափով ուժեղացրեց պարտիական-կազմակերպական ու պարտիական քաղաքական աշխատանքը, դրանք ճիշտ զուգակցելով, ծառայեցրեց շինարարության պահանջներին ու խնդիրներին և տրեստի տնտեսական ղեկավարության հետ այս տարվա առաջին ամիսներին կարողացավ հասնել դրական արդյունքների։ 1964 թվականի ութ ամիսների շինարարական պլանը կատարվել է 102,8 տոկոսով։ Առավել մեծ հաջողությունների են հասել շինարարները ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեի դեկտեմբերյան պլենումի որոշումների կատարման ուղղությամբ՝ քիմիական արդյունաբերության օբյեկտների շինարարության պլանը նույն ժամանակամիջոցում կատարվել է 132,8 տոկոսով։

Ծավալելով սոցիալիստական մրցություն, տրեստի կոլեկտիվը պարտավորվել է շինմոնտաժային աշխատանքների տարեկան պլանը կատարել 1964 թվականի դեկտեմբերի 15-ին՝ 104 տոկոսով։ Այս օրերին տրեստի պարտիական կոմիտեն, պարտիական սկզբնական կազմակերպությունները և ամբողջ կոլեկտիվը ջանք չեն խնայում տված խոստումը կատարելու համար։ Այս տեսակետից Կիրշինտրեստի պարտիական կոմիտեն կուտակել է աշխատանքի որոշ ուսանելի փորձ։

Պարտիական կոմիտեն տրեստի ղեկավարության հետ միասին, տրեստի գործունեությունը բարելավելու նպատակով, մշակել և կիրառում է կոմպլեքս միջոցառումներ։ Գումարվել են պարտիական-տնտեսական ակտիվի նիստեր՝ արտադրության առաջավորների մասնակցությամբ։ Այդ նիստերն անց են կացվել ըստ շինարարական վարչությունների, որտեղ տրեստի մասնագետներն էկոնոմիկական տվյալների կոնկրետ անալիզով բացահայտել են տնտեսական վատ ցուցանիշների պատճառները։ Նախորդ տարիներին տրեստի անբավարար գործունեության պատճառը հիմնականում շինարարական աշխատանքների ոչ ճիշտ կազմակերպումն էր։ Եղել են դեպքեր, երբ շինանյութերը մեքենաներով փոխադրվել են տասնյակ կիլոմետր տարածության վրա, կառուցումապահվել են ավելորդ միավորներ, վատ է օգտագործվել տեխնիկան, հատկապես՝ ամբարձիչ կռունկները և այլն։ Շնորհիվ ձեռնարկված միջոցառումների, դեռևս անցած տնտեսական տարում վերացվեցին մի շարք թերություններ, որոնք արգելակում էին շինարարական տեմպերի վերելքը։

Պարտիական կազմակերպության նախաձեռնությամբ սկսվեց շարժում նոր օբյեկտների կառուցման ժամկետների կրճատման, աշխատանքի արտադրողականության բարձրացման և շինարարական աշխատանքների տեմպերի արագացման համար։ Պարտիական կոմիտեի քարտուղար Սերգեյ Աբելյանի մոտավոր հաշվարկումները ցույց տվին, որ որոշ օբյեկտների կառուցման ժամկետների կրճատումը կտա զգալի օգուտ։ Այսպես՝ բնակելի շենքը նախատեսված է շահագործման հանձնել, օրինակ, 10 ամսում։ Այդ շենքի վրա աշխատում են երեք աշխղեկ, յուրաքանչյուրն ամսական 180 ռուբլի աշխատավարձով, 3 տասնապետ՝ յուրաքանչյուրը 100 ռուբլով, պահակներ և ամբարձիչ կռունկ, որի համար վճարվում է ամսական 100 ռուբլի։ Կրճատելով շենքի հանձնման ժամկետը մեկ ամսով, հիմնարկությունն ստանում է շուրջ 1050 ռուբլու միայն աշխատավարձի ֆոնդի տնտեսում։ Բայց չէ որ նման օբյեկտների թիվը տասնյակների է հասնում և գործի այսպիսի կազմակերպման ու վարման շնորհիվ օգուտն էլ կտասնապատկվի։

Կառույցները ժամկետից շուտ շահագործման հանձնելուն զգալի չափով նպաստում է և այն, որ այժմ այստեղ նախ կառուցվում են արտաքին կոմունիկացիաները, ապա նոր մնացածները։ Բնորոշն այն է, որ քարային աշխատանքներին զուգընթաց անմիջապես կազմակերպվում են նաև շենքի աշխա-

տատար պրոցեսների՝ սանտեխ մոնտաժային աշխատանքները: Աշխատանքի այսպիսի զուգորդումը շինարարության մեծ ճակատ է ստեղծում, հնարավորություն է տալիս արագացնել կառույցի հանձնման ժամկետը:

Պարտիական կոմիտեն ձեռնամուխ եղավ այդ գործին և սկզբնական պարտիական կազմակերպությունների հետ միասին կարողացավ ճիշտ տեղաբաշխել կոմունիստների ուժերը շինարարական հրապարակների վճռական տեղամասերում: Այսպես, ներկայումս տրեստի կոմունիստների 75 տոկոսն անմիջապես աշխատում է իբրև շինարարության բանվորներ ու աշխղեկներ: №№ 1, 2, 3, 4, 5 շինարարական վարչությունների կոմունիստների 85 տոկոսն անմիջապես զբաղված է շինարարական աշխատանքներով:

Տեականորեն ետ մնացող որոշ տեղամասեր ուղարկվեցին փորձված, պրակտիկ աշխատանքում իրենց արդարացրած, հեղինակություն վայելող ընկերներ: № 5 շինարարական վարչությունում, որը շինարարական աշխատանքներ է կատարում գյուղում, գործերը վատ էին կազմակերպված: Այստեղ բանվորական ուժի զգալի պահանջ էր զգացվում, պլանները չէին կատարվում, ընկած էր կարգապահությունը: Վերջերս վարչության պետ առաջադրվեց տրեստի առաջավոր աշխղեկ Հայկ Հարությունյանը, որի ղեկավարած նախկին կոլեկտիվն արժանացել էր կոմունիստական աշխատանքի պատվավոր կոչման: Սկսվեց նոր պայքար՝ ետ մնալը հաղթահարելու նպատակով: Եվ այսօր համարձակ կարելի է ասել, որ առաջին հաջողություններն արդեն ակներև են: Ընկ. Հարությունյանին հաջողվել է տեղի պարտիական ու սովետական կազմակերպությունների հետ լուծել գյուղից վերցվող բանվորական ուժի հարցը, կարգավորվել է օբյեկտները տեխնիկական փաստաթղթերով ապահովելու գործը, միջոցներ են ձեռնարկվել տուֆը տեղում տաշելու ուղղությամբ, որն զգալիորեն էժանացնում է շինարարությունը:

Մոտիկից զբաղվելով շինարարության հարցերով, տրեստի պարտիական կոմիտեն իր նիստերում պարբերաբար քննարկել է շինարարության հիմնական կոնկրետ հարցեր: Այսպես, պարտիական կոմիտեն քննարկել է շինարարական աշխատանքի տեմպերի արագացման, շինարարության էժանացման, քիմիական արդյունաբերության օբյեկտների կառուցման ընթացքի, բնակարանային շինարարության որակի և այլ հարցեր: Քաղաքական ուսուցման, ցուցադրական ագիտացիայի կազմակերպման հարցերը, կոմերիտական, արհմիութենական կազմակերպությունների հաշվետվությունները պարտիական կոմիտեն քննարկում է շինարարական տեղամասերի առջև դրված խնդիրների հետ սերտորեն կապված:

Շինարարների պրակտիկայում մեծ տեղ է գրավում շինարարության հարցով շահագրգռված այլ կազմակերպությունների հետ աշխատանքի ճիշտ կազմակերպումը, համագործակցումը: Այս տեսակետից Կիրովականի շինարարական տրեստի պարտիական կոմիտեն առաջին դրական քայլերն է կատարել: Հաճախ են վիճելի հարցեր առաջ գալիս պատվիրատուի, նախագծողի և կառուցողի միջև: Այդ վեճերը լուծելու ճիշտ եղանակը՝ հարցերի համատեղ քննարկումներն ու պարզաբանումները, բարերար ներգործություն են ունենում հարցերի լուծման վրա:

Կիրովականի Ալ. Մյասնիկյանի անվան քիմիական կոմբինատի, «Կիրշինտրեստի» պարտկոմների և Հայքիմնախագիծ գիտահետազոտական ինստիտուտի պարտբյուրոյի համատեղ նիստերից մեկում քննարկվեց քիմիական կոմ-



բինատում տարվող շինարարության նախագծման ընթացքը: Պարտիական օրգանների համատեղ նիստի էին հրավիրվել Կիրովականի պարտիայի քաղկոմի պատասխանատու աշխատողներ, շինարարական վարչությունների պետեր, տրեստի կոմբինատի և ինստիտուտի դիրեկտորներ, գլխավոր ինժեներներ, բաժնի վարիչներ և այլն: Համատեղ քննարկումը բացահայտեց լուրջ թերություններ ու բացեր՝ ինչպես շինարարական աշխատանքների կազմակերպման, այնպես էլ հանքային պարարտանյութեր արտադրող օբյեկտները բանվորական գծագրերով և տեխնիկական փաստաթղթերով ապահովելու գործում: Ընկերական գործարար մթնոլորտում վեր հանելով թերությունները, պարտիական կոմիտեները միջոցառումներ նշեցին շինարարության տեմպերն արագացնելու համար: Միաժամանակ նրանք պաշտպանեցին Ստավրոպոլի քիմշինի № 11 և № 13 տրեստների և ՍՍՌՄ-ի պետմոնտաժշինի մոնտաժային կազմակերպությունների կոլեկտիվների հայրենասիրական նախաձեռնությունը՝ սոցիալիստական լայն մրցություն ծավալել հանքային պարարտանյութեր արտադրող նոր կարողությունները ժամկետից շուտ գործարկելու համար:

Այս կազմակերպությունում զգալի չափով ակտիվացել է ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկող պարտիական կազմակերպության հանձնաժողովների գործունեությունը:

Այդ տեսակետից ուշագրավ է պարտիական կոմիտեին կից ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկող հանձնաժողովի աշխատանքի փորձը: Այստեղ ընդգրկված են շինարար-ինժեներներ, առաջատար վարպետներ: Հանձնաժողովի նախագահ Հենրիխ Ադիլխանյանը պլանավորված աշխատանք է կատարում հանձնաժողովի անդամների հետ, օգնում սկզբնական ցեխային պարտիական կազմակերպություններին, աշխատանքի ղեկավարներին՝ ճիշտ և ժամանակին տեսնելու շինարարական օբյեկտներում թույլ տրվող անորակ աշխատանքների պատճառները:

Վերջերս լուրջ ահազանգեր էին ստացվում բնակարանային շինարարության մեջ թույլ տրվող որոշ աշխատանքների անորակության մասին: Հանձնաժողովի անդամները մանրամասն ուսումնասիրելով № 3 և № 69 բնակելի շենքերի շինարարական աշխատանքների որակը, այս տարվա մայիսին պարտիական կոմիտեի քննարկմանը ներկայացրին այդ հարցը՝ իրենց կոնկրետ առաջարկություններով:

Հարցի քննարկման ժամանակ, իրոք, պարտիական կոմիտեներում լուրջ խոսակցություն տեղի ունեցավ շինարարական աշխատանքների որակի մասին: Եվ դա պատահական չէր: Հանձնաժողովի նախագահ ընկ. Ադիլխանյանը, հանձնաժողովի անդամ, ճանաչված պատ շարող Համազասպ Հովսեփյանը կոմիտեին տված հաղորդման մեջ բերեցին փաստեր այն մասին, որ հաճախ, ձմեռային պայմաններում, քարային աշխատանքներ կատարելիս բաց տեղերում անհրաժեշտ պաշտպանական միջոցառումներ չեն կազմակերպվում, դռները և լուսամուտները տեղադրելու ժամանակ չեն ամրացվում փայտե սեպերով, խոնավ նյութի օգտագործման շնորհիվ շրջանակները ծռվում են: № 69 շենքում կոպիտ կերպով խախտվում են պատերի հետ անկերացնելու կանոնները, ծածկի սալերը տեղադրվում են խախտումներով (նստվածքը երբեմն կազմում է 5—6 սմ.) և մի շարք այլ լուրջ բացեր: Պարտիական կոմիտեն № 2 և № 4 շինվարչությունների ղեկավարներ Մանուկյանից, Ազարբայանից և աշխատանքի ղեկավարներ Թումանյանից և Ադամովից պահանջեց 10 օրվա ըն-

*թացքում վերացնել եղած թերությունները ու տեխնիկական սխալները։ Մշակվեցին միջոցառումներ հավաքովի երկաթ-բետոնե կոնստրուկցիաների ճիշտ և անսխալ տեղադրման, տեխնիկական կանոնների խստիվ պահպանման, պարտիական կազմակերպությունների ու նրանց բյուրոների՝ որակի համար մղվող պայքարի ուժեղացման, այդ հարցում ղեկավար կադրերի պատասխանատվության բարձրացման ուղղությամբ։*

*Պարտիական կոմիտեին լուրջ օգնություն են ցույց տալիս նաև տրեստի մյուս հանձնաժողովներն ու պարտիական-պետական վերահսկողության կոմիտեին աջակցող խմբերը։*

*Շինարարական տրեստի պարտիական կազմակերպությունը, նրա կոմիտեն լուրջ ուշադրություն են նվիրում կադրերի ուսուցմանն ու նրանց որակավորմանը, աշխատավորների գաղափարական դաստիարակությանը։ Անցած ուսումնական տարում շինարարական տրեստում գործում էին 11 սեմինար և խմբակ, որոնցում ընդգրկված են մոտ 210 ունկնդիր, 50-ից ավելի կոմունիստներ ու անպարտիականներ ինքնուրույն ուսումնասիրում են մարքսիզմ-լենինիզմի հիմունքները, 36 հոգի (որոնցից 29-ը բանվորներ) սովորում են բարձրագույն ուսումնական հաստատություններում, 153 հոգի տեխնիկումներում և միջնակարգ դպրոցներում։ Բավական է նշել, որ վերջին տարիներին հեռակա ուսուցմամբ ավարտելով ինստիտուտը, 9 բանվորներ այժմ աշխատում են որպես ինժեներ-շինարարներ։*

*Քաղաքական ուսուցման ցանցում առանձնապես մեծ տեղ է հատկացված մարքսիստական-լենինյան տնտեսագիտական տեսության և շինարարության կոնկրետ էկոնոմիկայի հարցերի ուսումնասիրմանը։ Այդ խնդիրները հաջողությամբ են կատարում շինարարության կոնկրետ էկոնոմիկան ուսումնասիրող 4 սեմինարները, որոնց ղեկավարները տրեստի լավագույն ու փորձված մասնագետներն ու տնտեսական ղեկավարներն են։*

*Տրեստի գլխավոր ինժեներ, պրոպագանդիստ Լևոն Տեր-Սիմոնյանի ղեկավարած շինարարության էկոնոմիկան ուսումնասիրող սեմինարում լրջորեն քննարկվում են շինարարության մեջ ինդուստրիալ մեթոդների կիրառման, հավաքովի երկաթ-բետոնե կոնստրուկցիաների լայն օգտագործման, աշխատանքի արտադրողականության բարձրացման հարցերը։ Այդ ամենի շնորհիվ տեսական սեմինարը դարձել է առաջավոր մտքի, լավ նախաձեռնությունների իսկական կենտրոն։ Սեմինարի անդամները դարձել են ռացիոնալիզատորներ, որոնք իրենց մտահղացումներով նպաստում են աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, շինարարության տեմպերի արագացմանը։ Բավական է նշել, որ տրեստի արտադրական կոմբինատում թողարկվող 30 տեսակի երկաթ-բետոնե հավաքովի կոնստրուկցիաներից 15-ի հեղինակներն այդ սեմինարի ունկնդիրներն են։*

*Տրեստի կոլեկտիվի առաջ հաճախ հանդես են գալիս ագիտատորներ, դասախոսներ, զեկուցողներ։ Այս գործում լուրջ աշխատանք է կատարում Գիտելիք ընկերության Կիրովականի քաղաքային բաժանմունքը։ Միայն վերջին 4 ամիսներում կազմակերպվել են 60 զեկուցումներ ու դասախոսություններ, որոնց հիմնական մասը նվիրված է եղել կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսին։*

*Դաստիարակչական խոշոր նշանակություն ունեն շինարարների ամենամսյա հավաքները, ուր ամփոփվում են կատարված աշխատանքները, վերհանվում թերությունները, նշվում գալիք խնդիրների կատարման ուղիները։ Հաճախակի կազմակերպվում են երիտասարդ շինարարների հավաք-խորհրդակցություններ։*



*Շինարարական աշխատանքներում մեծ դեր է կատարում երիտասարդությունը և նրա առաջատար ջոկատը՝ կոմերիտական կազմակերպությունը։ Երիտասարդության հաշվին օրավուր համալրվում են շինարարների շարքերը։ Այսօր 800-ից ավելի երիտասարդներ մեծ եռանդով ու խանդավառությամբ պայքարի են ելել մեծ քիմիայի օբյեկտները ժամանակին շարք մտցնելու, ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի որոշումները կատարելու համար։*

*Կիրովականում, երբ շինարարությանը պետք են լինում աշխատող ձեռքեր, դիմում են քաղաքի երիտասարդությանը։ Այդպես եղավ և այս տարի, երբ մայիսին Կիրովականի ԼԿԵՄ քաղկոմը նորից հրավիրեց միջնակարգ դպրոցներն ավարտող տղաներին ու աղջիկներին։ Այդ հավաքույթին հրավիրված էին նաև երիտասարդ շինարարներ, կառույցների վարպետներ։ Հավաքում 50 պատանիներ ու աղջիկներ խնդրեցին դպրոցական արձակուրդների ընթացքում թույլ տալ աշխատելու, իրենց ավանդը դնելու հարազատ քաղաքի կառուցման գործում։ Ահա երիտասարդ կիրովականցիների հայրենասիրական ներշնչմամբ տոգորված դիմումը.*

*«Մենք, № 5 դպրոցի 10-րդ դասարանի տասը տղաներս, կազմել ենք երիտասարդական բրիգադա և ցանկանում ենք աշխատել շինարարության դժվարին տեղամասերից մեկում։ Խոստանում ենք աշխատել այնպես, ինչպես սովորեցրել է լենինյան կոմերիտմիությունը»։*

*Մեծ է նման բովանդակությամբ դիմումների թիվը։ Ներկայումս մեծ քիմիայի օբյեկտներում աշխատում են կոմերիտական-երիտասարդական երեք բրիգադա, որոնք պայքարում են կոմունիստականի պատվավոր կոչմանն արժանանալու համար։ Կոմունիստական շարժումը դարձել է համաժողովրդական և տրեստում այն օրավուր նոր թափ է ստանում։ Կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի բարձր կոչման համար պայքարում են 27 բրիգադա, 5 աշխղեկություն, 2 ցեխ, մեքենագլանման վարչությունը, ավտոպարկի 3-րդ շարասյունը՝ ընդհանուր թվով 900 մարդ։*

*Պարտիական կոմիտեի աշխատանքի ձևերի ու մեթոդների հարստացմանն զգալիորեն նպաստել են ՀԿՊ Կիրովականի քաղկոմի ամենօրյա օգնությունն ու ղեկավարությունը, տրեստի կոմունիստների սրտացավ վերաբերմունքը։*

*Սակայն կան հարցեր, որոնց վրա պարտիական կոմիտեն պետք է առավել ուշադրություն դարձնի։ Առանձին դեպքերում պարտիական կոմիտեն և որոշ սկզբնական պարտիական կազմակերպություններ, տարվելով տնտեսական հարցերի լուծումով, միշտ չէ, որ ճիշտ են զուգակցում այդ հարցերը պարտիական կազմակերպչական ու պարտիական քաղաքական աշխատանքների հետ։ Բացի այդ, առանձին սկզբնական պարտիական կազմակերպությունների բյուրոներ փաստորեն անգործության են մատնված։ Նրանք բացի պարտիայի շարքերի աճի, կոմունիստների անձնական հարցերի ու կազմակերպության աշխատանքի պլանների քննարկումից այլ հարցեր չեն դարձնում բյուրոյի կոլեկտիվ քննարկման առարկա։*

Վ. ՎԱՐԴԱՆՈՎ

ՀԿՊ ԿԿ պարտիական օրգանների բաժնի տեսուչ

# ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ

## ԻՄՊԵՐԻԱԼԻԶՄԻ ԴԱՎԵՐՆ ԸՆԴԴԵՄ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ

Դեռ երբեք, երկրորդ համաշխարհային պատերազմի ավարտից ի վեր, աշխարհը միաժամանակ այդքան զինված ընդհարումների, ռազմական ու քաղաքական պրովոկացիաների ականատես չի եղել, ինչպես այս տարվա ամռանը, երբ Միջերկրականի լազուր ջրերն ու Կիպրոսի զմրուխտյա անտառներն ականատես եղան թափված անմեղ արյան, երբ Տոնկինի ծովածոցում ամերիկյան ռազմագրոշներ կրող զրահակիր գալյաձկները կրակ բացեցին Վիետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայի խաղաղ բնակչության վրա, երբ միավորման ու անկախության ձգտող տառապյալ Կոնգոյում սկսվեց հերթական ռեակցիան պրոգրեսիվ ուժերի դեմ։

### ՈՒԽՈՒՐՈՒ, ՈՒԽՈՒՐՈՒ, ՈՒԽՈՒՐՈՒ

Արևելյան Կոնգոյի Սուահիլի ցեղի լեզվով ուխուրու-ն ազատություն է նշանակում։ Եռակի ուխուրու բացականչությամբ ավարտեց արտասանած իր ռադիո-ճառը՝ Կիվու նահանգի ապստամբների ղեկավար, Կոնգոյի ազգային ազատագրության կոմիտեի նախագահ Գաստոն Սումիալոն։

Չորս տարի է անցել այն օրից, երբ բելգիական նախկին գաղութ Կոնգոն ձեռք է բերել սուվերենության իրավունք։ Այո՛, իրավունք, բայց ոչ սուվերենություն, որովհետև Կոնգոյի ազատությունը փաստորեն դեռ ձեռք չի բերված։ Հենց դրա համար են այժմ մարտնչում Ազգային ազատագրության կոմիտեի կոչերով ոտքի ելած ապստամբները Կվիլույում, Կիվույում, Հյուսիսային Կատանգայում և Կոնգոյի այլ շրջաններում։

Ապստամբությունն արագորեն տարածվում է երկրով մեկ։ Կիվու նահանգում ապստամբներն ամրացել են Ռուզիզի գետի հովտում։ Տեղական բնակչության աջակցությունը վայելող պարտիզանները առնում են հաղթանակ հաղթանակի հետևից։ Նրանք հաստատորեն իրենց ձեռքում են պահում Տանգանիկա լճի ափին գտնվող Ուվիրա քաղաքը, ինչպես և Էլիզաբեթվիլ տանող ճանապարհին կարևոր հանգուցային կետ հանդիսացող Մանոնո քաղաքը։ Մեծ հուզումների մեջ է Ստենլիվիլը՝ Անտուան Գիզենգայի կողմնակիցների տրադիցիոն հենակետը։ Ապստամբների մի այլ խումբ շարժվում է դեպի Կասաի նահանգի կենտրոն Լուլուաբուրգ։ Մարիոնետային կառավարության կայազորները չեն կարողանում լուրջ դիմադրություն կազմակերպել։ Դեռևս ապստամբության սկզբում, նախնադարյան զենք կրող պարտիզանները գրոհելով Ալբերտվիլի վրա, փախուստի մատնեցին ժամանակակից հրազենով զինված մոբուտուական 900 հոգուց կազմված կայազորը։ Ծանր է նաև երկրի մայրաքաղաքի՝ Լեոպոլդվիլի դրությունը, որը փաստորեն շրջափակված է ապստամբների կողմից գրավված շրջաններով։

Դեռևս ապստամբության առաջին օրերին հարևան Բուրունդիի մայրաքաղաք Ուսումբուրայում, քաղաքական էմիգրացիայում գտնվող ազգային պաշտպանության սեկտորի ղեկավար Սումիալոն օտարերկրյա ժուռնալիստներին հայտարարել էր. «Ազգային պաշտպանության կոմիտեն մի նպատակ ունի՝ երկրին վերադարձնել խաղաղությունը, վերականգնել էկոնոմիկան, ապահովել դեմոկրատիայի, արդարության ու անվտանգության պահպանումը Կոնգոյի բոլոր քաղաքացիների և օտարերկրացիների համար։ Եթե Ադուլան և Կասավուբուն հրաժարական տան, ապա այլևս կոնֆլիկտ չի լինի և պառլամենտը կկարողանա ազատ արտահայտել իր կարծիքը»։

Քաղաքական այսպիսի պայմաններում ռեակցիան, կատարելով իր իմպերիալիստական տերերի կամքը, ցրեց պառլամենտը, արգելեց Կոնգոյի ազգային շարժում, Աֆրիկյան համերաշխություն և այլ պարտիաները, քաղաքացիական դատարանների փոխարեն գործի դրեց ռազմական ատյանները։ Բայց դրանով ավելի խորացավ ներքին ճգնաժամը, սրվեցին երկրի տնտեսական կյանքում աճող դժվարությունները։ Ադուլայի կառավարությունը կանգնած էր կործանման նախաշեմին։

Բայց ամերիկյան իմպերիալիզմն իր պլաններն ուներ և ֆրանսիական Տրիբյուն դը Նասյոն շաբաթաթերթի խոսքերով ասած, «գլուխ էր ջարդում այն մտքի վրա, թե ինչով լցնել ստեղծվող վակումը»։ Եվ հանկարծ ինչ-որ ոչ անհայտ գործիչներ հիշեցին, որ կա մի «ուժեղ մարդ» ու շտապ նրան կանչեցին Բրյուսել… Այդ մարդը կոնգոյական հայտնի սեպարատիստ Մոիզ Չոմբեն էր։

Հունիսի 26-ին Չոմբեն արդեն Լեոպոլդվիլում էր. «Ես ցանկանում եմ հաշտեցնել բոլորին», հայտարարեց նա։ Եվ քանի որ Արևմտյան «խնամակալները» ձգտում էին երկրում ամեն ինչ պահպանել նախկին ձևով, իսկ մինչև նոր ընտրությունների ու կոնստիտուցիայի հաստատումը (չորս տարի գոյություն ունեցող ռեսպուբլիկան մինչև օրս կոնստիտուցիա չունի) 6—9 ամսով երկիրը կառավարելու էր ժամանակավոր կառավարությունը, գործի դրվեցին բոլոր շարժիչները… Եվ արդեն հուլիսի 10-ին Չոմբեն դարձավ Կոնգոյի պրեմիեր մինիստր։ Բայց այդ վերահաստումը ոչինչ չփոխեց երկրում, քանի որ Կոնգոյի հայրենասերները պահանջում են դադարեցնել օտարերկրյա միջամտությունը, ստեղծել իսկական ազգային միասնության ու համերաշխության կառավարություն, որն ընդունակ լինի ռեսպուբլիկայի շահերին համապատասխանող քաղաքականություն վարել։

Այդ տեսակետից հատկանշական է Պենտագոնի կոչնակ Յունայտեդ Ստեյտս Նյուս ընդ Ուորլդ Ռիպորտ թերթի այն խոստովանությունը, թե «Կոնգոյի ապագան անվերճելիորեն կախված է այն բանից, թե կհաջողվի՞ արդյոք Միացյալ Նահանգներին ու Բելգիային Կոնգոյի բանակը (խոսքը մոբուտուական բանակի մասին է—Ա. Լ.) դարձնել իսկական մարտական ուժ, որը կարողանա կարգ հաստատել երկրում։ Առայժմ ոչ ոք, ինչպես հարկն է, չգիտե, թե ինչ է լինելու հետագայում»։ Բայց նրանք սխալվում են։ Ահա թե ինչ է գրում բելգիական պրոգրեսիվ գործիչ Ժյուլ Շոմեն։ «Քանի Միացյալ Նահանգներն իրենց թաթը դրել են Կոնգոյի վրա և այնտեղ նստեցրել իրենց կամակատարներին, քանի նրանք երբեք թույլ չեն տա, որ իշխանությունը գրավեն խաղաղ ճանապարհով, կոնգոցիները հարկադրված են կռվելու։ Կոնգոյի ժողովուրդը կազատագրվի միայն այդ ռեվոլյուցիայի շնորհիվ։ Իր ազատագրական պայքարում նա կընդհարվի ուղղաթիռների, կործանիչների, գրոհային ինքնաթիռների և այլ տեխնիկայի հետ, որ ԱՄՆ-ը հենց վերջերս տրամադրել է Մոբուտուին։ Թող այդպես լինի։ Բայց, միևնույն է, կգա օրը, երբ հայրենասերները կգրավեն այդ տեխնիկան և այն կուղղեն ընդդեմ նրանց, ում այն հատկացվել է… Ամերիկացիների կողմից Կոնգոյի ժողովրդին փաթաթված մարտերում կկռփվի Բեն Բելլայի Ալժիրի կամ Ֆիդել Կաստրոյի Կուբայի տիպի Կոնգոն»։

Ճիշտ է, վերջին շրջանում մոբուտուական բանակը օտարերկրյա բացահայտ միջամտության շնորհիվ, հատկապես Հարավ-Աֆրիկյան Ռեսպուբլիկայից ժամանած սպիտակ վարձկանների օգնությամբ, կարողացավ առանձին հատվածներում առաջ շարժվել։ Նրանք գրավեցին Ալբերտվիլը և գազանային հաշվեհարդար տեսան տեղացիների հետ։ Բայց ապստամբության կրակը երկրում հետզհետե ավելի է բորբոքվում և պարտիզանները նորանոր հաջողությունների են հասնում, փախուստի մատնելով նաև ռասիստական ՀԱՌ-ի սպիտակ վարձկաններին։ Հատկանշական է այն, որ սեպտեմբերի առաջին կեսին Գաստոն Էմիլ Սումիալոյի գլխավորությամբ գործող պարտիզանները հռչակեցին Կոնգոյի Ժողովրդական Ռեսպուբլիկա։ Նոր կառավարության պրեմիեր մինիստրը դարձավ Պատրիս Լումումբայի հիմնադրած Ազգային շարժում պարտիայի ակտիվ գործիչ, Անտուան Գիզենգայի կառավարության ներքին գործերի մինիստր Քրիստոֆ Գբենյեն։

Ամերիկա-բելգիական գաղութարարների և նրանց կոնգոյական կամակատարների բոլոր ջանքերն իզուր են։ Կոնգոյի ժողովուրդը հաղթելու է, Կոնգոյում կլինի ուխուրու։

### ՀԱՆՈՒՆ ՆԱՏՕ-Ի ՇԱՀԵՐԻ

Նորից Կիպրոսում անմեղ արյուն է թափվում, նորից թուրք-կիպրոսցիները կրակ բացեցին հույների վրա, նորից կրկնվում է այն, ինչը թվում էր արդեն կարգավորված։ Ի՞նչն է թուրք էքստրեմիստների այդ վայրագությունների պատճառը. չէ՞ որ նրանք դարեր ի վեր կղզու վրա ապրել են հույների հետ կողք-կողքի։ Այո՛, նրանք ապրել են հաշտ ու խաղաղ, քանի դեռ մեծ տերությունների շահերը այլ բաներ չէին պահանջում։ Իսկ այդ շահերն այսօր պահանջում են «նոր վերափոխումներ» Մերձավոր Արևելքում, նոր զոհեր՝ «ազատ աշխարհի» անձեռնմխելիության ապահովման ճանապարհին, իմպերիալիստական խոշոր տերությունների նոր հենակետեր Միջերկրական ծովի այդ շրջանում։

Կիպրոսի աշխարհագրական դիրքը շատ է հրապուրում ամերիկյան և անգլիական ռազմագետներին։ Տիրելով նրան, կամ առնվազն այնտեղ թելադրող լինելով, իմպերիալիստներն, իրենց կարծիքով, թելադրող կլինեն աշխարհի այդ մասում ընդհանրապես։ Նման հեռու տանող պլանների իրագործման ճանապարհին նրանք չէին հապաղի «դիտելու» Թուրքիայի ագրեսիվ մտումները Կիպրոսի նկատմամբ։

Քաղաքական և ռազմա-ստրատեգիական այսպիսի իրադրությունն էլ հենց հունիս-օգոստոս ամիսներին հանգեցրեց Կիպրոսի նոր ճգնաժամին՝ գրավելով համաշխարհային հասարակայնության ուշադրությունը, դառնալով նրա անհանգստության առարկան։

Դեռ այս տարվա սկզբներին, օգտվելով անգլո-ամերիկյան իմպերիալիստների թողտվությունից,

թուրքական կառավարության դրդմամբ, կիպրոսաթուրք ազգաբնակչությունը զենքի դիմեց կղզու հյուսիս-արևելյան շրջանները Կիպրոսի ռեսպուբլիկայից անջատելու մտումով։ Օտարերկրյա միջամտությունն այդ գործում այնքան բացահայտ էր, որ Կիպրոսի կառավարության բողոքով հրավիրված Անվտանգության խորհուրդը մարտի 4-ին և 13-ին բանաձևեր ընդունեց Կիպրոսի ազգային անկախության և ազատության երաշխիքների մասին։ Դրա համար կղզի մտցվեցին ՄԱԿ-ի զորքեր՝ գեներալ Սակարի Տուոմիոյայի հրամանատարությամբ։

Կիպրոսի կառավարությունը դեմ էր այս վերջին քայլին, ՄԱԿ-ի զորքերի առկայությունը երկրում համարելով ոտնձգություն իր սուվերենության դեմ։ Բայց մեծ տերությունները կարողացան լռեցնել թե՛ պրեզիդենտ Մակարիոսին և թե՛ նրա հունական հովանավորներին, համոզելով ՄԱԿ-ի դրոշի ներքո Կիպրոսի ներքին գործերին միջամտելու, այնտեղ թելադրողի դերը գրավելու արտոնությանը։

Ինչպես և սպասվում էր, ՄԱԿ-ի զորքերի առկայությունը ոչ թե դրությունը նորմալացրեց, այլ նպաստեց կղզու բաժանման հրահրմանը։ Թուրքիան, որի պլանները կղզու մի մասին տիրելն էր, ամեն ինչ անում էր իրադրությունն ավելի սրելու՝ նոր ընդհարումներ ու միջադեպեր ստեղծելու, զինված դեմարշների միջոցով Կիպրոսի կառավարությանն ահաբեկելու համար։ Բայց ո՛չ թուրքական շանտաժը, ո՛չ ամերիկյան ու անգլիական ճնշումը չսասանեցին կիպրոսցիների կամքը։ Նրանք մնացին անհողդողդ։

Իր հերթին հնարավոր բոլոր միջոցներով Կիպրոսին բարոյական աջակցություն էր ցույց տալիս Հունաստանը, որի կառավարությունն ամենավճռական բողոքներ էր հայտնում ինչպես Անվտանգության խորհրդին, ՄԱԿ-ի գլխավոր քարտուղարին, այնպես էլ ԱՄՆ-ի, Մեծ Բրիտանիայի և Թուրքիայի կառավարություններին։ Բայց ՆԱՏՕ-ի ավագ պարտնյորները հարցն իրենց համար լուծված էին համարում և լսել անգամ չէին ցանկանում Կիպրոսին կամ Հունաստանին։

Նման իրավիճակը չէր կարող նոր կոնֆլիկտի տեղիք չտալ։ Եվ այն տեղի ունեցավ։ Հունիսի 20-ին Թուրքիան սանձազերծեց նոր պրովոկացիա։ Թուրք էքստրեմիստները վերսկսեցին հունական գյուղերի գնդակոծումը, գործի դրվեցին նույնիսկ թուրքական ինքնաթիռները։ Բայց հույների խփած մեկ ռեակտիվ ինքնաթիռը ոչ թե թուրքական էր, այլ պատկանում էր ՆԱՏՕ-ի 112-րդ էսկադրիլիային, փաստ, որը մի անգամ ևս ցույց է տալիս ամերիկացիների ու անգլիացիների վերաբերմունքը դեպի Կիպրոսի միջադեպը։ Կղզու հյուսիսում՝ Կիրենիի քաղաքի շրջանում, ամեն գիշեր ափ են հանվում Թուրքիայից ուղարկված զենք ու ռազմամթերք։ Գործն այնտեղ է հասել, որ Կիպրոսում ՄԱԿ-ի զորքերի հրամանատարը ՄԱԿ-ի գլխավոր քարտուղար ՈՒ Տանին ուղարկած զեկուցագրում նշում է. «Կիպրոսում զորք ու զենք կուտակելու» վտանգավոր մասշտաբների մասին։

Օգտվելով անգլո-ամերիկյան թողտվության քաղաքականությունից, Թուրքիան մեծ քանակությամբ դեսանտային նավեր է կուտակել Իսքենդերոն նավահանգստում (Կիպրոսի ափերից 120 մղոն հեռավորության վրա), նրա ռազմական նավերը՝ էսկադրային ականակիրներն ու սուզանավերը մանևրում են Միջերկրական ծովում, Կարադաշի և Մերսինի միջև՝ փորձելով ահաբեկել Կիպրոսի կառավարությանը։ Թուրքիայի պրեմիեր մինիստր Իսմեթ Ինոնյուն արդեն երրորդ անգամ հայտարարում է, որ Կիպրոսի միջադեպի խաղաղ լուծում հնարավոր չէ, և Թուրքիան պարտավոր է օգնել կղզու թուրքական համայնքին։ Իսկ պրեզիդենտ Գյուրսելը բացահայտ շեշտել է «թուրքական ավիացիայի կողմից Կիպրոսը ռմբակոծելու հնարավորությունը»։

Այսպիսի պայմաններում, հասկանալի է, որ անտարբեր չէր կարող մնալ և Հունաստանի կառավարությունը։ Պրեմիեր-մինիստր Գեորգաս Պապանդրեուն նախազգուշացրել է, որ թուրքական ամեն մի ներխուժում Կիպրոս, իր կառավարությունը կդիտի իբրև ագրեսիա Հունաստանի դեմ և առաջ կբերի Հունաստանի պատասխան զինված հարված։

Մի փոքրիկ ժողովրդի բախտի հետ խաղալը թողնել անհետևանք, չաջակցել նրան, Սովետների մեծ երկիրը չէր կարող։ Եվ, հասկանալի է, թե ինչ արժեք ունեին ինչպես թուրքական կառավարության, այնպես էլ ՄԱԿ-ի գլխավոր քարտուղար ՈՒ Տանի համար ՍՍՌՄ Մինիստրների սովետի նախագահ Ն. Ս. Խրուշչովի օգոստոսի 9-ի հեռագրերը և սովետական կառավարության օգոստոսի 17-ի հայտարարությունը։ Դատապարտելով կոնֆլիկտը զենքի ուժով լուծելու թուրքական կողմի ձգտումը, սովետական կառավարությունը կոչ արեց հարցը լուծել առանց զենքի, առանց արտաքին միջամտության։ Բայց, միաժամանակ նախազգուշացնում է նա, «Եթե դեպքերը զարգանան այլ ուղղությամբ, եթե իրադրությունն առաջիկայում ևս սրվի ու բանը հասնի Կիպրոսի ռեսպուբլիկայի տերիտորիա ներխուժելուն, ապա Սովետական Միությունը մի կողմ չի մնա»։ Նա «...օգնություն ցույց կտա նրա ազատությունն ու անկախությունն օտարերկրյա ինտերվենցիայից պաշտպանելու գործում և պատրաստ է այժմ բանակցություններ սկսել այդ հարցի շուրջը»։

ԱՄՆ-ի, Անգլիայի և Թուրքիայի ագրեսիվ շրջանները չհասկացող ձևանալով, դեռևս շարունակում են ոտնձգությունները Կիպրոսի տերիտորիայի և, ընդհանրապես, նրա անկախության դեմ։ Նրանք իրենց հաշիվ չեն տալիս այն նոր պրովոկացիաների հետևանքների համար, որ այս օրերին տեղի է ունենում Միջերկրական ծովի արևելյան շրջանում։ Հավանաբար նրանք հավատում են Կիպրոսի կառավարությանն ահաբեկելով զիջումների հասնելու մտքին։

Աշխարհի խաղաղասեր ուժերը վաղուց և լավ են հասկանում իմպերիալիստների քաղաքականության էությունը։ Նրանք չեն հանդուրժի, որ հանուն ՆԱՏՕ-ի շահերի ոտնահարվեն որևէ, թեկուզ և շատ փոքրաթիվ, ժողովրդի շահերը։

## ԱՄԵՐԻԿՅԱՆ ՊՐՈՎՈԿԱՑԻԱՆ ՏՈՆԿԻՆԻ ԾՈՎԱԾՈՑՈՒՄ

1964 թվականի օգոստոսի 2-ը աշխարհը ցնցեց իր սենսացիոն նորություններով։ Այդ օրը խաղաղ օվկիանոսի շրջանում ԱՄՆ-ի զինված ուժերի հրամանատարի շտաբը մամուլի համար հրապարակեց հայտարարություն, որտեղ ասվում էր. Տոնկինի ծովածոցում «տեղի է ունեցել տորպեդային կատերների աննախադեպ հարձակում» ամերիկյան «Մեդդոքս» էսկադրային ականակրի վրա, որը «սովորական պարեկություն» էր անում միջազգային ջրերում։ Հարձակվող կատերները «երեք տորպեդա արձակեցին և կրակ բացեցին 37 միլիմետրանոց հրանոթներից»։ Ամերիկյան նավը «պատասխան կրակ բացեց»։ «Տիկոնդերոգա» ավիակրից նրան օգնության հասան «F—8» տիպի չորս ինքնաթիռներ, որից հետո «տորպեդային կատերները ետ մղվեցին»։

Այդ կապակցությամբ, Վաշինգտոնում, Սպիտակ տանը շտապույթ խորհրդակցություն հրավիրվեց։ Փոքր անց, գործակալությունները հրապարակեցին պրեզիդենտ Ջոնսոնի հայտարարությունն այն մասին, որ ինքը հրաման է տվել. «1). Շարունակել պարեկությունը Տոնկինի ծովածոցում, 2). կրկնապատկել ամերիկյան զինված ուժերն այդ շրջանում, պարեկություն անող էսկադրային ականակրին ավելացնել մեկը ևս, 3). օդից ապահովել նրանց մարտական անվտանգությունը, 4). հրամայել բոլոր մարտական ինքնաթիռների և էսկադրային ականակիրների հրամանատարներին՝ ա) գրոհել յուրաքանչյուր հակառակորդի վրա, ով կհարձակվի իրենց վրա միջազգային ջրերում, բ) հարձակվել ոչ թե ետ մղելու, այլ ոչնչացնելու նպատակով»։

Օգոստոսի 4-ին պրեզիդենտ Ջոնսոնը հայտարարեց, որ ամերիկյան զինված ուժերը «պատասխան միջոցների են դիմել» ո՛չ միայն Տոնկինի ծովածոցում՝ տորպեդային կատերների դեմ, այլև Վիետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայի տերիտորիայի վրա գտնվող «օժանդակ միջոցների դեմ»։ Այդ օրերին ամերիկյան ավիացիան թռիչքներ գործեց Վիետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայի մի շարք գավառների վրա։

Օգոստոսի 5-ին Անվտանգության խորհուրդը լսեց ամերիկյան գանգատը։ Բայց ամերիկյան կողմի փաստարկները համոզիչ չէին, և երբ սովետական ներկայացուցիչը պահանջեց, որ քննարկմանը մասնակցի ՎԴՌ-ի ներկայացուցիչը, ամերիկացիներն անմիջապես առաջ քաշեցին Հարավային Վիետնամի մասնակցության հարցը, որը փաստորեն, ըստ ամերիկյան գանգատի, միջադեպի հետ ոչ մի առնչություն չուներ։ Նիստը հետաձգվեց անորոշ ժամկետով՝ առանց որոշակի հանձնարարականի։

Իսկ ի՞նչ էր կատարվել։

Ի՞նչ գործ ունեին ամերիկյան նավերը Տոնկինի ծովածոցի չեզոք ջրերում։ Չէ՞ որ նրա ջրերը ողողում են միայն Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի և Վիետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայի ափերը։ Չկա՞ արդյոք այստեղ կանխամտածված ագրեսիա։

Միջադեպից ընդամենը երկու շաբաթ առաջ, հուլիսի 22-ին, հարավ-վիետնամական ռազմաօդային ուժերի հրամանատար, Նգուեն-Կաո Կուն Բիեն-Խոա ավիաբազայում պրես-կոնֆերանս տվեց արտասահմանյան մի խումբ ժուռնալիստների, որտեղ ցինիկորեն ասաց. «Մեր ռազմաօդային ուժերը պատրաստվում են հարձակման կոմունիստական Վիետնամի վրա։ «Սկայտեյդեր» տիպի 86 կործանիչ-ռմբակոծիչները,— նա ցույց տվեց ինքնաթիռների արծաթափայլ շարքերը օդանավակայանում,— որ հենց վերջերս են ստացվել ԱՄՆ-ից, ի վիճակի են հողին հավասարեցնել Հյուսիսային Վիետնամի մայրաքաղաք Հանոյը»։ Մյուս օրն ևեթ հարավ-վիետնամական թերթերը ցնծում էին, նրանք հաղորդագրություններ էին հրապարակել այն մասին, թե ինչպես են ոչնչացվելու Հյուսիսային Վիետնամի աշխատավորության ստեղծած արժեքները։

Կոմոնդոր Կուի, ինչպես նաև Հարավային Վիետնամի պետական և քաղաքական «գործիչների» սանձարձակ, ցինիկ մարտական ոգին պատահական չէ։ Նրանք ունեն իրենց «խնամակալը», «խորհրդականն» ու «օգնողը»։ Վերջին մի քանի տարում ռազմական նպատակներով ԱՄՆ-ի կատարած ծախսերը խաղաթղթերով սարքված այդ երկրում կազմել են 500 միլիոն դոլար։ Դրա վրա այս տարի ավելացավ ևս 125 միլիոն դոլար։ Այդ գումարների մի մասը ծախսվում է երկրում ծավալված պարտիզանական շարժման՝ Վիետկոնգի դեմ պայքարելու համար, իսկ մեծ մասը՝ ռազմա-օդային և ծովային բազաների, ինչպես նաև կոմունիկացիաների ստեղծման վրա։

Հարավ-Արևելյան Ասիայում իր խարխլված դիրքերն ամրապնդելու, ազատության և անվտանգության ուղին բռնած ասիական ժողովուրդներին ահաբեկելու, սեփական ռազմական տեխնիկայի ուժը մեկ անգամ ևս դրսևորելու ձգտումը, ինչպես նաև նախընտրական կամպանիայում ռեսպուբլիկական պարտիայի առաջ քաշած մեղադրանքը, որ իբր դեմոկրատները պրոկոմունիստական քաղաքականություն են վարում միջազգային հարցերի լուծման ժամանակ, ԱՄՆ-ի այսօրվա կառավարողներին հասցրեց այդ կեղտոտ պրովոկացիային։

Իրավիճակը բավական ակներև են դարձնում հետևյալ երկու խոստովանությունները։ Հայտնի մեկնաբան Ուոլտեր Լիպմանը հայտարարել է, որ հարկավոր է կոմունիստական երկրներին «պարզորեն հասկացնել, որ մենք մտադիր չենք հեռանալ Ասիայից և լվանալ ձեռքներս»։ Ավելի սուր է ասված սենատոր Մորզեի վերջին հայտարարության մեջ։ «Մենք հանդես եկանք իբրև պրովոկատորներ՝ զինված ծովային նավեր տրամադրելով հարավային վիետնամցիներին։ Մենք լավ գիտեինք նրանց պլանները՝ ռմբակոծել հյուսիսային Վիետնամի կղզիները։ Մենք ամերիկյան ռազմածովային նավերն այնքան էինք մոտեցրել ծովափերին, թեկուզ և բաց ծովում, որ ոչ ոք այլևս չէր կարող չնկատել դրա պրովոկացիոն լինելը»։

Նման խոստովանությունները վերջնականապես քողազերծում են իմպերիալիստական ուժերի դեմքը։ Նրանց նպատակը հարավ-վիետնամական բռնապետության պաշտպանությունն է, Հարավ-Արևելյան Ասիայի պրոգրեսիվ ուժերի ու դեմոկրատական կարգերի դեմ «սառը պատերազմը» շարունակելը։

Սովետական ժողովուրդը, ինչպես և աշխարհի մյուս խաղաղասեր ժողովուրդներն ամենայն խստությամբ դատապարտում են ամերիկյան պրովոկացիան Վիետնամում, որը շեշտվեց ՍՍՌՄ կառավարության հայտարարության և նրա ղեկավարների հեռագրերի մեջ։ Մասնավորապես, Օրջոնիկիձեում արտասանած իր ճառում Ն. Ս. Խրուշչովը հայտարարեց. «Սովետական Միությունը պատերազմ չի ուզում և ամեն ինչ անում է պատերազմ թույլ չտալու համար։ Բայց, եթե իմպերիալիստները պատերազմ պարտադրեն սոցիալիստական երկրներին... ապա այդ պատերազմը թեկուզ և կխլի շատ մարդկանց կյանք և շատ աղետներ կբերի աշխարհի ժողովուրդներին, կվերջանա կապիտալիզմի լիակատար ջախջախումով»։

Դեպքերի նման զարգացման ամբողջ պատասխանատվությունը, հասկանալի է, ընկնում է Միացյալ Նահանգների պետական, քաղաքական և ռազմական ղեկավարների վրա։ Այդ համոզմանն ենք մենք, այդ համոզմանն է ամբողջ առաջադեմ մարդկությունը։

Աշխարհի տարբեր մասերում ԱՄՆ-ի վարած ագրեսիվ, պրովոկացիոն քաղաքականությունը վտանգ է սպառնում մարդկությանը։ Բայց խաղաղասիրական ուժերը աշխարհի բոլոր երկրներում չափազանց զորեղ են։ Նրանք թույլ չեն տա, որ նման պրովոկացիաները վերաճեն աշխարհավեր պատերազմի։ Խաղաղասեր ժողովուրդների ջանքերով պատերազմը կկանխվի։

Ս. ԼՅՈՒԼԻԿՅԱՆ

ՈՒՂՂՈՒՄ

Մեր ամսագրի № 9-ի 37-րդ էջի ներքևից 3-րդ տողում պետք է կարդալ. «...մեջ կատարված է 421 մլն. ռուբլու կապիտալ ներդրում...», 39-րդ էջի ներքևից 6-րդ տողում՝ «...չի կարելի բավարարվել...», 40-րդ էջի վերևից 17-րդ տողում՝ «...արտադրանքի աճի և արտադրական հիմնական ֆոնդերի աճի...», նույն էջի երկրորդ պարբերության սկզբում՝ «Արտադրական հիմնական ֆոնդերի օգտագործումը...»։ Ամսագրի № 8-ի 10-րդ էջի վերևից 12-րդ տողում պետք է կարդալ. «...ուր նա ժամանեց սեպտեմբերի սկզբներին» ու այնուհետև ինչպես տեքստում։

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ս., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԿԻՐԱԿՈՍՅԱՆ Ա. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԱՐԳՍՅԱՆ Վ. Հ.։

Թողարկիչ՝ Ա. ՅԱՎՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Ջ. ԱՎԱԳՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք, հեռ. 2—02—24

Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении тел. 2-02-24

ՎՖ 05274 Պատվեր 2805 Տիրաժ 8400 Գինը 25 կոպ.

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 2/X 1964 թ.։

Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի Պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյանի փ. № 51։



## ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

### ԼՈՒՅՍ ԵՆ ՏԵՍԵԼ ԵՎ ՎԱՃԱՌՎՈՒՄ ԵՆ

Հանուն միջազգային կոմունիստական շարժման համախմբման։ *Փաստաթղթեր և նյութեր։ Մ. Քաղհրատ։ 1964, 270 էջ։*

*Ժողովածուում զետեղված են ՍՄԿՊ այն կարևորագույն փաստաթղթերը և սովետական կառավարության հայտարարությունները, որոնցով մերկացվում է Չինական կոմպարտիայի ղեկավարության հակալենինյան, տրոցկիստական նոր կուրսը, որն ստեղծում է համաշխարհային կոմունիստական շարժման պառակտման սպառնալիք։*

ԿՐԱՎՉԵՆԿՈ Ա. Ա.—Մեր պարտիայի հիմքը։ *Զրույցներ ՍՄԿՊ սկզբնական կազմակերպությունների մասին։ «Մոսկովսկի ռաբոչի» հրատ., 1964։*

*Հեղինակը լուսաբանում է սկզբնական պարտիական կազմակերպությունների հիմնական անելիքները։ Գիրքը շատ օգտակար է պարտիական աշխատողների, պարտկազմակերպությունների քարտուղարների և պարտկազմակերպիչների համար։*

ՍՍՌՄ արտաքին քաղաքականությունը նոր ժամանակաշրջանում։ Մ. *Քաղհրատ։ 1964, 288 էջ։*

*Հեղինակային խումբը շարադրում է կոմունիստական պարտիայի և սովետական կառավարության խաղաղասիրական քաղաքականության, մարդկության լավագույն ապագայի համար մղած համաշխարհային-պատմական նշանակություն ունեցող պայքարի և կարևորագույն իրադարձություններով հագեցած տասնամյակի՝ 1953—1963 թթ. պատմությունը։*

Ժամանակակից միջազգային տնտեսական հարաբերությունները։ *«Մեժդունարոդնոյե օտնոշենիե» հրատ., 1964, 584 էջ։*

*Բնութագրվում են ժամանակակից տարբեր երկրների միջև գոյություն ունեցող տնտեսական հարաբերությունները։ Մեծ տեղ է հատկացվել միջազգային տնտեսական հարաբերությունների վրա համաշխարհային սոցիալիստական սիստեմի ունեցած վճռական ազդեցության լուսաբանմանը, տնտեսապես թույլ զարգացած երկրների տնտեսական քաղաքականության վերլուծմանը։ Ցույց է տրվում սոցիալիզմի հետ տնտեսական մրցության մեջ իմպերիալիզմի դիրքերի անշեղ թուլացումը և տնտեսության կապիտալիստական սիստեմի անկայունությունը։*

ՀԵԳԵԼ ԳԵՈՐԳ ՎԻԼՀԵԼՄ ՖՐԻԴՐԻԽ. *Փիլիսոփայության ներածություն։* Փիլիսոփայական պրոպեդևտիկա։ *Ե. Հայպետհրատ, 1964, 292 էջ։*

*Հեգելը հանրամատչելի ձևով շարադրել է իր փիլիսոփայական սիստեմը, որի առանձին մասերը, հետագայում ավելի հանգամանորեն հետազոտել է այլ գործերում։ Այս աշխատությունն ընթերցողին հնարավորություն է տալիս ամբողջական պատկերացում կազմելու Հեգելի փիլիսոփայական սիստեմի մասին և հեշտացնում է նրա առանձին աշխատությունների ուսումնասիրությունը։*

*Սա Հեգելի հարուստ ժառանգությունից առաջին ծավալուն ստեղծագործությունն է, որը թարգմանվել է հայերեն։*

ԲԱԲԱՅԱՆ Լ. Հ.—Հայաստանի սոցիալ-տնտեսական և քաղաքական պատմությունը 13—14-րդ դարերում։ *Ե. Հայպետհրատ, 1964, 600 էջ։*

*Գիրքը նվիրված է հայ ժողովրդի պատմության ամենաքիչ ուսումնասիրված էջերից մեկին՝ Զաքարյան ավատական իշխանության և մոնղոլական տիրապետության շրջանում Հայաստանի սոցիալ-տնտեսական և քաղաքական կյանքի լուսաբանմանը։ Ցույց են տրված երկրի տնտեսական կյանքի ամայացման, արտադրողական ուժերի խիստ կրճատման պատկերը և այն հիմնական պատճառները, որոնք դրեցին 500 տարի շարունակվող տնտեսական անկման սկիզբը։*

ԳԻՆԸ 25 Կ. ИНДЕКС 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՈՒՆԻՎԵՐՍԱԼ ՄԱՆՐԱԹԵԼ

*Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի գիտնականները երկաթի և պղնձի խառամներից ու կրից ստացել են նոր հանքային մանրաթել՝ «կալիմիտ», որն արտադրելը երկու անգամ ավելի էժան է, քան ապակեթելը։ Բացի բարձր մեկուսիչ հատկություններից կալիմիտը նաև լավ ձայնակլանիչ է։*

## ԷԼԵԿՏՐՈՆԱՅԻՆ ԳՐԱՄԵՔԵՆԱ

*Ամերիկյան ինժեներները նախագծել են էլեկտրոնային գրամեքենա, որը գործում է թելադրության տակ՝ 500 բառ մեկ րոպեում արագությամբ։ Այն լավ սղագրողից մոտ 6 անգամ ավելի արագ է աշխատում։ Գրամեքենայի հիշող սարքի 280 միլիմետր տրամագիծ ունեցող ապակե սկավառակը պարունակում է 70 միլիոն ինֆորմացիա, որը համարժեք է մոտավորապես կես միլիոն բառի։ Երբ մեքենայի առաջ արտասանվում է որևէ հնչյուն, գործի է ընկնում համապատասխան տառերի խումբը և թղթի թերթի վրա տպվում է տեքստը։ Հիշող սարքի մեջ ինֆորմացիան փոխելու միջոցով այն կարելի է օգտագործել որպես թարգմանող։ Սակայն մեքենան ունի լուրջ թերություն. բառերը ստացվում են միակցված։ Մասնագետներն աշխատում են կետադրության և բառերը իրարից բաժանելու պրոբլեմի վրա։*

## ՄՈՄԸ ԵՎ ԱՆԿՇՌԵԼԻՈՒԹՅՈՒՆԸ

*Կարո՞ղ է արդյոք մոմը վառվել անկշռելիության պայմաններում։ Այս հարցին էյնշտեյնը բացասական պատասխան է տվել։ Բայց այն ժամանակ նրա հիպոթեզը չի ստուգվել, տիեզերական նավեր դեռևս գոյություն չեն ունեցել և դրա անհրաժեշտությունն էլ չի եղել։*

*Վերջերս շվեյցարական ֆիզիկոս Կ. Կլուգիուսը Ցյուրիխից, լաբորատոր պայմաններում էյնշտեյնի հիպոթեզը ստուգող փորձ է դրել։ Պարզվել է, որ անկշռելիության պայմաններում մոմի բոցը չի հանգչում, այլ սոսկ փոխում է իր ձևը։ Այն դառնում է գնդաձև և ստանում է երկնագույն երանգ, որն զգալի չափով քիչ է լույս տալիս։*

## «ԽՈՆԱՐՀ» ՏՐԱԿՏՈՐԸ

*Չեխոսլովակյան ռացիոնալիզատորներ Իոսիֆ Մալեսեկը և Ֆրանտիշեկ Պուրը, որոնք աշխատում են «Ագրոզին» ֆաբրիկայում, կառուցել են մի հարմարանք գյուղատնտեսական մեքենաների համար, որի շնորհիվ մեքենան արձագանքում է մարդու ձայնին, գործելով էլեկտրական ընդհատիչի սկզբունքով։ Բավական է ձայնը բարձրացնել կամ գոռալ (օրինակ՝ վտանգի պահին), մեքենան ակնթարթորեն կանգ է առնում։*

## ՄԻԿՐՈՄԻՆԻԱՏՅՈՒՐ ԶՈԴՈՂ ԱՊԱՐԱՏ

*Ամերիկյան «Բոինգ» ֆիրմայի մասնագետներն ստեղծել են միկրոմինիատյուր զոդող ապարատ, որը հնարավորություն է տալիս մարդու մազից երկու անգամ բարակ լարերը միակցել մի քանի հազարերորդական դույմ հաստություն ունեցող մասերի։ Զոդող ապարատը թույլ է տալիս զոդման ժամկետը կրճատել 80 տոկոսով։ էլեկտրական էներգիայի մատակարարումը զոդման կետին կարգավորվում է մեկ հազարերորդականից մինչև մեկ տասնվեցերորդական վայրկյանում։*

## ՖՈՏՈԱԿՆՈՑՆԵՐ

*Շվեյցարիայում արևային ակնոցների վրա տեղադրված է ֆոտոապարատ։ Ապարատն ունի էքսպոնոմետր, հեռաչափ և բարձրորակ օբյեկտիվ, որը հնարավորություն է տալիս կատարել լավ նկարահանումներ։*